ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 9
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1957 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ — *Հանուն սովետահայ գրականության նոր վերելքի* . 3
ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ—*Սոցիալիստական ռևոլյուցիայի տաղանդավոր երգիչը* 15
Ա. ՄԱՐՈՒԽՅԱՆ, Ս. ԽՐԻՄԼՅԱՆ, Ա. ԵՐԻՑՅԱՆ, Օ. ԿԱՐՃԻԿՅԱՆ — *Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին* . 27
ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ — *Մեր հարազատ գործը* . . . . . 39
Ս. ԹԵՎՈՍՅԱՆ — *Արդյունաբերության պլանավորման մի քանի հարցի մասին* . . . . . . . . . 47
Գ. ՀԱՅՐՅԱՆ — *Օրինակելիորեն կազմակերպել պարտուսուցման գործը* . 55
Վ. ԾԱՂԻԿՅԱՆ — *Պարտիական աշխատանքի գլխավոր մեթոդը* . . 67
ԱՇ. ՍԱՐԳՍՅԱՆ — *Բարելավել գյուղատնտեսության պարտիական ղեկավարությունը* . . . . . . . . . 77
Բ. ՇԱՀՈՒՄՅԱՆ — *Հայկական կինոարվեստի հասունության համար* . 83
Մ. ԳԵՎՈՐԳՅԱՆ — *Սովետական կինը նոր հասարակարգի ակտիվ կառուցողն է* . . . . . . . . . . 95

### ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐՅԱՆ — *Լենինի անմահ կերպարը* . . . . . 101
Մ. ԿԱՍՅԱՆ — *Սովետական մեքենաշինության հաջողությունները* . . 113

### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ — *Ականավոր ռևոլյուցիոների կյանքի տարեգրությունը* 121
*Համառոտ անոտացիա* . . . . . . . . . 127

## СОДЕРЖАНИЕ


Стр.

**Передовая** — За новый подъем советской армянской литературы . . . . . . . . 3

**Ов. Казарян** — Талантливый певец Социалистической революции . . . . . . . . . 15

**А. Марухян, С. Хримлян, А. Ерицян, О. Карчикян** — О дальнейшем развитии сельского хозяйства Арм. ССР . . . . . . . . . . 27

**Ов. Багдасарян** — Наше родное дело . . . . . 39

**С. Тевосян** — О некоторых вопросах планирования промышленности . . . . . . . 47

**Г. Айрян** — Образцово организовать дело партийного обучения . . . . . . . . 55

**В. Цагикян** — Главный метод партийной работы . . 67

**Аш. Саркисян** — Улучшить партийное руководство сельским хозяйством . . . . . . . 77

**Б. Шаумян** — За зрелость армянского киноискусства . 83

**М. Геворкян** — Советская женщина — активный строитель нового общества . . . . . . . 95

**К 40-ЛЕТИЮ ВЕЛИКОГО ОКТЯБРЯ**

**Гурген Сарян** — Бессмертный образ Ленина . . . 101

**М. Касьян** — Достижения советского машиностроения 113

**КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ**

**В. Неркарарян** — Летопись жизни выдающегося революционера . . . . . . . . 121

Краткая аннотация . . . . . . . . 127




# ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ

*Ներպարտիական կյանքի վերջին իրադարձությունները՝ ՍՄԿՊ Կենտկոմի կողմից Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբի մերկացումը մի անգամ ևս դրսևորեց այն հետևողականությունն ու վճռականությունը, որով մեր պարտիայի լենինյան ղեկավարությունը կենսագործում է XX համագումարի մշակած գլխավոր գիծը՝ կոմունիստական շինարարության պրակտիկայի ու տեսության բոլոր հարցերում։*

*ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը արժանացավ ամբողջ պարտիայի, մեր բովանդակ ժողովրդի միահամուռ հավանությանը, նոր ուժով հաստատեց պարտիայի կամքի ու գործունեության անսասան միասնությունը, նրա շարքերի սերտ համախմբվածությունը, պարտիայի և նրա լենինյան Կենտկոմի անխզելի կապը սովետական ժողովրդի ամենալայն զանգվածների հետ։*

*Սովետական գրական կազմակերպություններում ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի արդյունքների քննարկումը ցույց տվեց, որ նշված հակապարտիական խմբի ֆրակցիոն գործունեությունը լուրջ վնաս է հասցրել նաև գրականությանը։ Այդ խմբի մասնակիցները շփոթ առաջացնող և ոչ ճիշտ դրույթներ են պարտադրել գրականությանը։ Հիշենք թեկուզ այն վնասը, որ պատճառեց մեր գրականությանը Մալենկովի «տեսական» մարզանքը տիպականության մասին։ Հայտնի է, որ Կագանովիչը ուկրաինական մի քանի բանաստեղծների, այդ թվում և վաստակավոր գրող Մաքսիմ Ռիլսկուն՝ դեմագոգիկ կերպով մեղադրել է նացիոնալիզմի մեջ։ Հակապարտիական խմբին հարած Շեպիլովի ելույթները արվեստի և գրականության հարցերի վերաբերյալ աչքի էին ընկնում իրենց լիբերալությամբ, անսկզբունքայնությամբ և հաշտվողականությամբ։*

*Անհրաժեշտ է նշել, որ Շեպիլովը փաստորեն ոտնահարելով գրականության պարտիականության լենինյան սկզբունքը՝ ի չարը գործադրեց ՍՄԿՊ Կենտկոմի վստահությունը։ Ինչպես իրավացի նշում է ՍՄԿՊ Կենտկոմի օրգան «Կոմունիստ» ամսագիրը, Շեպիլովը ոչ միայն հանդես բերեց հաշտվողականություն լենինիզմին խորթ գաղափարների հանդեպ, այլև սկզբունքային զիջումներ էր անում գրականության և արվեստի բնագավառում տեղ գտած անարխիստական տրամադրություններին։*

*Սովետական գրականությունն ու արվեստը վիթխարի ներգործություն ունեն աշխարհի բոլոր ժողովուրդների կուլտուրական զարգացման ընթացքի վրա։ Գրականության և արվեստի մեծ ու փոքր կտավի գործերը կոչված են ծառայելու միլիոնների երջանկության՝ կոմունիզմի կառուցման վեհ գործին։ Միայն այս տեսանկյունից պետք է դիտել ու գնահատել գրողների ու ար-*

*վեստագետների երկերը։ Այստեղից բնականաբար հետևում է, որ անհատապաշտական, անկումային, ազգային սնապարծության և նիհիլիստական տրամադրությունները պետք է միահամուռ հակահարվածի արժանանան։ Բազմակողմանի և ճշմարտացիորեն պատկերել ժողովրդի առօրյան ու սխրագործությունները, նրա աշխարհաշեն գործերը՝ ահա թե որն է մեր գրականության գլխավոր խնդիրը։*

*Հանդես բերելով ամենազգայուն վերաբերմունք կուլտուրայի մշակների հանդեպ, ջերմորեն հոգալով նրանց կարիքները, Լենինը միաժամանակ պահանջում էր լինել սկզբունքային և միայն սկզբունքային։ Նա սովորեցնում էր ուշի ուշով հետևել արվեստի և գրականության նոր երևույթներին, բայց և հարվածել կեղծ նորարարներին, որոնք խանգարում են սոցիալիստական կուլտուրայի զարգացմանը։*

*Թե ինչպիսի վտանգավոր հետևանքների կարող է հասցնել գրականության անարխիստական «ազատությունը» և լիբերալ վերաբերմունքը նրա նկատմամբ՝ երևաց հունգարական վերջին դեպքերից, երբ գրողներից ոմանք իրենց «ազատ ստեղծագործությամբ» նպաստեցին հակառևոլյուցիոն խռովության նախապատրաստմանը։*

*Երկու կարծիք չի կարող լինել այն մասին, որ Մալենկովի, Կագանովիչի և Մոլոտովի հակապարտիական խմբի ու մարքսիստական հայացքների մերկացումն ու ջախջախումը կարևոր նշանակություն կունենա սովետական գրականության հետագա աճի, նրա ուժերի կոնսոլիդացման, Գրողների միության գործունեության բարելավման, մեր գրողների ստեղծագործությունների գաղափարական և գեղարվեստական մակարդակի բարձրացման համար։*

*Սովետական պետության գոյության քառասուն տարիների ընթացքում մեր գրականությունը վիթխարի ուժ է դարձել աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում, հատկապես մեր երկրի զարգացման պատմական շրջադարձերի ու բեկման բոլոր մոմենտներին սովետական գրականությունը միշտ եղել է պարտիայի հավատարիմ օգնականը։ Մեր լավագույն գրողների ստեղծագործությունները անբաժանելի են սովետական հերոսական ժողովրդի կյանքից, հանդիսանում են նրա տենչերի ազնիվ թարգմանը, նրա ոգեշնչման աղբյուրը նոր կյանքի կառուցման համար մղվող պայքարում։*

*«Գրականության և արվեստի ասպարեզում մղվող գաղափարական պայքարի բարդությունը և յուրօրինակությունը ներկայումս,— ասում է ընկ. Խրուշչովը,— ի միջի այլոց, այն է, որ մենք ստիպված ենք գրականությունն ու արվեստը պաշտպանել ոչ միայն դրսից կատարվող հարձակումներից, այլև առանձին ստեղծագործական աշխատողների փորձերից, որոնց նպատակն է գրականությունը և արվեստը դեպի սխալ ուղի հրել, շեղել զարգացման գլխավոր գծից։*

*Զարգացման գլխավոր գիծն այն է, որ գրականությունը և արվեստը միշտ անխզելիորեն կապված լինեն ժողովրդի կյանքի հետ, ճշմարտացիորեն արտացոլեն մեր սոցիալիստական իրականության հարստությունն ու բազմազանությունը, ցայտուն և համոզիչ կերպով ցույց տան սովետական ժողովրդի վերափոխիչ մեծ գործունեությունը, նրա ձգտումների ու նպատակների վեհությունը, բարոյական բարձր հատկությունները։ Գրականության և արվեստի հասարակական վսեմ խնդիրն է՝ ժողովրդին պայքարի հանել կոմունիզմի կառուցման նոր հաջողությունների համար»։*



*Ղեկավարելով և ուղղություն տալով սովետական գրականությանը, պարտիան առաջնորդվում է մի վսեմ նպատակով, որպեսզի մեր գրականությունը ետ չմնա մեր երկրի աշխատավորների հերոսական գործերից և պատվով կատարի իր հիմնական խնդիրը՝ միշտ ընթանա մասսաների առջևից, օգնի մեր պարտիային աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։*

*Ելնելով Մարքսի ու Էնգելսի գեղագիտական հայացքներից, Վ. Ի. Լենինը, դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում, մշակեց ու հիմնավորեց գրականության ու արվեստի պարտիականության սկզբունքը։ Լենինի գեղագիտական հայացքներն ու գաղափարները պաշտպանեցին ու պրոպագանդեցին նրա աշակերտները և զինակիցները։ Գրականության պարտիականության լենինյան սկզբունքն իր հետագա զարգացումն ստացավ ՍՄԿՊ համագումարների և կոնֆերենցիաների բանաձևերում, Կենտրոնական Կոմիտեի համապատասխան որոշումներում։*

*Լենինը գտնում էր, որ գեղարվեստական գրականությունը և արվեստը, մասսաների վրա ներազդելու այդ հզոր միջոցները չեն կարող հեռու մնալ այն կատաղի պայքարից, որ տեղի ունի բանվոր դասակարգի և բուրժուազիայի միջև։ Վլադիմիր Իլյիչը բազմիցս նշել է, որ գրականության պարտիականության սկզբունքը բխում է մարքսիզմի բուն էությունից։*

*Հիմնավորելով գրականության պարտիականության սկզբունքը Վ. Ի. Լենինը գտնում էր, որ գրական գործը պետք է դառնա համապրոլետարական գործի, պարտիական աշխատանքի մի բաղկացուցիչ մասը։*

*Գրականության պարտիականության հարցին Լենինը անդրադարձել է նաև Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայից հետո, նշելով, որ «ամեն մի գեղարվեստագետ, ամեն ոք, ով իրեն համարում է այդպիսին, իրավունք ունի ստեղծագործել ազատ, իր իդեալին համապատասխան, կախում չունենալով ոչ մի բանից։ Բայց, հասկանալի է, մենք կոմունիստներ ենք։ Մենք չպետք է ձեռքներս ծալած կանգնենք և թույլ տանք, որ քաոսը զարգանա... Մենք պետք է միանգամայն պլանաչափ կերպով ղեկավարենք այդ պրոցեսը և ձև տանք նրա արդյունքներին»։*

*Պարտիայի Կենտկոմի բոլոր որոշումների միջով կարմիր թելի նման անցնում է սովետական արվեստի և գրականության պարտիականության լենինյան սկզբունքը։ Սովետական գրականությունը այն ազատ, սոցիալիստական գրականությունն է, որի մասին երազում էր Լենինը շատ տասնամյակներ առաջ, որովհետև նա ծառայում է «միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր աշխատավորներին, որոնք երկրի ծաղիկը, նրա ուժը, նրա ապագան են կազմում»։*

*Հասկանալի է, թե ինչու իմպերիալիստական ռեակցիայի իդեոլոգները, բոլոր գույնի և տեսակի ռևիզիոնիստները, ՍՄԿՊ XX համագումարից հետո մարքսիզմ-լենինիզմի դեմ ուղղված «խաչակրաց արշավանքում» առանձնահատուկ տեղ են հատկացնում սովետական գրականությանն ու արվեստին։ Նրանք կաշվից դուրս են գալիս և ապարդյուն ճիգեր են գործադրում արատավորելու մեր մեծ ժողովրդի գրականությունն ու արվեստը։ Ոտնահարելով փաստերը, նրանք սովետական գրականության և արվեստի ստեղծագործական մեթոդը՝ սոցիալիստական ռեալիզմը համարում են միջոց, որով պարտիան իբր թե միջամտում է գեղարվեստական ստեղծագործության պրոցեսին, կաշկանդում*

արվեստագետի միտքն ու երևակայությունը։ Թշնամիների այդ զրպարտիչ կամպանիան միայն մի կեղտոտ նպատակ է հետապնդում՝ վարկաբեկել, նվազագույն դեպքում նսեմացնել սովետական գրականության համաշխարհային նշանակությունը։ Մեր գրականության և արվեստի դեմ բուրժուական մամուլի սկսած զրպարտիչ կամպանիան մարքսիստական-լենինյան ուսմունքի դեմ ուղղված ընդհանուր իդեոլոգիական արշավանքի մի մասն է կազմում։

Անշուշտ անհատի պաշտամունքի վնասակար հետևանքները չէին կարող չանդրադառնալ մեր գրականության և արվեստի զարգացման վրա։ Ի. Վ. Ստալինի անձնավորության պաշտամունքի ժամանակաշրջանում եղել են թե վարչարարության, թե անհիմն քննադատության դեպքեր և ուրիշ սխալներ։ Անհատի պաշտամունքն իր կնիքն է դրել սովետական գրականության որոշ գործերի վրա։ Բայց մի՞թե այդ շեղումներն են բնութագրել կամ բնութագրում սովետական գրականության զարգացման հիմնական ուղին, ինչպես այդ պատկերացնում են ոմանք նաև մեզ մոտ։ Իհարկե, ոչ։ Այդ բոլոր տարիների ընթացքում պարտիան, առաջնորդվելով լենինյան ցուցումներով, օգնել է սովետական գրականության առողջ զարգացմանը, ամեն կերպ պաշտպանել է նորը, առաջավորը մեր գրականության մեջ, ճիշտ ուղիներ նշելով վնասակար և թշնամական ազդեցությունները հաղթահարելու համար։

Հենց այդ մասին են վկայում գրականության և արվեստի վերաբերյալ մեր պարտիայի Կենտկոմի 1946—1948 թվականների հայտնի որոշումները։ Պատասխանելով գրականության և արվեստի առջև այդ ժամանակաշրջանում ծառացած հրատապ հարցերին, այդ որոշումները իրենց գաղափարական-քաղաքական նպատակասլացությամբ, առաջադրած պրոբլեմների կարևորությամբ, իրենց նշանակությունը չեն կորցրել նաև այսօր։

Այդ որոշումները ժամանակին խոշոր դեր կատարեցին սոցիալիստական ռեալիզմի գրականության և արվեստի զարգացման գործում։ Պարտիայի Կենտկոմը, ելնելով սովետական ժողովրդի և մեր գրականության ու արվեստի արմատական շահերից, անհրաժեշտ համարեց անհաշտ պայքար մղել գրողների, բանաստեղծների և դրամատուրգների առանձին գործերում տեղ գտած ապոլիտիկության, գաղափարազրկության, հոռետեսության և անկումային տրամադրությունների դեմ, դատապարտելով գեղարվեստական տեսակետից ցածրորակ գործերի հրապարակումը, կամ այդպիսիների բեմադրությունը թատրոններում։ Պարտիայի Կենտկոմը կոչ արեց բոլոր գրողներին և արվեստագետներին համարձակորեն ներթափանցել մեր կյանքի բոլոր ծալքերը, ամենաուշադիր կերպով ուսումնասիրել ժողովրդի կյանքը, ավելի մոտ կանգնել արդիականության մեծ պրոբլեմներին։ Կենտկոմն իր որոշումներում ընդգծում է, որ մեր գրողների և արվեստագետների պատվավոր խնդիրն է՝ ստեղծել ժողովրդի բազմաբովանդակ կյանքը իր ռևոլյուցիոն զարգացման մեջ ճշմարտացիորեն վերարտադրող գեղարվեստական բարձրարժեք գործեր, կերտել սովետական մարդու, մեր ժամանակի հերոսի կերպարը, որին ձգտեր նմանվել, հետևել ամեն մի երիտասարդ։ Սովետական գրականության առջև հատուկ խնդիր է դրվում՝ ամենաակտիվ կերպով մասնակցել սովետական երիտասարդության դաստիարակությանը։ Մի՞թե այս բոլոր խնդիրները կորցրել են իրենց ակտուալությունը ներկայումս։ Իհարկե ոչ։

Պարտիայի հին անդամ Մ. Էսսենը իր հուշերում գրում է.

«Ջբոսնելիս կամ երեկոյան թեյասեղանի շուրջը, Լենինը սիրում էր հաճախ խոսել գրականության, իր սիրած գրողների՝ Շչեդրինի, Նեկրասովի, Չերնիշևսկու, մանավանդ վերջինիս մասին։ Լենինը Չերնիշևսկուն համարում էր ոչ միայն ականավոր ռևոլյուցիոներ, մեծ գիտնական, առաջավոր մտածող, այլև խոշոր գեղարվեստագետ, որը ստեղծել է իսկական ռևոլյուցիոներների, Ռախմետովի տիպի քաջարի, անվեհեր մարտիկների անգերազանցելի կերպարներ։

— Ահա դա է իսկական գրականությունը, որը սովորեցնում, առաջ է տանում, ոգեշնչում։ «Ի՞նչ անել» վեպը ես մի ամառվա ընթացքում կարդացել եմ հինգ անգամ, այդ ստեղծագործության մեջ ամեն անգամ գտնելով նորանոր հուզիչ խոհեր»,— ասում էր Լենինը։

Գեղարվեստական ստեղծագործությունների գաղափարական նպատակադրումը Լենինը ամեն բանից բարձր էր դասում։ Ահա թե ինչու նա այնքան գնահատում ու սիրում էր Նեկրասովին, որի գրեթե բոլոր գործերը անգիր էր արել։ Մի անգամ նա հարցրեց, թե արդյոք «Ռուս կանայք» պոեմը ես անգիր գիտե՞մ։ Ես պատասխանեցի՝ գիտեմ, բայց այն երբեք բարձրաձայն արտասանել չեմ կարող, արցունքներս խեղդում են։

— Ահա հենց դա է գեղարվեստագետի ուժը,— ասաց Լենինը, որը գերում է ամբողջ էությունդ»։

Իսկական գրականությունը պետք է «սովորեցնի, առաջ տանի, ոգեշնչի…»։ Մեծ առաջնորդի և ուսուցչի այս խոսքերը մեր գրողներին հիշեցնում են ժողովրդի հանդեպ ունեցած իրենց քաղաքացիական մեծ պարտքի մասին։

ՍՄԿԿ XX համագումարում ընկ. Խրուշչովը, անդրադառնալով սովետական գրականության և արվեստի խնդիրներին, հատկապես ընդգծեց, որ պարտիան պայքարել է և այսուհետև էլ կպայքարի իրականության ոչ ճշմարտացի պատկերման դեմ, Սովետական ժողովրդի նվաճումները գունազարդելու կամ, ընդհակառակը, արատավորելու փորձերի դեմ։

Սովետական գրողների աշխատանքը պարտիայի XX համագումարից հետո տոգորված է այդ վսեմ նպատակներով։ Է՛լ ավելի սերտորեն համախմբվելով պարտիայի շուրջը, մեր գրողները ձգտում են առաջ ընթանալ համագումարի նշած ուղիով, բարձրացնել սովետական գրականության դերն ու նշանակությունը ժողովրդի կոմունիստական դաստիարակության գործում։

Անհրաժեշտ է նշել, որ անցած երկու տարիները սովետական բազմազգ գրականության համար բնորոշ են նրանով, որ նրա բոլոր հատվածներում նկատվում է գրողների ստեղծագործական ակտիվության որոշակի վերելք, գնալով խորացող շրջադարձ դեպի արդիականության հրատապ և սուր պրոբլեմները, սովետական գրականության ուժերի համախմբում՝ կոմունիստական գաղափարայնության և պարտիական սկզբունքայնության հիման վրա։ Մեր գրականությունը հաջողությամբ հաղթահարելով իրականության գունազարդումը և անկոնֆլիկտայնության «տեսությունը», որոնք բնորոշ էին մոտիկ անցյալի շատ ստեղծագործությունների համար, թափանցում է սովետական հասարակության կյանքի ամենաբարդ պրոցեսների մեջ, առաջ ընթանալով համարձակ որոնումների և կյանքը իր բոլոր հակասություններով ու կապակցություններով գեղարվեստորեն իմաստավորելու ճանապարհով։

Պարտիայի XX համագումարից հետո անցել է մոտավորապես մեկ ու կես տարի։ Սակայն պատմական այդ կարճ ժամանակամիջոցում արմատական փոփոխություններ են տեղի ունեցել երկրի կյանքում։ Այդ փոփոխու-

թյունները գնալով ավելի մեծ չափերով իրենց կոնկրետ արտացոլումն են գտնում մեր գրողների ստեղծագործական աշխատանքում։ Դրա վառ վկայությունը Սովետական Միության ժողովուրդների գրականության նոր նվաճումներն են։ Մեր գեղարվեստական բազմազգ գրականությունը վերջերս հարստացավ արժեքավոր նոր գործերով, որոնք նվիրված են սովետական ժողովրդի հերոսական սխրագործությանը, վերարտադրում են ժողովրդական մասսաների ստեղծագործական վերելքն ու ակտիվությունը, այն պայքարը, որ սովետական հասարակության առաջավոր ուժերը մղում են բյուրոկրատների, պահպանողականների, հնամոլների և բարոյալքված այլ տարրերի դեմ, ցույց տալով նորի, առաջավորի հաղթանակը։

Ո՞վ կարող է մոռանալ Միխայիլ Շոլոխովի «Մարդու ճակատագիրը» գողտրիկ պատմվածքը։ Միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ անկեղծ հուզմունքով կարդում ու վերընթերցում են սովետական մարդու, նրա բարոյական բարձր հատկությունների մասին այդ ցնցող պատմվածքը, որն իրոք գերում է ընթերցողի ամբողջ էությունը։ Այդ պատմվածքի հմայքն այն է, որ հեղինակի տաղանդավոր գրիչը առանց գունազարդելու կերտում է սովետական մարդու հոյակապ կերպարը։

Գեղարվեստական այն լավագույն գործերը, որոնք հրապարակ են եկել վերջին մեկ, մեկ և կես տարվա ընթացքում, նշանավորում են մեր օրերի գրականության հիմնական տենդենցը, նրա բնորոշ գիծը։ Գրողները ձգտում են գեղարվեստորեն իմաստավորել ժողովրդական մասսաների ակտիվացման, սոցիալիստական դեմոկրատիզմի զարգացման պրոցեսները, ցույց տալ սովետական հասարակ մարդուն, չխուսափելով մեր դժվարությունները, կյանքի ստվերոտ կողմերը պատկերելուց։

Սակայն վերջին մեկ տարում լույս տեսան և այնպիսի երկեր, որոնք ոչինչ ընդհանուր չունեն սովետական գրականության հետ։ Դուդինցևի «Ոչ միայն հացիվ» վեպը, Գրանինի «Սեփական կարծիք» և Յաշինի «Լծակներ» պատմվածքները, Կիրսանովի «Շաբաթվա յոթ օրը» պոեմը և մի քանի այլ ստեղծագործություններ ճգնում են բյուրոկրատիզմը, ստորաքարշությունը, առանձին մարդկանց վերասերումն ու բարոյական քայքայումը պատկերել որպես մեր կյանքի պայմանների, սովետական իրականության հետևանք։ Չտեսնել այն պայքարը, որ մեր պարտիան մղում է հին կյանքի նեխած պատկերացումների ու երևույթների դեմ, չտեսնել թե ինչպես այդ համառ պայքարում պարտիան հենվելով աշխատավոր մասսաների ակտիվության վրա, ճանապարհ է հարթում նորի, առաջավորի հաղթանակի, նրա ամրապնդման համար, նշանակում է լինել քաղաքականապես կույր, կամա թե ակամա ձայնակցել մեր հասարակական կարգերի դեմ ուղղված այն զրպարտիչ կամպանիային, որ սկսել են մարքսիզմ-լենինիզմի թշնամիները։ Ահա թե ինչու գրական հասարակայնությունը, մեր ընթերցողների ամենալայն խավերը միահամուռ դատապարտեցին գաղափարական տեսակետից արատավոր այդ գործերը։

Ինչպե՞ս պատահեց, որ այդ գրողները սայթաքեցին գրականության պարտիականության դիրքերից և տվեցին գեղարվեստական ու գաղափարական տեսակետից արատավոր գործեր։ Այդ բացատրվում է նախ նրանով, որ նրանք չէին տեսնում կյանքն իր զարգացման մեջ։ Իսկ դա կործանարար է ոչ միայն գրողի, այլ յուրաքանչյուր հասարակական-քաղաքական գործչի համար։ Այդ ցայտուն կերպով կարելի է տեսնել հենց Մալենկովի, Կագանովիչի և Մոլոտովի հակապարտիական խմբի օրինակով։ Դուդինցևի նման գրողներն էլ չտեսան այն վիթխարի աշխատանքը, որ պարտիան ծավալեց XX համագումարից հետո՝ անցյալի թերություններն ու սխալները ուղղելու, ժողովրդական տնտեսությունը է՛լ ավելի զարգացնելու, սովետական ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու ուղղությամբ։



«Մեծ մոլորություն կլիներ կարծել,— ասում է ընկ. Խրուշչովը,— թե մեր սովետական պայմաններում կարելի է ժողովրդին ծառայել՝ ակտիվորեն չմասնակցելով կոմունիստական պարտիայի քաղաքականության կենսագործմանը։ Անհնար է ցանկանալ ժողովրդի հետ ընթանալ՝ համամիտ չլինելով պարտիայի հայացքներին, նրա քաղաքական գծին։ Ով ուզում է ժողովրդի հետ լինել, նա միշտ պարտիայի հետ կլինի։ Ով ամուր կանգնած է պարտիայի դիրքերում, նա միշտ ժողովրդի հետ կլինի»։

Պայքարը գրականության գաղափարական անաղարտության համար, բուրժուական իդեոլոգիայի զանազան դրսևորումների դեմ, գրական քննադատության սրբազան պարտքն է։ Սովետական հասարակարգում, ուր չկան շահագործող դասակարգեր, ուր սոցիալիզմի հաղթանակի հիման վրա ձեռք է բերվել մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, չկա սոցիալական բազա բուրժուական իդեոլոգիայի համար։ Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, առանձին սայթաքումներ դեպի բուրժուական իդեոլոգիան բացառված չեն։ Եվ գրական քննադատության խնդիրն է կոմունիստական իդեոլոգիայի դիրքերից ցույց տալ առանձին գրողների գաղափարական սայթաքումներն ու նրանց ստեղծագործությունների իրական արժանիքները։

Անդրադառնալով սովետական գրականության հիմնական խնդրին, ընկ. Խրուշչովը նշում է.

«Մենք վճռաբար ու անհաշտորեն հանդես ենք եկել ու հանդես կգանք գրականության և արվեստի մեջ մեր իրականության միակողմանի, անբարեխիղճ, ոչ ճշմարտացի լուսաբանման դեմ։ Մենք դեմ ենք նրանց, ովքեր կյանքում փնտրում-գտնում են միայն բացասական փաստերը և չարախնդում են այդ առիթով, փորձում են պարսավել, արատավորել մեր սովետական կարգերը։ Մենք դեմ ենք նաև նրանց, ովքեր ստեղծում են սենտիմենտալ, քաղցր-մեղցր պատկերներ, վիրավորելով մեր ժողովրդի զգացումները, որը չի ընդունում և չի հանդուրժում ոչ մի կեղծիք»։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվեց միանգամայն նոր գրականություն, որն իր գործերում արտացոլեց հայ ժողովրդի սոցիալիստական վերածննդի բնորոշ պրոցեսները։ Առաջացավ և ձևավորվեց սովետահայ գրողների մի ստվարաթիվ կոլեկտիվ, որն իր պատվավոր տեղն է գրավում Սովետական Միության գրողների ընտանիքում։ Անցած 37 տարիներում կոմունիզմի կառուցման գործին նվիրվածորեն ծառայել են սովետահայ գրողները։ Հանրահայտ է, որ մեր գրականությունն ու արվեստը խոշոր դեր կատարեցին Հայրենական պատերազմի տարիներին։ Հայ գրողները զենքով ու գրչով ծառացան ֆաշիստական ժանտախտի դեմ և ոգեշնչեցին սովետական մարտիկներին Հայրենիքի ազատության, նրա պատվի և անկախության համար մղվող պայքարում։

Հայրենական Մեծ պատերազմի, սովետական ժողովրդի մեծ սխրագործության թեման առանձնահատուկ տեղ է գրավում մեր գրականության մեջ։ Հմ. Սիրասի «Արարատ», Հ. Քոչարի «Մեծ տան զավակները», Ս. Խանզադյանի

«Մեր գնդի մարդիկ», Մ. Շաթիրյանի «Զինվորներ» վեպերը կարճ ժամանակում մեծ ժողովրդականություն նվաճեցին։ Այս գրքերը թարգմանվեցին ռուսերեն և դարձան մեր երկրի ընթերցասեր լայն մասսաների սեփականությունը։ Հայրենական պատերազմին նվիրված գրականությունը եզրափակվում է Մկրտիչ Արմենի «Յասվա» և Ալազանի «Հյուսիսային աստղ» վեպերով։ Այս ստեղծագործություններում իրադարձությունները զարգանում են շատ խոր թիկունքում, սիբիրյան տայգաներում։ Այստեղ էլ մարդիկ աշխատում և պայքարում են համակված միևնույն տենչերով ու ձգտումներով, զգալով իրենց որպես անբաժանելի մասնիկը այն մեծ կոլեկտիվի, որը թե՛ ռազմաճակատում և թե՛ թիկունքում կռվում է հաղթանակը ֆաշիստական գազանի դեմ։ Ահա թե ինչու այս վեպերը, որոնք գրված են գեղարվեստական ջերմ ավյունով, արժանացան ընթերցողների համակրանքին։

Հետպատերազմյան սովետահայ գրականության բնորոշ առանձնահատկությունը վիպական ժանրի զարգացումն է, արձակի թեմատիկայի ընդլայնումը։ Վերջին տարիներս լույս տեսած վեպերը շոշափում են մեր կյանքի ամենաբազմազան երևույթները։ Մեր գրողները իրենց ստեղծագործություններում ձգտում են կերտել սովետական հասարակ մարդու՝ բանվորի, կոլտնտեսականի, մտավորականի կերպարը, նրանք ձգտում են գեղարվեստորեն իմաստավորել, վերարտադրել սովետական ժողովրդի կյանքում պատերազմից հետո, հատկապես վերջին տարիներս տեղի ունեցած մեծ փոփոխությունները։ Սովետահայ գրողներին հետաքրքրում են նաև գաղութային Արևելքի զարթոնքը, կապիտալիստական երկրներում սրվող դասակարգային ներհակությունները, աշխատավորների պայքարը հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։ Այդ զարթոնքն է արտահայտված Սևունցի «Թեհրան», Ա. Ավագյանի «Շիկացած հողը», Ս. Ալաջաջյանի «Անապատում» և «Պարտություն» գործերում։

Սակայն բնորոշ թեման մեր գրողների մոտ կոլտնտեսային հայ գյուղն է իր մարդկանցով, նրանց հույզերով ու ապրումներով։ Եվ այս ուղղությամբ մեր գրողների հաջողությունն ակնբախ է։ Հիշենք Ն. Զարյանի «Հացավանը», Ս. Խանզադյանի «Հողը», Քր. Թափալցյանի «Ոսկե հովիտը», Ս. Այվազյանի «Լեռնցիներ» վեպերը և այլ երկեր։

Արդ, եթե տալու լինենք վերոհիշյալ երկերի ընդհանուր գնահատականը, ապա պետք է ասել, որ մեր գրողները ստեղծել են արժեքավոր գործեր կոլտնտեսային գյուղի մասին։ Սակայն որոշ գործերի թերությունն այն է, որ հեղինակները, ձգտելով ցույց տալ, թե ինչպես կոլտնտեսային գյուղի առաջավոր մարդիկ հաղթահարում են գյուղատնտեսության վերելքի առջև ծառացած դժվարությունները, երբեմն չափազանցնում են դրանք, խտացնում գյուղական կյանքի ստվերոտ կողմերը։ Եվ դրանք հաճախ ծածկում են այն լավը, առաջավորն ու նորը, որն անընդհատ աճում և ամրապնդվում է մեր սովետական գյուղում։ Օրինակ, Ք. Թափալցյանի «Ոսկե հովիտ» վեպում, չափից ավելի են ընդգծված բացասական կերպարները։ Ըստ երևույթին հեղինակը ձգտելով տիպականացնել իր վեպի բացասական պերսոնաժներից մեկին՝ Ջամալյանին, նրան օժտել է չպատճառաբանված բազմաթիվ արատներով։ Եվ Ջամալյանը դարձել է ոչ թե գեղարվեստական, այլ սովորական քրեական մի տիպ։

Գեղարվեստական տիպական կերպարը իրենից ներկայացնում է ընդհանրացումն այն բանի, ինչ գոյություն ունի կյանքում, ինչ յուրահատուկ է մարդ-



կանց որոշ խմբի համար։ Հիրավի, մեր գրողները ստեղծել են գործեր, որոնք նվիրված են կոլտնտեսային գյուղին, սակայն պետք է ասել, որ մեր գյուղի այսօրվա կյանքը անչափ ավելի հարուստ է և գունեղ, քան նրանց արտացոլումը գեղարվեստական գրականության մեջ։

Հայաստանի Գրողների Միության վարչության վերջին պլենումում մեր դրամատուրգներից մեկը՝ ընկ. Գ. Յաղջյանը այն կարծիքը հայտնեց, թե գրողը կամ դրամատուրգը չի կարող այսօրվա կյանքին նվիրված հաջողված գործ տալ, քանի դեռ այն պատմություն չի դարձել։ Այդ սխալ համոզմանն է և Տ. Հախումյանը։ Այդպես մտածողները մոռանում են, որ «Վերք Հայաստանի»-ն, «Ազգային ջոջերը», «Քաոս»-ը, «Անուշ»-ը, «Աբու-Լալա-Մահարի»-ն, «Խենթ»-ը, «Նոյի ագռավը», «Աննա Սարոյան»-ը, «Պեպո» և այլ բազմաթիվ մեծարժեք երկերից նախ և առաջ ժամանակի բույրն է զգացվում։ Աշխարհի բոլոր մեծ գրողների անժխտելի արժանիքներից մեկն էլ այն է, որ նրանք իրենց ապրածն են վերակերտել։ Իհարկե, դժվար է գեղարվեստորեն ընդհանրացնել և արտահայտել կյանքի այսօրվա երևույթները։ Դա պահանջում է, որ գրողն ինքը ակտիվ կերպով ներթափանցի կյանքի մեջ, հանդես բերի երևույթների խոր ճանաչողություն, զգա կյանքի շունչը։ Այդպիսին են եղել անցյալի բոլոր խոշոր գրողները, որոնք իրենց շուրջը ծփացող կյանքն իմաստավորել են առաջավոր աշխարհայեցողությամբ։ Առավել ևս այդպիսին պետք է լինի սովետական գրողը, որը կանգնած է ամենաառաջավոր աշխարհայացքի՝ մարքսիզմ-լենինիզմի դիրքերի վրա։

«Եթե կոմունիզմի իդեալների համար, իր ժողովրդի երջանկության համար պայքարելը արվեստագետի կյանքի նպատակն է, եթե նա ապրում է ժողովրդի շահերով, նրա խոհերով և իղձերով, ապա ինչ թեմա էլ նա վերցնի, կյանքի ինչ երևույթ էլ արտացոլի, նրա ստեղծագործությունները կհամապատասխանեն ժողովրդի, պարտիայի և պետության շահերին» (Խրուշչով)։

Սովետահայ գրականության վերջին շրջանի նվաճումներից մեկը պետք է համարել այն, որ մեր ժողովրդի պատմական մոտիկ անցյալը, մանավորապես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը Անդրկովկասում և Հայաստանում դառնում է մեր գրականության հիմնական թեմաներից մեկը։ Մեր ընթերցողն ստացավ մի շարք արժեքավոր երկեր։ Դրանց թվին են պատկանում Աղավնու «Շիրակ» և Լ. Հուրունցի «Ղարաբաղյան պոեմ», Ա. Սահինյանի «Ծարավ» վեպերը, որոնք արձակի վերջին տարիների նվաճումներից են։

Անհատի պաշտամունքի հաղթահարումն օգնեց պոեզիային առաջ ընթանալ ստեղծագործական նոր թափով։ Մեր բանաստեղծները թոթափեցին կեղծ ռիտորիկայի, ալելույականության, չեփորահարության ծանր բեռը։ Նոր, լիրիկական թարմությամբ սկսեց շնչել մեր պոեզիան։ Սոցիալիստական Հայրենիքի առաջընթացը, կոմունիզմ կառուցող մասսաների ստեղծարար աշխատանքը, ժողովուրդների լենինյան բարեկամությունը, սովետական մարդու բարոյական հիանալի հատկությունները, նրա ապրումներն ու հույզերը, այսօրվա մեր պոեզիայի թեմաներն են։

Բանաստեղծներ Ն. Զարյանը, Գ. Սարյանը, Հ. Շիրազը, Ս. Տարոնցին, Սարմենը և ուրիշներ նոր գործերով հարստացրին սովետահայ գրականությունը։

Նոր թեմաներ, բանաստեղծական նոր գույներ ու պատկերներ բերեցին

մեր պոեզիայի մեջ Ս. Կապուտիկյանը, Գ. Էմինը, Հ. Սահյանը, Մ. Մարգարյանը, Վ. Դավթյանը, Հր. Հովհաննիսյանը և ուրիշներ։ Այստեղ ամենից կարևորն այն է, որ նրանցից ամեն մեկն ունի իր ուրույն բանաստեղծական խառնվածքը, իր նախասիրած թեմատիկան, ստեղծագործական ձևերը։

Եթե մենք կարող ենք որոշակի նվաճումներ արձանագրել սովետահայ արձակի և պոեզիայի ասպարեզում, ապա այդ չի կարելի ասել դրամատուրգիայի մասին։ Այն խիստ ետ է մնում։ Ճիշտ է, գրվել են բազմաթիվ դրամաներ և կոմեդիաներ, բայց դրանցից շատ քչերն են մնում բեմի վրա։ Անգամ մրցանակի արժանացած որոշ պիեսներ չեն բեմադրվում։

«Սովետական արվեստ» ամսագրում դրամատուրգիայի հարցերին նվիրված դիսկուսիան ցույց է տալիս, որ որոշ հեղինակներ սխալ ըմբռնումներ ունեն արվեստի վերաբերյալ։ Իրավացի են այն ընկերները, որոնք նշում են, որ գրականության զարգացման նկատմամբ ընկ. Ա. Արաքսմանյանի և ոմանց «ազատամոլ» հայացքները ամենևին չեն օգնի մեր դրամատուրգիայի վերելքին։

Ցավն այն է, որ մեր դրամատուրգները մինչև օրս էլ գրում են մտահնար կոնֆլիկտներով, որոնք սխեմատիկ են ու կենսազուրկ։ Հենց այս բանի հետևանքով էլ դրամատուրգները չեն կարողանում հրապուրել իրենց դիտողներին։ Ինքնին հասկանալի է, որ մտացածին պիեսները վաղաթառամ և անբույր ծաղիկների են նման։ Միայն կյանքի խոր իմացության և գրական բարձր վարպետության դեպքում հնարավոր է ստեղծել դրամատիկական երկարակյաց գործեր։

Մեծ Լենինը կոչ էր անում կոմունիստներին «ապրել բանվորական կյանքի խորքում, ճանաչել նրան ամեն կողմից, կարողանալ անսխալ որոշել ամեն մի հարցում, ամեն մի րոպե մասսայի տրամադրությունը, նրա իսկական ձգտումները, կարիքները, մտքերը, կարողանալ որոշել, առանց կեղծ իդեալականացման որևէ նշույլի, նրա գիտակցականության աստիճանը և անցյալի այս կամ այն նախապաշարմունքի ու մնացորդի ազդեցության ուժը, կարողանալ նվաճել մասսայի անսահման վստահությունը՝ ընկերական վերաբերմունք ցուցաբերելով դեպի նա, հոգատարությամբ բավարարելով նրա կարիքները»։

Միայն գրողների կենդանի կապը ժողովրդի բոլոր խավերի հետ, կոգնի ստեղծելու այնպիսի երկեր, որոնք իրենց գեղարվեստական ճշմարտացի խոսքով «կայրեն մարդկանց սրտերը»։

Վերջերս անձնական լիրիկայի անվան տակ, գրականության մեջ երևացին «ալբոմային», հասարակական որևէ արժեքից զուրկ բանաստեղծություններ։ Սուբյեկտիվիստական, նեղ անձնական այդ լիրիկան, նահանջ է Մայակովսկու և Չարենցի մեծ տրադիցիաներից, նահանջ է սովետական իրականությունից։ Մեր պոետները չպետք է մոռանան, որ երբ պոեզիան դադարում է քաղաքացիական վսեմ մոտիվներ երգելուց, կորցնում է իր դաստիարակիչ մեծ նշանակությունը և վնասում է մեր առաջընթացին։

Այստեղ տեղին է հիշեցնել մեր բանաստեղծներին Մ. Գորկու մի նամակի ուսանելի տողերը՝ «Մի կենտրոնացրեք ողջ աշխարհը Ձեզ վրա, այլ ողջ աշխարհը կենտրոնացրեք Ձեր մեջ։ Կյանքում շատ թույն կա, բայց կա և լավը, գտեք այն... Բանաստեղծն աշխարհի արձագանքն է և ոչ թե միայն իր հոգու դայակը»։

Բանաստեղծն իր սենյակում փակված միանձնուհի չէ, բանաստեղծն իր



ժամանակի և իր հասարակության աչքն է։ Բանաստեղծը լավի չատագովն է և վատը խարազանողն ու մերկացնողն է»։

Ցավալին այն է, որ մեր պոետներից ոմանք, որոնք ստեղծել են գաղափարապես հագեցված գործեր, մերթ ընդ մերթ տուրք են տալիս անհատապաշտական տրամադրություններին։ Սիլվա Կապուտիկյանի «Սրտաբաց զրույց» բանաստեղծությունների ժողովածուում շատ լավ բանաստեղծությունների կողքին կան ոչ օպտիմիստական բանաստեղծություններ։ Նրանցում չկա հավատ դեպի մարդը, սերն այնտեղ «անդնդի եզրին է» հասցնում լիրիկական հերոսին և ոչ թե բարձրացնում, վեհացնում նրան։

Վերջին երկու տարում լույս տեսած առանձին գործերն ու հոդվածները, որոնց մեջ տեղ են գտել մարքսիզմին խորթ հայացքները, իրավամբ քննադատվեցին մեր մամուլում և գրական հասարակայնության շրջաններում։ Պարտիական մամուլը ժամանակին նշեց «Գրական թերթ»-ի և «Սովետական գրականության» ամսագրի սխալները։ Ուստի դրան անդրադառնալու հարկ չկա։ Բայց չենք կարող չնշել, որ միանգամայն տեղին էր, երբ մեր մամուլում խիստ քննադատեցին Զ. Դարյանի «Մայիս» և Մ. Ասլանյանի «Աշխեն Սաթյան» վեպերը։

Չի կարելի անտարբեր անցնել նաև այն բանի կողքով, երբ մեր գրողներից ու քննադատներից ոմանք անձնական հաշիվներ են մաքրում իրենց գրական «ախոյանների» հետ։ Այս երևույթը բացասաբար անդրադառնալով գրական բարքերի վրա, խանգարում է ստեղծագործական ուժերի կոնսոլիդացիային։ Այդ կարգի արատներ կան, դժբախտաբար, նաև պոետ Ն. Զարյանի նոր լույս տեսած «Արև ու ստվեր» ժողովածուի մեջ։ Ի դեպ, այս գրքի «Սիրո երգեր» բաժնի քառասունից ավելի բանաստեղծություններից շատերը անհաջող են։ Պոետի սիրտը, որը փախչում է «միշտ հյուրընկալ, ազնիվ օջախներից», «թողած պայքար ու աշխատանք», «մեղկ երգեր է կերկերում» իր վշտահար սիրո մասին։ Անշուշտ, սիրո նվիրված այս ոտանավորները, որոնք բացում են ընթերցողի առջև անվանի պոետի գրական լաբորատորիան Հայրենական պատերազմի թեժ տարիներին, չեն նպաստում մեր երիտասարդության դաստիարակության գործին։

Իր «Ութնյակ» վերնագիրը կրող ոտանավորում Ն. Զարյանը ինքնաքննադատության կարգով «խոստովանում» է, որ շատ անգամ մոլորվել է։ Իսկ ինչո՞ւ է մոլորվել «պայքարի բանաստեղծը»։ «Խաբել են ինձ կանչերը սուտ», պատասխանում է նա։ Բայց դժվար չէ կռահել, որ պոետը այլոց է մեղադրում իր սխալների ու մոլորությունների համար։ Պետք է հուսալ, որ այսուհետև Ն. Զարյանը ավելի մեծ խստապահանջություն հանդես կբերի իր ստեղծագործությունները հրապարակելիս։

Գրական ժառանգության հարցերը, որոնք անցյալում դիտվում էին նացիոնալ-նիհիլիզմի դիրքերից, ինչպես հայտնի է, ուղղվեցին։ Սակայն այժմ նկատվում է մի այլ ծայրահեղություն, սխալներ և սայթաքումներ՝ ուղիղ հակառակ կողմից։ Նկատվում են ազգային սնապարծության, ազգային սահմանափակության դրսևորումներ։ Գրական-հրատարակչական շրջաններում ոմանք յուրովի են հասկանում գրական ժառանգության հարցը, պահանջելով անվերապահորեն ամեն ինչ հրատարակել, չմտենալով դրան գաղափարական-քաղաքական նպատակահարմարության և օգտակարության տեսակետից։ Այդ առումով բնորոշ է նաև այն, որ հրատարակելով Ռ. Պատկանյանի, Րաֆֆու և անցյալի այլ

հեղինակների գրքերը, չի տրվում այդ հեղինակների հայացքների մարքսիստական վերլուծությունը: Լուրջ սխալներ և թերություններ կան օրինակ Սարինյանի «Րաֆֆի» աշխատության մեջ:

Նկատվում է համահարթեցման, անցյալի բոլոր գրողներին «դեմոկրատացնելու» տենդենց: Այսպես, օրինակ, պրոֆեսոր Մ. Մկրյանն իրավամբ մեծարելով 10-րդ դարի հայ գրականության հանճար Գ. Նարեկացուն, անտեսում է այն իսկությունը, որ Նարեկացու մոտ իր որոշակի արտացոլումն է գտել հոգևոր դասի կրոնական ոգին, եգնավորական միստիկ աշխարհայեցողությունը:

Ղ. Ալիշանի ծննդյան 125-ամյակի կապակցությամբ «Գրական թերթ»-ում տպագրվեց «Բանաստեղծն ու հայագետը» հոդվածը: Ըստ արժանվույն գնահատելով Ալիշանի մեծ վաստակը, հայ բանաստեղծության և հայրենագիտության մեջ, հեղինակը համարյա մոռացության է տվել նրա կղերական, միստիկական տրամադրություններն ու ստեղծագործությունները, նրա աշխարհայացքի որոշակի կոնսերվատիզմը: Գրականագիտական որոշ մենագրություններում և հոդվածներում համարյա կողք-կողքի են դրվում Ռ. Պատկանյանն ու Մ. Նալբանդյանը:

Գրականության և արվեստի բուռն զարգացման ամենագլխավոր նախապայմանը՝ ստեղծագործ կադրերի մարքսիստական-լենինյան աշխարհայացքն է, նրանց բարձր կուլտուրան և գրական վարպետությունը: Իսկ դրան կարելի է հասնել միմիայն համառ ու երկարատև աշխատանքով, անցյալի գրական ժառանգության քննադատական յուրացմամբ և մեր օրերի վերընթաց կյանքի խոր իմացությամբ:

Սովետական գրականության և արվեստի հետագա զարգացմանը խոշոր չափով կօգնի «Ժողովրդի կյանքի հետ գրականության և արվեստի սերտ կապի համար» ընկ. Խրուշչովի աշխատությունը:

ՍՄԿՊ XX համագումարի կողմից նշված պատմական խնդիրների իրագործման բնագավառում պատվավոր դեր ունեն կատարելու մեր արվեստն ու գրականությունը: «Կուզենայի գրողներին ու արվեստագետներին խորհուրդ տալ,— ասում է ընկ. Խրուշչովը,— որ նրանք ավելի սեվեռուն դիտեն և ավելի խորը թափանցեն մեր երկրի բոլոր ազգությունների կյանքի մեջ: Այդ ժամանակ հազարավոր կենդանի օրինակներ նրանց ցույց կտան, թե ինչպես է փոխվել մարդկանց ճակատագիրը, թե ինչպիսի հիանալի հաջողություններով է մեր ժողովուրդը դիմավորում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը»:

Գրականությունը չպետք է ետ մնա մեր առաջ ընթացող կյանքից, նա պիտի սերտորեն կապված լինի կյանքի հետ: Սովետական գրողն իր տաղանդի ամբողջ ուժով պետք է ծառայի ժողովրդին, բազմապատկի մեր գրականության գանձերը նոր գեղարվեստական արժեքներով, ժողովրդին տա այնպիսի գործեր, որոնք միշտ ոգեշնչեն նրան իր ստեղծարար աշխատանքում:

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ԵՐԳԻՉԸ

ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ

Մե՜ծ եմ ու վեհ իմ օրերով:
ՉԱՐԵՆՑ

Զարմանալի՜ և հույժ երջանի՜կ զուգադիպություն:

Քառասուն տարի առաջ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի կենսաբեր ղողանջները ավետեցին դարերով մաքառող հայ ժողովրդի սոցիալիստական վերածնունդը: Քառասուն տարի առաջ Հոկտեմբերի «հրդեհներում աշխարհասասան» թրծվեց ու կոփվեց Սոցիալիստական ռևոլյուցիայի բոցաշունչ պոետ Եղիշե Չարենցը: Պատմական հանգամանքների բերումով և իր տաղանդի շնորհիվ Եղիշե Աբգարի Սողոմոնյանը դարձավ լենինյան դարն իր «շռնդալից քնարով» գովերգող պայծառ բանաստեղծ:

Պատահական չէ, որ դուրս գալով պրոլետարական ռևոլյուցիայի խանձարուրից, առնանալով Մեծ Հոկտեմբերի դաժան մարտերում, երիտասարդ բանաստեղծը կարողացավ հաղթահարել «Հավերժական կապույտ»-ին միտող իր վաղ շրջանի դեգերումները և դառնալ սովետահայ գրականության ճարտարապետը:

Խարկվելով քաղաքացիական թեժ կռիվների բոցերից, աղատատենչ երիտասարդ Չարենցը որպես լենինյան պարտիայի մարտիկ և նոր կյանքի պատգամախոս, 1919 թվականի վերջերին վերադառնում է Հայաստան՝ մասնակցելու իր արնաքամ ժողովրդին դաշնակների լծից ազատագրելու վսեմ գործին: Եթե նա գրչով «խելագարված ամբոխներ»-ի գովքն էր անում, ապա «Մուսայելյան» զրահապատի վրա զենքով մարտնչում էր արյունախում ու բռնացող խմբապետ Շավարշների դեմ:

Գրչով, անդուլ պայքարով նվաճելով իր համբավը՝ Եղիշե Չարենցը դարձավ սովետահայ պոեզիայի ու արձակի կարկառուն ներկայացուցիչը, կարողացավ անկրկնելի վարպետությամբ ու յուրովի լծորդել Գորկու և Մայակովսկու սոցիալիստական տրադիցիաները հայ կլասիկայի վիթխարի ժառանգության հետ: Նա հանդիսացավ այն պոետը, որն իրոք կերտեց բովանդակությամբ սոցիալիստական և ձևով ազգային գրական անմահ կոթողներ, որոնք նրան համաշխարհային փառք են ապահովում:

Լինելով սովետահայ քաղաքացիական պոեզիայի ու նոր լիրիկայի մեծագույն վարպետը՝ Չարենցը ստեղծեց իր գրական դպրոցը և իր ամբողջ ավյունն ու ստեղծագործական կորովը ի սպաս դրեց սոցիալիզմի հաղթության գործին: Եվ նա, որպես լենինյան դարի բոցաշունչ բանաստեղծ, նոր թափով երգեց վերածնված ժողովրդի մեծ առօրյան, դարձավ ժողովրդի սիրելին:

*Չարենցը սոցիալիստական հասարակության կառուցման համար պայքարող անդուլ մարտիկի տիպար էր։ Ստեղծագործորեն զարգացնելով Հ. Հակոբյանի ռևոլյուցիոն պոեզիայի տրադիցիաները, նա նոր ավյունով համակեց սովետահայ գրականությունը և այն առաջ մղեց սոցիալիստական ռեալիզմի ուղիով։*

*Հիրավի, Չարենցի գրական ուղին եղել է հակասալի, միշտ վերընթաց, բայց մերթ լուրջ խոտորումներով և վայրէջքներով («Պոեզոզուռնա», «Ռոմանս անսեր», «Մահվան տեսիլ» և այլն)։ Սակայն մեծ պոետը կարողացել է հաղթահարել իր ստեղծագործական մոլորությունները և դառնալ լենինյան դարի տաղանդավոր երգիչ։*

***

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան նոր ու պայծառ հորիզոններ բացեց Չարենցի առաջ, նրա հոգին լցրեց նոր կենսազգացողությամբ, ռևոլյուցիոն այրող խոհերով ու զգացմունքներով, իր պատկերավոր արտահայտությամբ՝ «էլեկտրական բորբ հոսանքներով»։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի պատմական խոշոր իրադարձությունների ու սոցիալական մեծ հեղաշրջումների ականատես ու մասնակից պոետը այդ տպավորությունների անմիջական ազդեցության տակ էլ ստեղծում է «Ազգային երազ» (1917, դեկտեմբեր — 1918, փետրվար) իր դիպուկ բնութագրմամբ՝ երգիծական և ողբերգական պոեմը։ Դա պոետի գաղափարական բեկումն ու գրական հայացքների զարգացումը հատկանշող առաջին երկն է։*

*Երգիծանքի ահագին ուժով Չարենցը խարանում է դաշնակներին, բացահայտում նրանց բախտախնդիր գործողությունների ծանր հետևանքները հայ ժողովրդի կյանքում։*

*Չարենցի քաղաքական-գրական հայացքների ձևավորումն ու ստեղծագործական զարգացումը կատարվում է սրընթաց ու թռիչքաձև։ Նա իր մեջ զգում է ռևոլյուցիոն մասսաների վիթխարի ուժը, անկոտրում կամքը, հաղթանակի անսասան հավատը։ Նրա ընդգրկման դիապազոնը դառնում է լայն, ստեղծագործական շունչը՝ մեծ։ «Աշխարհը մի նոր երգով է հղի»,— ասում է նա։ Եվ նրան է վիճակվում արտահայտելու այդ նոր երգը, նորի պոետական վառ ու կենդանի պատկերը, «բյուր ընկերների խինդը այսօրվա և թռիչքը մեծ»։*

Օրերում այս վառ, ճողմավար, շփոթ —
Հեռու ու մոտիկ միլիոն սրտերի
Ե՜րգն է վիճակվել ինձ երգել այսօր,
Իմ բազմամիլիոն, բյուր ընկերների
Խինդը այսօրվա ու թռիչքը մեծ...

*Ռևոլյուցիայի մեջ Չարենցը գտնում է իր և իր ժողովրդի փրկությունը, այն ամենի փրկությունը, ինչ նվիրական է, ինչ թանկ է մարդու համար, ինչ ստեղծել է նա դարեր շարունակ, կյանքի ծանր մղձավանջում։*

*Պոետի այս խոր և կենսաշունչ զգացմունքները սիմվոլիկ պատկերավորում են ստանում ռազմաճակատում ստեղծած «Սոմա» (1918) պոեմում։*

*Եթե «Սոմա» պոեմում մասսաների ռևոլյուցիոն տրամադրությունները ստանում են սիմվոլիկ արտահայտություն՝ Սոմա ազատության աստվածուհու կերպարում, ապա «Ամբոխները խելագարված» (1918, հուլիս) պոեմում տրըվում է ազատության համար մարտնչող ռևոլյուցիոն մասսաների հերոսական կերպարը՝ ռևոլյուցիոն դրվագներից մեկի վառ ֆոնի վրա։*



*«Զտանելով հին կյանքն էլ», բանվորն ու գյուղացին ելնում են գրոհի տերերի դեմ, «քաղաքի, որպես հազարամյա մի թշնամու» դեմ, բանվորը բերելով իր «թոքախտավոր սիրտը, որպես կարմիր դրոշ», գյուղացին՝ «մկաններում բեղմնավորված ուժը հողի»՝ սրտներում անթեղած ռևոլյուցիայի անհուն բերկրությունը։ Պոետը պատկերում է դեպի ազատությունն ընթացող ռևոլյուցիոն մասսաների հաղթական երթը։*

Խավար է մեծ սիրտը նոցա, բայց խավարում անձայրածիր —
Երկինքնե՜ր կան կապուտաչյա, հորիզոննե՜ր՝ անձա՜յր, անծի՜ր։
Ու աչքերում նրանց կապույտ, ուր իջել է գիշերը մութ —
Հազա՜ր բողբոջ կա կրակոտ, ու արշալույս ու առավոտ։
Նրանց ձրգված մկաններում ո՛ւժն է նստել խոնավ հողի —
Երբ ուզեն՝ արևներին նոր տե՛մպ կըտան ու նոր ուղի...
Երբ ուզեն՝ արեգակնե՜ր կըշպրտեն երկինքն ի վեր.
Երբ ուզեն՝ վա՛ր կբերեն երկինքներից արեգակներ...
Երբ ուզեն՝ կամքով արի ու աշխարհի հրով վառված...
Ինչե՜ր միայն չեն կատարի ամբոխները խելագարված...

*«Ամբոխները խելագարված» պոեմում խտացված է ազատության համար մարտնչող մասսաների ռևոլյուցիոն թափը, նրանց հզոր շունչը, հերոսականությունը, նրանց այն վիթխարի շարժումը, որն ուղղված էր հին աշխարհի դեմ, այն խորտակելու համար։ Խելագարված ամբոխնե՜ր... Այդպես է վարվել նաև հայ ժողովուրդն իր անմահ էպոսում՝ երբ իր հերոսներին Սասմա ծռեր է կոչել։*

*«Ամբոխները խելագարված» պոեմը գրված է խոր ներշնչումով, էմոցիոնալ վառ ու անկրկնելի պատկերներով, մասսաների ռևոլյուցիոն պայքարի ռոմանտիկ բարձր նկարագրությամբ։ Այն իրավամբ համարվում է սովետահայ պոեզիայի գագաթներից մեկը։*

*«Երգ ժողովրդի մասին» պոեմում Չարենցը էպիկական մեծ շնչով պատկերում է ռուս ժողովրդի բազմամյա պայքարի ու հաղթանակների հերոսական ուղին, պատմում նրա դարավոր տառապանքների մասին և թե ինչպես նա տարերային պայքարից հասնում է դասակարգային պայքարի գիտակցությանը, Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ նվաճում է իր պատմական իրավունքը և տեր դառնում իր աշխատանքին։*

*Ապրելով ռևոլյուցիայի հաղթանակի անօրինակ խինդը, գովերգելով իր բախտին տեր դարձած ռուս ժողովրդի անպարտելի ուժը, իր մեջ զգալով ռևոլյուցիոն բյուր մասսաների կորովը, Չարենցը գիտակցության ամբողջ խորությամբ մտահոգվում է իր ժողովրդի բախտով, զգում երկրի ծանր ու ողբերգական վիճակը. «կրակ է այնտեղ, ու հրդեհ, ու մահ»,— ասում է նա։ Ոչնչացման, սովի ու համաճարակային հիվանդությունների ենթակա երկիրը Չարենցի հոգին լցնում է ծանր ու դառնաղի զգացումներով։*

...Օրերը եկե՜լ են,
Օրերը հասե՜լ են,—
Ու հուրը դարձել է հո — սև...

*Մտահոգված կեղեքվող իր ժողովրդի բախտով, որպես նրա հարազատ զավակը, Չարենցը պատրաստ էր կյանքը զոհաբերելու իր երկրի ազատության, նրա լուսավոր ապագայի համար։*

Հոգու ամբողջ էությամբ պաշտպանելով նորաստեղծ սովետական հասարակարգը, պայքարի կրակն ուղղելով ինտերվենտների դեմ, Չարենցը դրանով միաժամանակ արտահայտում է իր ժողովրդի զգացումներն ու կենսական շահերը, ռուս ժողովրդի հանդեպ ունեցած նվիրական զգացումները, ռևոլյուցիայի հաղթանակի հանդեպ ունեցած անսասան հավատը։

Չարենցի 1917—1920 թվականների պոեզիան գրական արտակարգ երևույթ էր ոչ միայն իր գաղափարական բովանդակությամբ ու բարձր արվեստով, այլև ժանրային բազմազանությամբ ու հարստությամբ։ Էպիկական հիասքանչ պոեմների հետ միասին այդ տարիներին Չարենցը ստեղծում է բազմաթիվ բանաստեղծություններ ու բալլադներ։ Դրանք ուշագրավ են բազմաթիվ կողմերով, լի պոետական գյուտերով, ուր երևում է Չարենցի պոետական մեծ ուժը, գեղարվեստական խոսքի ինքնատիպությունը։ Այդ գործերում կրկին բաբախում է պոետի նույն հրաբորբոք հոգին, խփում ռևոլյուցիոն օրերի նույն զարկերակը, ինչ նրա էպիկական պոեմներում։

Ժողովրդի հետ ունեցած անխզելի կապը շարունակ ներշնչել է պոետին և մղել ստեղծագործական նոր թռիչքների։ Չարենցի ստեղծագործության մեջ որոշողը բուռն ու անդավաճան հայրենասիրությունն է՝ դառնակսկիծ, բայց վսեմ ու հեսանող, առողջ ու կենսունակ։ Այն արտահայտում է մեր ժողովրդի նվիրական զգացմունքները, նրա օպտիմիզմն ու խոր ինտերնացիոնալիզմը, նրա տոկունությունը, ներքին ու արտաքին տերերի դեմ ուղղված ըմբոստ ու մարտական ոգին, հաղթանակի հաստատուն կամքը։

Չարենցը սիրում է իր տառապյալ ժողովրդի դարավոր կուլտուրան՝ «արևահամ բառը», «աղոթք դարձած երկաթագիր գրքերը», սիրում է նրա «ողբանվագ» սազը, այն ամենը, ինչ ստեղծվել ու արյամբ պաշտպանվել է տասնյակ սերունդների ջանքերով։ Չարենցի հայրենասիրությունը վերածվում է բոցավառ ու ջերմեռանդ սիրո։ «Անուշ Հայաստանը» փրկելու համար նա պատրաստ է Խաչատուր Աբովյանի պես գլուխը մահուն տալ. «Թող ո՛չ մի զոհ չպահանջվի ինձնից բացի»,— արհավիրքի ծանր օրերին հնչում է նրա սրտակեղեք, բայց մարտաշունչ ու վճռական ձայնը։ Եվ նրա հայացքն ուղղվում է դեպի Հոկտեմբերյան ռևոլյուցիան, դեպի ազատագրված Ռուսաստանը և նրանից օգնություն հայցում։

Նայի՛ր մի պահ քո հրե աչքերով զվարթ
Դեպի երկի՛րը իմ մութ, իմ երկիրը մառ...

Չարենցը խորապես հավատում էր իր ժողվրդի հաղթանակին, իր երկրի վերածնությանը՝ «կբարձրանա մշուշից մանկաժպիտ... Արան» («Շամիրամ») այլաբանորեն ասում է նա։

Մեծ է 1917—1920 թվականների Չարենցի ստեղծագործության հմայքն ու կենսունակությունը, ռևոլյուցիոն պաթոսն ու երգիծանքի խարանող ուժը։ Հսկայական է նրա պոեզիայի ներգործուն ազդեցությունը՝ մասսաների ռևոլյուցիոն տրամադրությունների կազմակերպման, նրանց մեջ սոցիալիստական գիտակցության պատվաստման գործում։

***

Չարենցի ստեղծագործական նոր էտապը նշանավորվում է Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո, 20-ական թվականների



սկզբին, «Ամենապոեմ»-ով (1921), «Երկիր Նաիրի» մոնումենտալ վեպով (1923)։ «Ամենապոեմ»-ն ընդգրկում է պատմական մեծ էպոխա՝ համաշխարհային պատերազմը, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, քաղաքացիական հերոսական կռիվները, այդ ամենին զուգորդված հայ ժողովրդի ազատագրական-ռևոլյուցիոն պայքարը, նրա ազգային վերածնունդը։

Պոեմն սկզբից մինչև վերջ մի կենդանի ու սրտառուչ զրույց է բանվոր դասակարգի հետ, ոգեշունչ գովերգություն նրա հերոսական պայքարի ու հաղթանակի, նրա ստեղծագործական անսպառ կարողությունների, դասակարգ «բյուրահանճար», որ ստեղծել ու ստեղծում է աշխարհի ողջ նյութական ու հոգևոր արժեքները։

«Ամենապոեմ»-ում Չարենցը ցուցաբերում է հասարակական երևույթներն ընդգրկելու մեծ դիապազոն, ստեղծում դասակարգերի անհաշտելի հակասություններն ու սուր բախումները բացահայտող անզուգական կերպարներ (բանվոր Պողոս, խանութպան Համո, վարժապետ Սողո), համաշխարհային պատերազմի վիթխարի դինամիկան արտահայտող մասսայական վառ տեսարաններ, ռիթմական-տաղաչափական նոր ու հարուստ հնարքներ, արտահայտչական այնպիսի միջոցներ, որոնցով էապես գծվում է մեծ էպոխայի գեղարվեստական, ճշմարտացի պատկերը։

«Ամենապոեմ»-ում Չարենցն արդեն կատարում է ստեղծագործական թռիչք, հասնում Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ռեալիստական խոր ու համապարփակ նկարագրությանը, անհատականացված կերպարների ստեղծմանը, կենդանի կերպարների ու պատկերների միջոցով տալիս է իմպերիալիզմի, դաշնակցության քաղաքական դիպուկ բնութագիրը։

«Ամենապոեմ»-ում կերպարները ներկայացվում են իրական ու բուռն գործողությունների, սուր և կոնկրետ բախումների մեջ, իրենց զարգացման պրոցեսում։ Մասսայական տեսարանները զուգորդվում են առանձին հերոսների գործողություններին։ Հոկտեմբերյան մեծ նվաճումների մեջ ներկայացվում է հայ ժողովրդի ազատագրումը, միջազգային իրադարձությունների մեջ տեսնում՝ և ազգայինը։ Մի կողմից համաշխարհային պատերազմի հետևանքով ծավալվող ավերվածությունների, հայկական կոտորածների ու գաղթի սրտաճմլիկ տեսարանների պատկերումը, մյուս կողմից՝ մասսաներին համակող ռևոլյուցիոն պաթոսի, ազատագրված հայ ժողովրդի խնդության դրսևորումը։

Հայաստանը կամայանար ռազմատենչ հորդաների կրնկի տակ, հայ ժողովուրդն իր դարավոր կուլտուրայով կոչնչանար դաշնակցության բախտախնդիր գործունեության և կործանարար քաղաքականության հետևանքով, եթե վրա չհասներ Հոկտեմբերյան ռևոլյուցիան։

Պատմական այս կենսական ճշմարտությունն է, որ գեղարվեստական ցայտուն արտացոլում է ստանում Չարենցի ոչ միայն «Ամենապոեմ»-ում, այլև «Երկիր Նաիրի» վեպում, «Կավկազ Թամաշա» դրամատիկական պոեմում։ «Երկիր Նաիրին» հրաբորբոք խոսք է ի պաշտպանություն Հայաստանում ստեղծված Սովետական պետականության, սատիրական-գեղարվեստական մոնումենտալ երկ՝ ուղղված դաշնակցության՝ հայ խոշոր բուրժուազիայի ռազմատենչ պարտիայի դեմ։

Մեկընդմիշտ փշրելով երկիր Նաիրիի, որպես «ավետյաց» երկրի մասին ստեղծված սխալ պատկերացումների այն կախարդական շղթան, որ հյուսվել

էր տասնյակ տարիների ընթացքում, Չարենցը ցույց է տալիս Նաիրյան աշխարհն իր պատմական կոնկրետությամբ, մարդկանց սոցիալ-քաղաքական ռեալ հարաբերությունները մի ամբողջ պատմաշրջանում՝ համաշխարհային պատերազմի առաջին իսկ օրերից մինչև դաշնակցության արյունոտ տիրապետության շրջանը, մինչև նրա խայտառակ տապալման սկիզբը։

Բացահայտելով դաշնակցականների «ազգային սխրագործությունների» ողջ նողկալիությունն ու խեղճությունը, Չարենցը ցույց է տալիս նրանց գործունեության հակառևոլյուցիոն բնույթը, նրանց ավանտյուրիստական քաղաքականության հետևանքով հայ ժողովրդին հասած անլուր տառապանքները, նրա ծանր ողբերգությունը։

Եվ այդ նա կատարում է արվեստագետի մեծ ուժով, պատմական խոր ճշմարտացիությամբ, սատիրական ընդհանրացնող կերպարների ու պատկերների միջոցով, հայ ժողովրդի դարավոր սովորությունների ու լեգենդար պատմությունների, առօրյա կյանքի ու կենցաղի, հասարակական-քաղաքական բուռն պայքարի, Նաիրյան հնագույն քաղաքներից մեկի՝ Կարսի պատմական խոշոր իրադարձությունների ֆոնի վրա։

Հենց սկզբից Չարենցը բացահայտում է դաշնակցականների գործունեության ավանտյուրիստական ու հակաժողովրդական բնույթը, նրանց խոսքի ու գործի հակասությունը, ամբարտավան սնապարծությունը, և այն, թե ինչպես նրանք ձգտում են սոցիալիզմն ու հայրենասիրությունը չարաշահել իրենց ստոր գործարքների համար, գծեր, որոնք վեպի մյուս մասերում, պատմական կոնկրետ իրադարձությունների զարգացման հետ միասին, հետզհետե զարգանում ու խորանում են, հասնում գեղարվեստական բազմակողմանի ու լայն ընդհանրացման։

Վեպի վերջին մասում («Երկիր Նաիրի»), պատմական նոր իրադարձությունների ֆոնի վրա Չարենցը բացահայտում է դաշնակցության, Մազութի Համոյի գործունեության ողջ ավանտյուրիստական, տեռորիստական բնույթը։

Չարենցի խարանող սատիրան այստեղ հասնում է իր բարձրակետին, դրսևորվում բազմակողմանիությամբ և ամբողջ ուժով։ Մազութի Համոն՝ հայ խոշոր բուրժուազիայի կարկառուն ներկայացուցիչը, բռնում է քաղաքական շանտաժի ուղին, չարաշահելով ժողովրդի հայրենասիրական զգացմունքները, դրանք ծառայեցնում է իր քաղաքական նենգ նպատակներին։

Չարենցը, այնուհետև, պատկերում է Մազութի համոյականների ավանտյուրիստական քաղաքականության հետևանքով հայ ժողովրդի կյանքում տեղի ունեցած վերջին արյունալի անցքերը։

«Երկիր Նաիրի»-ն խորապես ռեալիստական և ինքնատիպ մի վեպ է, «արտասովոր գրական մի երևույթ», որն իր երգիծական կենդանի կերպարներով ու պատկերներով, ազգային վառ կոլորիտով հայ գրականության մեջ պատվաստում է գոգոլյան սատիրայի անմահ տրադիցիաները, իր գաղափարական-գեղարվեստական առանձնահատկությամբ և ուժով հայ արձակագրության մեջ բացում է նոր էջ։

***

20-ական թվականներին սոցիալապես և քաղաքականապես ազատագրված հայ ժողովրդի պոեզիան մտնում է իր զարգացման նոր՝ սովետական փուլը։ Զարգացնելով կլասիկ գրականության լավագույն տրադիցիաները՝



Չարենցի պոեզիան դարձավ նոր մարդու հույզերի ու խոհերի արտահայտիչը։ Սովետահայ պոեզիայի ձևավորումը, սակայն, տեղի է ունենում գաղափարական բարդ պայքարում և ժամանակաշրջանով պայմանավորված առանձին սխալ հայացքների հաղթահարման պայմաններում։

Հայ գեղարվեստական գրականության զարգացման նկատմամբ պարտիայի ցուցաբերած հոգատար ու զգայուն վերաբերմունքը հսկայական բարերար ազդեցություն է ունենում սկզբնավորվող սովետահայ գրականության ու առանձին գրողների, այդ թվում և Չարենցի հետագա զարգացման ընթացքի վրա։ 1923 թվականին արդեն Չարենցը մերժում է պոեզիայի մեջ արհեստականորեն ներմուծվող օտար բառերն ու բարբառային բառաձևերը, դատապարտում բովանդակությամբ չհիմնավորված, կոնկրետությունից, իմաստից և հույզից զուրկ «նորաձևությունները»։

Չարենցը, ավելի, քան որևէ մեկ ուրիշը, հիանալի տեսնում է նոր պոեզիայի ստեղծման դժվարություններն ու բախումնալի ուղին, բայց և Չարենցն է, որ ֆանատիկորեն հավատում է նրա անխուսափելի ստեղծմանը, ընդգծում նրա պատմական անհրաժեշտությունը։

Պարտիան և գրական պրակտիկան բացահայտում են պոետի մոլորությունները և նրան մղում դեպի արվեստի նոր բարձունքներ։

1924 թվականին Վլադիմիր Իլյիչ Լենինի մահը ցնցող ազդեցություն է ունենում Չարենցի վրա։ Բանաստեղծի առաջ իր ամբողջ հասակով կանգնում է ռևոլյուցիայի հանճար Լենինի տիտանական կերպարը։ Շարունակելով զարգացնել 1917—1921 թվականներին ստեղծած «Երգ ժողովրդի մասին», «Ամբոխները խելագարված» պոեմների, «Ամենապոեմ»-ի լավագույն տրադիցիաները՝ Չարենցը կտրուկ շրջադարձ է կատարում, ազատվում 1922, 1923 թվականներին թույլ տված գաղափարական-գեղարվեստական մոլորություններից, իր ստեղծած նոր երկերով բացասում «Ռոմանս անսեր»-ի անառողջ սկզբունքները։ Մի շարք լավագույն գործերի հետ միասին նա ստեղծում է բալլադների, պոեմների ու երգերի լենինյան անմահ շարքը, նշանավորելով սոցիալիստական ռեալիզմի զարգացման նոր էտապը մեր պոեզիայում։

1924 թվականին Չարենցը հանդես է գալիս «Մաճկալ Սաքոյի պատմությունը» պոեմով, «Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին» երկով, որոնք նշանավորում են նրա վերելքը սոցիալիստական ռեալիզմի, ժողովրդայնության, գաղափարական բարձր արվեստի ճանապարհին։

1924 թվականից սկսած լենինյան թեման ուղեկցում է Չարենցի ստեղծագործական ողջ կյանքին, դառնում նրա ոգեշնչման անսպառ աղբյուր, նրան մղում ստեղծագործական նոր խիզախումների։ Լենինն ու լենինյանը Չարենցի համար դառնում է գեղարվեստական արտացոլման չափանիշ։

Լենինին նվիրված Չարենցի բազմաթիվ գործերում զգացվում է առաջնորդի մեծությունը, գործողությունների լենինյան թափը, նրա իմաստուն ու բյուրեղային հոգին։

Անցյալի մղձավանջից ու կեղեքումից ազատագրված աշխատավորն իր ամբողջ հոգով սիրում է Վլադիմիր Իլյիչ Լենինին, նրան է դիմում իրեն հուզող հարցերով։ Պետական անհետաձգելի հոգսերով մտահոգված Լենինը ժամանակ է գտնում ունկնդրելու շարքային աշխատողին, հասկանալու նրան, կատարելու նրա կենսական պահանջմունքները։ Այդ փոխադարձ ու անխզելի կապի մեջ է Լենինի անհաղթահարելի ուժը։ «Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մու-

ժիկի և մի զույգ կոշիկի մասին» երկում գեղարվեստական բարձր կատարմամբ Չարենցն արտահայտում է այդ վսեմ իդեան։

Լենինի լեգենդար կերպարը ոգեշնչում ու սխրագործությունների է մղում ոչ միայն սովետական մարդկանց, այլև աշխարհի բոլոր աշխատավորներին, որոնք տակավին տնքում են կապիտալի արյունոտ լծի տակ։ Պատմական այս ճշմարտությունն է արտահայտում «Լենինն ու Ալին» Չարենցի նշանավոր պոեմը։ Թեև պոեմում հանդես չի գալիս Լենինը, սակայն ստեղծելով տրապիզոնցի թիավար Ալու հուզիչ կերպարը, բացահայտելով նրա հոգեկան խոր դրաման, ընթերցողը Չարենցի յուրաքանչյուր տողից ու արտահայտությունից, յուրաքանչյուր պատկերից զգում է Լենինի ջերմ շունչը, նրա անմեկնելի հմայքը։ Չարքաշ Ալու գիտակցության մեջ Լենինը պատկերանում է որպես բարու և գեղեցիկի մարմնավորում, որպես «ամենամեծ խալիֆ», «որ հասկանում է միշտ ֆուխարայի հալից»։ Եվ հանկարծ չկա Լենինը։ Ռադիոն նրա մահվան ծանր լուրը կայծակի արագությամբ հաղորդում է բովանդակ աշխարհին՝ «ինչպես թուր աշխարհը կիսող»։ Լուրը հասնում է նաև Տրապիզոն, հասնում Ալուն։ Չարենցը, այնուհետև, ռեալիստական թանձր գույներով պատկերում է Ալու գիշերային այցը սովետական հյուպատոսարան, նրա հոգեկան ծանր ու սրտակեղեք ապրումները։

Պոեմը ավարտվում է հաղթական ակորդներով։ Լենինի մահվան ողբերգական զգացողությունը միահյուսվում է լենինյան ուսմունքի անմահության գաղափարին։

— Ողջո՜ւյն արխադաշ Ալուն:
— Հաղթանա՜կ գործին Իլյիչի:

Արտահայտելով Լենինի մահվան պատճառած համաժողովրդական վիշտը, պոետական մեծ շնչով, վառ կերպարների ու պատկերների միջոցով Չարենցն ընդգծում է լենինյան ուսմունքի ամենահաղթ ուժը։ Չկա Լենինը, կա լենինիզմը։ «Իլյիչը — իմ մե՛ջ է, քո մե՛ջ է, նրա մե՛ջ է, Իլյիչը — կա՛»,— հընչում է բանաստեղծի հաստատակամ ձայնը։

Դեռ կգա Իլյիչը,
Որ մտնի համաշխարհային Սովնարկոմ:

***

1924 թվականի վերջերին, Ալ. Մյասնիկյանի նախաձեռնությամբ Չարենցը մեկնում է արտասահման։ Նա լինում է Թուրքիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Գերմանիայում, տեսնում է Պոլիսը, Աթենքը, Նեապոլը, Հռոմը, Վենետիկը, Փարիզը, Բեռլինը։ Կապիտալիստական երկրներում կատարած շրջագայությունը հարստացնում է պոետի տպավորությունները, առաջ բերում ստեղծագործական նոր մղումներ։ Չարենցը պարզորոշ տեսնում է կապիտալիստական աշխարհի մահամերձ գալարումները և այն կենսական, ռևոլյուցիոն ուժերը, որոնք աճում են նրա ընդերքում, խարխլելով նրա հիմքերը։ «Եվ ահա այս մթնոլորտում,— գրում է նա Ստամբուլից Ալ. Մյասնիկյանին,— ես շրջում եմ այստեղ, դիտում եմ տիեզերական բուրժուազիայի կյանքը և սիրտս ուռչում է հպարտությունից, որ բոլշևիկ եմ, կոմունիստ, լենինյան կազմակերպության անդամ»։



Արտասահմանյան ուղևորությունը պոետի հոգեկան աշխարհում առաջ է բերում հեղաշրջում։ Հարկավոր է միաժամանակ ապրել «կարմիր գծից դուրս,— ասում է նա 1925 թվականին,— որպեսզի զգալի լինի այն հսկայական կոնտրաստը, որ կա մեր և հին աշխարհի մեջ»։ Ահա այդ կոնտրաստն է, որը հարկադրում է բանաստեղծին անելու մի շարք վերագնահատումներ և ճիշտ եզրակացություններ։

«Հարկավոր է մեկ անգամ ընդմիշտ ձեռք քաշել զանազան «իզմ»-երից,— ասում է նա,— որ բխում են ձևին առաջնություն տալուց և աշխատել «ոտքից գլուխ» թաթախվել, թրծվել, եփվել ու կոփվել պրոլետարական իդեոլոգիայով, հարկավոր է հասկանալ, որ պրոլետարիատի անունից խոսելու համար չեն կարող լինել արվեստի ֆուտուրիստական, կոնստրուկտիվիստական կամ այլ տեսակներ, այլ միայն մի և միասնական տեսակետ — պրոլետարական տեսակետ։ Ոչ մի սպեցիֆիկացիա։ Սովորել ամեն ինչ, նույնպես և արվեստին ու գրականությանը մոտենալ ամենից առաջ պրոլետարիատի դասակարգային պայքարի, նրա վերջնական հաղթանակի և համամարդկային հեգեմոնիայի տեսակետից, ահա հիմնականը»։

Այս լույսի տակ է ահա, որ Չարենցը սկսում է անողոք քննադատության ենթարկել իր և մյուսների ստեղծագործություններում ու հայացքներում 20-ական թվականներին թույլ տված սխալներն ու թերությունները։

Խորապես գիտակցելով իր սխալները՝ Չարենցն անում է կտրուկ շրջադարձ, կանգնում ստեղծագործական լայն ճանապարհի վրա, ստեղծում իր մի շարք կլասիկ երկերը՝ «Ստամբուլ», «Լենին քեռին», «Լենինն ու Ալին», «Կոմունարների պատը Փարիզում» (Մյուր դե ֆեդերե), «Պոեմ հերոսական», «Էլեգիա գրված Վենետիկում» և այլն։

Նոր կյանքով խանդավառված Չարենցն իր այդ ստեղծագործություններում պատկերում է սոցիալիստական շինարարությունը, ազատագրված հայ ժողովրդի աշխատանքային հերոիկան, ժողովուրդ, որ հսկայական դժվարություններ հաղթահարելով ստեղծում է իր սոցիալիստական Հայրենիքը, վերաշինում ու վերածնում է «խուլ աշխարհը մեր նաիրական»։

Ուր անապատ էր, դաշտ էր ամա,
Ուր լոկ երաշտ էր ու մահ բոցե —
Մենք ջրանցքներ ենք շինել հիմա
Եվ մեր դաշտերը ոսկեզօծել:

Չարենցը վարպետորեն է արտահայտում բուռն կերպով ծավալվող հնի և նորի պայքարը, հինը, որ դեռևս կենսունակ է մեր առօրյայում, աշխատանքում ու կենցաղում և ամենուրեք զգացնել է տալիս իրեն։

Եվ այս պայքարը համր, լռին,
Այս մենամարտը մեր առօրյա —
Օ, ավելի՛ է տագնապալի,
Քան բարիկադը նոյեմբերյան...

Գեղարվեստական գրականության զարգացման ուղիների մասին այս նշանակալից խոհերով էր ապրում Չարենցը՝ կանգած ստեղծագործական բեկման ճանապարհին, երբ 1925 թվականի հունիսի 18-ին հրապարակվում է ՌԿ(բ)Պ Կենտկոմի «Պարտիայի քաղաքականությունը գեղարվեստական գրականության բնագավառում» հայտնի բանաձևը։ Գեղարվեստական գրականու-

թյան մարզում պարտիայի վարած քաղաքականությունը լայն հնարավորու-
թյուն է ստեղծում նաև սովետահայ գրականության, հայ ժողովրդի ազգային
կուլտուրայի անշեղ զարգացման համար։

Չարենցը խորն է հասկանում գեղարվեստական գրականության մասին
Կենտկոմի նոր բանաձևի ոգին և այն դարձնում իր հետագա աշխատանքների
ու ստեղծագործության ծրագիր։

Այսպես, ուրեմն, Լենինի մահը, արտասահմանյան ուղևորությունը, Կենտ-
րոնական Կոմիտեի բանաձևը, գյուղում ու քաղաքում ծավալվող աշխատան-
քային նոր վերելքը, լենինգրադյան «խստաշունչ առօրյան»,— այդ ամենը
իրենց հզոր կնիքը դնում են Չարենցի ստեղծագործության վրա, դարձնում
այն դարաշրջանի «խոհով ծանրացած... և՛ պայծառ, և՛ ջինջ»։ «Նոր տանջանք-
ներով» հոգին կոփած պոետը հազարավոր թելերով կապվում է իր վիթ-
խարի դարին, համառ պայքար մղում «մարքսիզմի չստեր հագած» ֆիլիստեր-
ների, մեր օրերի հանդեպ երկաթյա քղանցք հագած քաղքենիների ու պոեզիան
հասարակացնող պերճամոլների դեմ, իր պոետական խոսքը դարձնում սո-
ցիալիստական պայքարի հատու զենք։

1930 թվականին լույս տեսած «Էպիկական լուսաբաց»-ը ազդանշում է
ոչ միայն Չարենցի, այլև սովետահայ պոեզիայի նոր, հուժկու վերելքը։ «Երե-
քը» դեկլարացիայից մինչև «Էպիկական լուսաբաց»-ը Չարենցի համար դառ-
նում է գրական հայացքների ու ստեղծագործության բեկման ճանապարհ,
դժվարին ու բարդ, լուրջ սայթաքումներով, բայց միշտ վերընթաց, դեպի սին-
թետիկ արվեստի բարձունքները ձգվող որոնումների ու հուսախաբությունն-
րի, աղնիվ կրքերով լեցուն, բուռն ու փոթորկալից պայքարի մի ճանապարհ։
20-ական թվականներին մղվող գրական այդ սուր պայքարում Չարենցը նվա-
ճում է լիակատար հաղթանակ, հնչեցնում իր պղնձաձույլ ու շռնդալից պայծառ
քնարը։ Չարենցի ստեղծագործության համար, իրոք, բացվում է էպիկական
լուսաբաց։

Սոցյալիստական հայրենասիրությունը, մեր հաղթանակի անսասան հա-
վատը դառնում է Չարենցի ողջ ստեղծագործության տիրական շունչը։ Չարեն-
ցը հանդես է գալիս որպես մեծ ինտերնացիոնալիստ։ Ի հակադրություն նա-
ցիոնալիստական պարտիաների, բուրժուական անկումային գրականության,
նա երգում է սովետական բազմազգ ժողովուրդների եղբայրությունն ու համե-
րաշխությունը, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում դրսևորված ամբողջ
աշխարհի աշխատավորության եղբայրական միասնությունը։

Էպիկական վեհ շնչով Չարենցը պատկերում է ռևոլյուցիայի հերոս նա-
հատակներին, ընդգծում նրանց գործի համամարդկային բնույթն ու հավեր-
ժականությունը, նրանց գաղափարների կենսական մեծ ուժը գալիք սերունդ-
ների գործերում։ Նա ցույց է տալիս («Կոմունարների պատը Փարիզում»)
Պեր-Լաշեզի ու Կրեմլի պատերի տակ հանգչող ռևոլյուցիոն նահատակների
սերտ կապը, որ «Հոկտեմբերի հունտը» աճում է համայն աշխատավորության
սրտերում, կաթվածահար անելով կապիտալի մագնատներին։

Սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ ունեցած իր անհուն սերը Չա-
րենցն արտահայտում է «Գանգրահեր տղան» (1928—1929) իր կատարման
արվեստով անթերի պոեմում։ Կապուտաչյա, պիոներական փողկապը վզին
գանգրահեր տղան սիմվոլացնում է նոր, երջանիկ սերնդի գեղեցիկ ու վսեմ
գծերը, նոր, հաղթական սերնդի ջինջ ու պայծառ հոգին։



Նորի այդ անհուն սերն է, որ թշնամու նկատմամբ Չարենցի ստեղծագոր-
ծությունը տոգորում է շիկացած ցասումով։ «Խմբապետ Շավարշը» (1928)
պոեմում, «Դաշնակցականներին» (1929) քաղաքական ներբողում բանաստեղծը
կրկին անդրադառնում է «տերերի շառաչուն կառքին» լծված դաշնակցական-
ներին, որոնց բախտախնդիր քաղաքականության հետևանքով՝

Եղել է երկիրն՝ արցունքի հեղեղ,
Եվ ժողովուրդը՝ կրկնակի գերի:

«Ազգային երազ»-ից, «Ամենապոեմ»-ից մինչև «Խմբապետ Շավարշը»
պարզորոշ ուրվագծվում է Չարենց-բանաստեղծի գաղափարական-գեղարվես-
տական հասունացումն ու կատարելագործումը։ Պոեմի յուրաքանչյուր պատ-
կեր ու արտահայտություն, ոճական յուրաքանչյուր երանգ Չարենցը ծառա-
յեցնում է իր կերպարի, նրա միջոցով իր քաղաքական տենդենցի առավել
ցայտուն դրսևորմանը։ Խմբապետ Շավարշի կերպարում թանձր գույներով
խտացվում ու բացահայտվում են դաշնակցության ողջ զազրելի գործողու-
թյունները, նրա քաղաքական ու բարոյական անկումը, ժողովրդի նկատմամբ
ունեցած գազանային ատելությունը, շեշտակի գծվում է դաշնակների հոգե-
կան նողկալիությունն ու սրնատենչությունը։

Չարենցը պահանջում է մեծ դարաշրջանին արժանավայել գործեր, լենին-
յան թափ, նոր օրերի շունչ և զգացմունք։

Կապվիր նյարդով յուրաքանչյուր
Քո օրերին ու քո դարին:

Սա է «էպիկական լուսաբաց»-ի ստեղծագործական առողջ տենդենցը,
կենսական մեծ շունչը, որ գեղարվեստական նոր ուժով դրսևորվում է Չարեն-
ցի «Գիրք ճանապարհի» (1933) վերջին երկում։

Ինչ որ գտնես այս գրքում, ի՛նչ մտածմունք ու խորհուրդ
Ողջը հանած համարիր — քո օրերի մատյանից:

Դա պոետի ճիշտ բնութագրումն է «դարի արևով և երկրի ցողով պատած»
իր նոր երգերի։

«Գիրք ճանապարհի»-ն քաղաքացիական պոեզիայի, սոցիալիստական
ռեալիզմի խոշոր գործ է։ Նրանում նոր ու վիթխարի ուժով դրսևորվում են
Չարենցի ստեղծագործական պոտենցիալ կարողությունները։ Նրա քաղաքա-
ցիական պոեզիայի պայծառությունը զուգորդվում է փիլիսոփայական խոր
ընդհանրացումներին ու պոետական բարձր արվեստին։

«Գիրք ճանապարհի»-ն մարդկային կյանքի ու բնության, նյութական
ու հոգևոր արժեքներ ստեղծող անմահ ժողովրդի մի սրտառուչ գովերգու-
թյուն է։

Գրքի գաղափարական հիմքը հայ ժողովրդի ճակատագրի հարցն է, նրա
պատմական անցյալը, կուլտուրան, սոցիալիստական կյանքը։

«Պատմության քառուղիներով» բաժնի մի շարք գործերում Չարենցը ար-
տահայտում է պատմական այն ճշմարտությունը, որ հայ ժողովուրդն իր դա-
րավոր կուլտուրայով կոչնչանար, փոշի կդառնար, եթե անմիջական օգնության
չհասներ Հոկտեմբերյան ռևոլյուցիան, եթե չլիներ լենինյան ոգին։

Թեև որոշ գործերում («Սասունցի Դավիթ», «Պատմության քառուղինե-
րով», «Մահվան տեսիլ») նկատելի են հակասություններ, պատմության նկատ-
մամբ կիրառած նիհիլիստական որոշ խոհեր, սակայն, «Ջրհապատ Վար-
դան զորավար», «Գալիք որմնադիրները», «Համայնական դաշտերի սերմնա-

*ցաններ», «Խոսք խաղողի, գինու և գեղեցիկ գպրության», «Սորք» պոեմներն ու երգերը արտացոլում են մեր ժողովրդի հերոսական անցյալը. ցույց տալիս, թե ինչպես հայ բազմադարյան կուլտուրայի, գրականության ու արվեստի գանձերը՝ «գողթան վտակները վճիտ ու ոսկեձայն», գուսանական քաղցրիկ երգերը, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջով փոխանցվում են նոր սերնդին, որ սոցիալիստական Հայաստանում նոր կյանք է առնում ալեզարդ «հնությունը», նոր ձևով խոսում անցյալի կուլտուրական հարուստ ժառանգությունը՝ դառնալով ակունք «մեր նոր արվեստի քերթողական», սնունդ տալիս իր իսկ պոետի երգերին «և՛ բորբ, և՛ թեժ»։ Չարենցը հայ ժողովրդին ներկայացնում է որպես սոցիալիստական մեծ բանակի մարտական ջոկատներից մեկը, հնչեցնում Հայաստանի վերածնության, համայնական դաշտերի իր սրտաբուխ երգը։*

Այս անապատ երկրում բարձրանում է հիմա
Աշխատանքի, կամքի հերոսական մի կյանք:

*Այդ հերոսական կյանքի գեղարվեստական նոր պատկերումն է «Տաղեր և խորհուրդներ» լիրիկա-խոհական երգերի շարքը։ Աշխատանքի, սիրո ու մահվան, «կյանքի հավիտենական» հարցերը Չարենցի գրչի տակ ստանում են ռեալիստական նոր ու համարձակ մեկնաբանություն՝ տոգորված սոցիալիստական կյանքի, նոր մարդու կենսահաստատ բարձր խոհերով ու զգացմունքներով։ Չարենցը հոգու ամբողջ ջերմությամբ, ֆանատիկորեն սիրում է նոր կյանքը, գեղեցիկ ապագան, ապագան կերտող խիզախ սերնդին։ «Տաղ՝ ձոնած բնությանը» նոր սերնդի, սոցիալիստական հզոր Հայրենիքի հաղթական երգն է։ Անցյալի մղձավանջից ազատագրված սովետական միլիոնավոր մարդիկ «հանուն հացի, լույսի, աշխատանքի վսեմ» գալիս են դեպի բնության «լուսավորող գիրկը», որպես տե՛ր ու տիրակա՛լ։*

Գալիս են, որ աստղերից և ընքացքից անգամ
Իրենց ստեղծարար ճաճճարը պատվաստեն,—
Օ՜, բնություն, օ՜, մայր:

*Չարենցը լի էր ստեղծագործական մեծ կարելիություններով. նրա կյանքի թելը կտրվեց իր տաղանդի ծաղկման շրջանում։ Բայց և այն, ինչ ստեղծեց ու որպես ժառանգություն ավանդեց գալիք սերունդներին, մեծ է իր գաղափարական, հասարակական խոր բովանդակությամբ ու պոետիկական արվեստի նորարարական բնույթով։*

*Մեծ է Չարենց-ստեղծագործողի էրուդիցիան, լայն ընդգրկման դիապազոնը։ Նա իր ստեղծագործության մեջ վարպետորեն օգտագործեց հայ բազմադարյան, ռուս մեծ գրականության լավագույն տրադիցիաները։ Նրա ստեղծագործության մեջ օրգանապես միահյուսվեց էմոցիոնալ հագեցվածությունն ու պատկերման էպիկական մեծ շունչը, խորապես սոցիալիստական, ինտերնացիոնալ բովանդակությունն ու խորապես ազգային ոճը։ Ատելով շտամպն ու տրորված ուղիները, անկիրք ու անարյուն, անսկզբունք ու քաղքենիական «արվեստը», Չարենցն իր ստեղծագործական ողջ կյանքում բռնեց նորարարության դժվարին ուղին, ստեղծեց ռևոլյուցիոն մեծ պաթոսով համակված իր պոեմների, լեգենդների ու երգերի լավագույն նմուշները, սոցիալիստական ռեալիզմի վարպետության կլասիկ նմուշները, առաջ բերեց գրական մի ամբողջ շարժում, ստեղծեց չարենցյան դպրոց և դարձավ սովետական մեծ էպոխայի մեծ պոետը։*

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ*)

**Ա. ՄԱՐՈՒԽՅԱՆ, Ս. ԽՐԻՄԼՅԱՆ, Ա. ԵՐԻՑՅԱՆ, Օ. ԿԱՐՃԻԿՅԱՆ**

*Գյուղատնտեսության զարգացման հարցերը մշակելիս խնդիր էր տրված՝ գյուղատնտեսության գոյություն ունեցող վիճակի վերլուծության և ռեսպուբլիկայի բնական-տնտեսական պայմաններում եղած պոտենցիալ հնարավորությունների հայտաբերման և նրանց առավել ռացիոնալ օգտագործման հիման վրա պարզել գյուղատնտեսական արտադրության տեղաբաշխման և մասնագիտացման հեռանկարները։ Այս խնդրի լուծումը պետք է ապահովի Հայկական ՍՍՌ-ի ավելի արդյունավետ մասնակցությունը ամբողջ Սովետական Միությունում սպառման առարկաների առատություն ստեղծելու և ռեսպուբլիկայի բնակչության ու արդյունաբերության պահանջները բավարարելու գործում, արտադրանքի յուրաքանչյուր միավորի վրա հնարավորին չափ քիչ աշխատանք և նյութական միջոցներ ծախսելով։*

*Կարևորագույն խնդիր է, որ ռեսպուբլիկայի բոլոր գոտիներում և շրջաններում ստեղծվի բարձր եկամտաբեր տնտեսություն, որը կարողանա մեծ չափով ապահովել կոլտնտեսային գյուղացիության նյութական և կուլտուրական կյանքի մակարդակի հետագա բարձրացումը։*

*Սոցիալիստական գյուղատնտեսության բնորոշ առանձնահատկությունը նրա կոմպլեքսային զարգացումն է, որն ապահովում է բնական և տնտեսական ռեսուրսների ավելի լրիվ օգտագործումը։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը, դրան համապատասխան, ունի բազմաճյուղ մասնագիտացում, որ առանձնապես բնորոշ է այն շրջանների համար, որոնք ունեն բնական և տրնտեսական պայմանների շեշտակի արտահայտված ուղղաձիգ գոտայնություն։ Հայկական ՍՍՌ-ում, որտեղ ուղղաձիգ գոտայնության պայմաններն արտահայտված են չափազանց ռելյեֆ կերպով, գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացվում է սովորաբար մեկ-երկու գլխավոր և մի քանի օժանդակ ուղղություններով, որոնք զուգորդվում են արտադրանքի հիմնական տեսակների արտադրության հետ և ապահովում աշխատանքի ու արտադրական միջցների ըստ հնարավորին լրիվ օգտագործումը։ Ավելին, Հայկական ՍՍՌ-ում ոչ միայն առանձին ենթագոտիների և շրջանների, այլև հաճախ առանձին կոլտնտեսությունների հողային տարածությունները տարբեր բնական ու տրնտեսական պայմաններում են գտնվում։ Այս կապակցությամբ անհրաժեշտ է ամբողջ տնտեսության մասնագիտացման ժամանակ հաշվի առնել առանձին միկրոգոտիների պայմանները և ապահովել դրանց ռացիոնալ օգտագործումը՝*

---

* *Տպագրվում է առաջարկությունների կարգով։*

*հանրային աշխատանքի արտադրողականությունն առավելագույն չափով բարձրացնելու համար։*

*Հաշվի առնելով գյուղատնտեսության զարգացման հեռանկարները՝ ռեսպուբլիկան բաժանվում է 9 գոտիների. խաղողա-բամբակագործական գոտի՝ զարգացած պտղաբուծությամբ, բանջարաբուծությամբ և շերամապահությամբ, որ ընդգրկում է Արարատյան հարթավայրը. խաղողա-պտղաբուծական գոտի՝ զարգացած ծխախոտագործությամբ և անասնաբուծությամբ, որ ընդգրկում է Արարատյան հովտի նախալեռնային շրջանները. անասնաբուծական-հացահատիկային գոտի՝ մասամբ կարտոֆիլագործությամբ, ծխախոտագործությամբ և պտղաբուծությամբ, ընդգրկում է Արարատյան հովտի լեռնային շրջանները. անասնաբուծական-հացահատիկային գոտի՝ զարգացած կարտոֆիլագործությամբ և մասամբ ծխախոտագործությամբ ու պտղաբուծությամբ, ընդգրկում է Սևանի ավազանը. հացահատիկային-անասնաբուծական գոտի՝ զարգացած ճակնդեղացանությամբ, ընդգրկում է Շիրակը. կաթնաանասնաբուծական գոտի՝ զարգացած կարտոֆիլաբուծությամբ և մասամբ պտղաբուծությամբ, ընդգրկում է Լոռի-Փամբակը. ծխախոտագործական և խաղողա-պտղաբուծական գոտի՝ զարգացած անասնաբուծությամբ և շերամապահությամբ, ընդգրկում է հյուսիս-արևելյան անտառային գոտին. հարավային հացահատիկային-անասնաբուծական գոտի՝ ոչխարաբուծության գերակշռությամբ, զարգացած խաղողագործությամբ և մասամբ ծխախոտագործությամբ և պտղաբուծությամբ, ընդգրկում է Դարալագյազը. հարավային անասնաբուծական-հացահատիկային գոտի՝ զարգացած խաղողագործությամբ, պտղաբուծությամբ, շերամապահությամբ և մասամբ ծխախոտագործությամբ, ընդգրկում է Զանգեզուրը։*

*Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության գոտիների սահմանման և նրանց արտադրական բնութագրման հարցերը մշակվել են Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի Տնտեսագիտական ինստիտուտի կողմից դեռ 1955 թվականին։ Հետագայում, 1956 թվականին, որոշված գոտիները լրացուցիչ հիմնավորում ստացան ինստիտուտի և Գյուղատնտեսության մինիստրության այդ հարցի շուրջը կատարած համատեղ աշխատանքում։ ՀՍՍՌ Մինիստրների Սովետի կողմից կազմակերպված զոնայական հանձնաժողովները Ռեսպուբլիկայի 6-րդ հնգամյակի գյուղատնտեսության տեղաբաշխման և մասնագիտացման հարցերը մշակում են ըստ այդ գոտիների։*

*Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացումը, ելնելով գլխավոր պլանի ժամկետից, տրված է առաջիկա 2—3 հնգամյակների, մոտավորապես 1970 թվականի համար։ Որպես միջանկյալ էտապ տրվում է արտադրության մակարդակը նաև 1960 թվականին։*

***

*Ներկայումս ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրությունը կենտրոնացված է 49 սովետական տնտեսություններում և 864 կոլտնտեսություններում, որոնց սպասարկում են 52 մեքենա-տրակտորային կայաններ։*

*Գյուղի սոցիալիստական վերակառուցման, ոռոգման գործի զարգացման, գյուղատնտեսության արտադրության մեքենայացման և առաջավոր ագրոտեխնիկայի արմատավորման շնորհիվ գյուղատնտեսական ինտենսիվ շրջանառության մեջ դրվեցին ավելի քան 200 հազար հեկտար նոր հողեր, ընդարձակվեցին բազմամյա տունկերի տարածությունները և դաշտային կուլտուրաների ցանքատարածությունները, բարձրացավ հողագործության կուլտուրան։*





*Ցանքատարածությունները 1913 թվականի համեմատությամբ 1956 թ. ավելացան 40 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 11 տոկոսով։ Զգալիորեն փոխվեց ցանքատարածությունների ստրուկտուրան։ 1956 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության տեսակարար կշիռը, չնայած 1913 թվականի համեմատությամբ ունեցած բացարձակ աճին, բավականին կրճատվեց, որը կատարվեց հիմնականում կերային կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակման հաշվին։ Դա մի անհրաժեշտ միջոցառում էր՝ անասնաբուծությունը կերի կայուն բազայով ապահովելու համար։*

*Կարտոֆիլի և բոստանա-բանջարանոցային կուլտուրաների ցանքատարածությունները 1913 թվականի համեմատությամբ գրեթե երեք անգամ ընդարձակվեցին։*

*Տեխնիկական կուլտուրաներից նախառևոլյուցիոն Հայաստանում մեծ չափով տարածված էր բամբակը։ Սովետական շրջանում սկսեցին մշակել նաև ծխախոտ, շաքարի ճակնդեղ և խորդենի։*

*Զգալիորեն ընդարձակվեցին խաղողի և պտղատու այգիները։ 1913 թվականի համեմատությամբ խաղողի այգիներն ընդարձակվեցին երկու անգամ, պտղատու այգիները՝ չորս անգամ։*

*1955 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունն ավելացավ 40 տոկոսով, կարտոֆիլինը՝ 3,5 անգամ, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ 2,6 անգամ, բամբակինը՝ 2,7 անգամ, խաղողինն ու պտուղներինը՝ 50 տոկոսով։*

*Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունները նշանակալի հաջողություններ են ձեռք բերել նաև հանրային անասնաբուծության զարգացման ասպարեզում։ Հանրային անասունների գլխաքանակը, առ 1-ը հունվարի 1957 թվականի, 1940 թվականի համեմատությամբ ավելացել է հետևյալ չափերով. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 22,7 տոկոսով, այդ թվում կովերինը՝ ավելի քան երկու անգամ, մանր եղջերավոր անասուններինը՝ 82,1 տոկոսով, խոզերինը՝ 64 տոկոսով, թռչուններինը՝ 2,3 անգամ, մեղվաընտանիքներինը՝ 1,7 անգամ։*

*Անբաժանելի ֆոնդերը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ ավելացան 4 անգամ։*

*ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներից հետո, Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության զարգացման գործում որոշ տեղաշարժեր կատարվեցին։ 1953 թվականի համեմատությամբ 12-ից մինչև 15 տոկոսով ավելացավ շաքարի ճակնդեղի, ծխախոտի ու հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։ Աճեց անասունների գլխաքանակը։ Ավելի քան 35 տոկոսով բարձրացավ կովերի կաթնատվությունը։ 1956 թվականին կոլտնտեսությունների համախառն արտադրանքը, 1940 թվականի համեմատությամբ ավելացավ 35 տոկոսով. ապրանքային արտադրանքը՝ 40 տոկոսով։ Գյուղատնտեսության ապրանքայնությունը 1940 թվականի 52 տոկոսի դիմաց կազմեց 57 տոկոս։*

*Կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացման և կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման գործում ձեռք բերված նվաճումների հետ մեկտեղ պետք է նշել, որ Հայաստանում դեռևս ոչ լրիվ չափով են օգտագործվում այն հնարավորությունները, որ ընձեռում*

է կոլտնտեսային կարգը։ Գյուղատնտեսական արտադրանքը դանդաղ է աճում, որի հետևանքով անհամապատասխանություն է ստեղծվում մի կողմից խոշոր սոցիալիստական արդյունաբերության, քաղաքային բնակչության աճման տեմպերի, նրա պահանջմունքների և, մյուս կողմից, գյուղատնտեսական արտադրության արդի մակարդակի միջև։ Այսպես, Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956 թվականին, 1940 թվականի համեմատությամբ աճեց 5 անգամ, քաղաքային բնակչության թիվը 1939 թվականի համեմատությամբ կրկնապատկվեց, իսկ գյուղատնտեսության արտադրանքն ավելացավ մոտավորապես 35 տոկոսով։

Գյուղատնտեսության նման վիճակի հետևանքով ռեսպուբլիկայի բնակչությունը սեփական արտադրության մթերքներով, ըստ գիտականորեն հիմնավորված նորմաների, ապահովվում է հետևյալ չափով. հաց՝ 51 տոկոսով, կարտոֆիլ՝ 85 տոկոսով, բանջարեղեն՝ 54 տոկոսով, կաթ և կաթնամթերքներ՝ 25 տոկոսով և միս՝ 22 տոկոսով։

Գյուղատնտեսության ետ մնալը հիմնականում արդյունք է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքի խախտման, գյուղատնտեսության պլանավորման և տեղաբաշխման ու մասնագիտացման գործում թույլ տրված սխալների։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության պլանավորման, տեղաբաշխման և մասնագիտացման գործում թույլ տրված սխալները արտահայտվեցին հետևյալում. 1950 թվականին ցորենի արտադրությունն ավելացնելու որոշման կապակցությամբ ռեսպուբլիկայի մի շարք շրջաններում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները ընդարձակվեցին մարգագետինների և արոտավայրերի հերկման հաշվին, որը շատ տեղերում հանգեցրեց հողի էրոզայի պրոցեսների ուժեղացման։ Բամբակի ցանքերը տեղադրվել էին Արարատյան հարթավայրում՝ համեմատաբար մեծ տարածությունների վրա, խախտելով ճիշտ ցանքաշրջանառությունները։ Մինչև վերջին ժամանակներս սխալ պլանավորման հետևանքով մի շարք շրջաններ ծանրաբեռնված էին ծխախոտի ցանքերով։ Նախալեռնային չորային շրջաններում դաշտային կուլտուրաները պլանավորելիս անհիմն կերպով ընդարձակվել էին այդ շրջանների պայմաններում սակավ բերքատու խոտաբույսերի ցանքատարածությունները՝ հացահատիկային կուլտուրաների ցանքերի կրճատման հաշվին։ Անասնաբուծության կազմակերպման բնագավառում մի շարք շրջանների տրվում էին գլխաքանակի ավելացման անհիմն պլաններ։ Դրա հետևանքով անասուններով ամենից ավելի ծանրաբեռնված էին հենց այն գոտիները, որոնք համեմատաբար քիչ են ապահովված բնական կերային տարածություններով։

Գյուղատնտեսության վերաբերյալ պարտիայի և կառավարության ընդունած որոշումները վերջին երկու-երեք տարում բարձրացնում են կոլտնտեսային գյուղացիության նյութական շահագրգռվածությունը և շտկում գյուղատընտեսության պլանավորման բնագավառում թույլ տրված սխալները։

Ռեսպուբլիկայի ներկա գյուղատնտեսական արտադրության և նրա մեջ առանձին գոտիների դերի մասին բավական պատկերացում են տալիս կոլտընտեսային արտադրանքի ինքնարժեքի վերաբերյալ եղած տվյալները։

Կոլտնտեսային արտադրանքի գլխավոր տեսակների ինքնարժեքը, ըստ առանձին ՄՏ կայանների սպասարկած կոլտնտեսությունների, որոնք տիպական են տվյալ գյուղատնտեսական գոտու համար, տատանվում է հետևյալ



սահմաններում. խաղող և պտուղ՝ ցենտները 78-ից մինչև 190 ռուբլի, ծխախոտ՝ 402-ից մինչև 690 ռուբլի, բամբակ՝ 230 ռուբլի, բանջարա-բոստանային կուլտուրաներ՝ 25-ից մինչև 58 ռուբլի, հացահատիկ՝ 49-ից մինչև 118 ռուբլի, կարտոֆիլ՝ 21-ից մինչև 57 ռուբլի։ Առավել բարեհաջող ցուցանիշներ են տալիս համապատասխան մասնագիտացված գոտիները, այն է՝ խաղողի, պտուղների, բամբակի և բանջարա-բոստանային կուլտուրաների գծով՝ Արարատյան հարթավայրը, ինտենսիվ բուսաբուծության այդ գոտին՝ իր արդյունաբերական խաղողագործության, բամբակագործության ենթաշրջաններով և քաղաքամերձ բանջարաբուծությամբ հանդերձ, ծխախոտի գծով՝ հյուսիս-արևելյան անտառային գոտին, կարտոֆիլի գծով՝ Սևանի ավազանի և Լոռի-Փամբակի գոտիները։ Հացահատիկի գծով ամենացածր ինքնարժեքը, նույնիսկ այնպիսի հացահատիկային գոտիների համեմատությամբ, ինչպիսիք են Շիրակը, Սևանի ավազանը և այլն, նույնպես տալիս է Արարատյան հարթավայրը, որտեղ հացահատիկի ցանքերը ոռոգվում են և համեմատաբար բարձր բերք է ստացվում։

Անասնաբուծական արտադրանքի ինքնարժեքը նույնպես դիֆերենցվում է ըստ գյուղատնտեսական մասնագիտացման գոտիների և տատանվում է հետևյալ սահմաններում. մեկ ցենտներ կաթ՝ 82-ից մինչև 134 ռուբլի, տավարի միս՝ 536-ից մինչև 894 ռուբլի, ոչխարի միս՝ 531-ից մինչև 984 ռուբլի, խոզի միս՝ 972-ից մինչև 1981 ռուբլի և բուրդ՝ 1611-ից մինչև 2349 ռուբլի։ Առավել էժան անասնաբուծական արտադրանք են տալիս խոշոր եղջերավոր անասունների գծով՝ Սևանի ավազանը, Արարատյան հարթավայրի լեռնային շրջանները և Լոռի-Փամբակը, մանր եղջերավոր անասունների գծով՝ Շիրակի գոտին, Արարատյան հարթավայրի լեռնային շրջանները և Սևանի ավազանը։

Ինքնարժեքի հիշյալ ցուցանիշները բերված են ըստ համապատասխան սովետական տնտեսությունների բանվորական օրվա վարձատրման օրինակելի նորմատիվների, ըստ ճյուղերի աշխօրերի ծախսումը վերածելով բանվորական օրվա՝ ըստ առանձին կոլտնտեսությունների և գոտիների համեմատական համադրելի տվյալներ ստանալու համար։ Եթե ինքնարժեքը որոշելու լինենք ըստ աշխօրի վարձատրության, ապա ամեն ցենտների ցուցանիշը լեռնային կոլտնեսությունների մեծ մասում ավելի ցածր կլինի։ Օրինակ, հացահատիկի գծով այդ ցուցանիշները իջնում են, կազմելով 40—60 ռուբլի, կարտոֆիլի գծով՝ 19—22 ռուբլի, կաթի գծով՝ 76—112 ռուբլի, տավարի մսի գծով՝ 490—778 ռուբլի, ոչխարի մսի գծով՝ 525—870 ռուբլի, խոզի մսի գծով՝ 869—1798 ռուբլի, բրդի գծով՝ 1241—1884 ռուբլի, իսկ Արարատյան հարթավայրում խիստ աճում են։ Այստեղ հացահատիկի ցենտների ինքնարժեքը բարձրանում է, 49-ից մինչև 78 ռուբլի, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 24-ից մինչև 52 ռուբլի, պտուղներինը և խաղողինը՝ 78-ից մինչև 156 ռուբլի, կաթինը՝ 82-ից մինչև 163 ռուբլի, տավարի մսինը՝ 784-ից մինչև 1564 ռուբլի, ոչխարի մսինը՝ 573-ից մինչև 1142 ռուբլի, բրդինը՝ 1453-ից մինչև 2898 ռուբլի և խոզի մսինը՝ 1056-ից մինչև 3896 ռուբլի։ Կամ ինքնարժեքի բարձրացումը միջին հաշվով կազմում է մոտ 2—2,5 անգամ։

Սա խոսում է այն մասին, որ լեռնային շրջաններում աշխօրի փաստական վարձատրությունները դեռևս զգալիորեն ետ են մնում սովետական տնտեսություններում տրվող աշխատանքի միջին վարձատրությունից, իսկ Արարատյան հարթավայրում ուսումնասիրված կոլտնտեսությունների մեծամասնությունում կոլտնտեսականները բացի իրենց աշխատանքի համար միջին հաշվով սովե-

տական տնտեսությունների դրույքներով ստացած վարձատրությունից, նույնքան էլ, իսկ երբեմն նույնիսկ ավելի շատ վարձատրություն են ստանում կոլտնտեսության զուտ եկամտի հաշվին։ Մյուս կողմից դա ցույց է տալիս, որ նույնիսկ Արարատյան հարթավայրի ինտենսիվ բուսաբուծության շրջաններում գյուղատնտեսական արտադրությունը դեռևս հեռու է այն մակարդակից, երբ ստացվող արտադրանքի խսկական առատության շնորհիվ նրա միավորի ինքնարժեքը իջնում է, չնայած աշխօրերի բարձր վարձատրմանը։

Արարատյան հարթավայրի որոշ կոլտնտեսություններում, հատկապես քաղաքամերձ կոլտնտեսություններում, որտեղ համեմատաբար ուժեղ կերպով զարգացած է քաղաքամերձ բանջարաբուծությունը, կաթնատնտեսությունը և պտղաբուծությունն ու խաղողագործությունը, կոլտնտեսությունների զուտ եկամուտների մեջ մեծ դեր է խաղում որպես 1-ին և 2-րդ դիֆերենցիալ ռենտա ստացվող լրացուցիչ եկամուտը, որը զգալիորեն բարձրացնում է աշխօրի արժեքը։ Այդ կոլտնտեսություններում աշխօրի արժեքը երկու, երեք և նույնիսկ ավելի անգամ գերազանցում է սովետական տնտեսությունների բանվորների աշխատանքի միջին վարձատրության մակարդակը։

Կոլտնտեսային արտադրանքի ինքնարժեքի տվյալները ցույց են տալիս, որ արտադրանքի որոշ տեսակների գները դեռևս չեն համապատասխանում արտադրվող մթերքների արժեքին։

***

Գյուղատնտեսության տեղաբաշխման և մասնագիտացման հարցերը մշակելիս գյուղատնտեսության ճյուղերի զարգացման նշված մակարդակները սահմանվեցին, ելնելով մի կողմից գյուղատնտեսության այն առաջատար ճյուղերի ըստ ամենայնի զարգացումից, որոնք որոշում են ռեսպուբլիկայի միութենական մասնագիտացումը, մյուս կողմից՝ բնակչության սննդամթերքների պահանջն ըստ հնարավորին բավարարելու անհրաժեշտությունից։ Սննդամթերքների պահանջի հաշվարկը կատարված է սպառման գիտականորեն հիմնավորված նորմաների հիման վրա, ելնելով հոդվածում ընդունված ժամկետների համար հաշված բնակչության թվից։

Տեղաբաշխման և մասնագիտացման աշխատանքի հիմքում դրված էր այն ելակետը, որ աշխատանքի բալանսը չպետք է լիմիտավորի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացումը, քանի որ ելնելով ամբողջ ՍՍՌՄ-ում սննդամթերքների առատություն ստեղծելու խնդրից, պետք է լրիվին օգտագործել այն նպաստավոր պայմանները, որ ունի Հայկական ՍՍՌ հարավային շրջանի հողագործությունը։

Սակայն գյուղատնտեսության աշխատանքի բալանսի գծով կատարված հաշվարկները ցույց տվին, որ մեր Հայկական Ռեսպուբլիկայի բնակչության բնական աճը հաշվարկային ժամկետում ոչ միայն լրիվին կբավարարի աշխատանքային ռեսուրսների ասպարեզում գյուղատնտեսության հարաճուն պահանջմունքները, այլև գյուղատնտեսությունը հաշվարկային ժամանակաշրջանում գյուղատնտեսական արտադրող բնակչության թվի գրեթե ամբողջ աճը կարող է տրամադրել արդյունաբերությանը և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներին։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճը տեղի է ունենալու աշխատանքի արտադրողականության համապատասխան աճի հաշվին։ Իր հերթին աշխատանքի արտադրողականության աճը տեղի է ունենալու, մեկ կողմից, տարածության և գլխաքանակի միավորի վրա աշխատանքի ծախսումների նվազման հաշվին, որի հաշվարկը կատարված է բավական զգուշությամբ, հաշվի առնելով գյուղատնտեսության արտադրական պրոցեսների մեքենայացման և էլեկտրիֆիկացման տարբեր մակարդակը տարբեր գոտիներում, իսկ մյուս կողմից՝ բերքատվության և մթերատվության աճման հաշվին, ելնելով առաջավոր տնտեսություններում արդեն իսկ ձեռք բերված մակարդակից։



Գյուղատնտեսությունը բանվորական ուժով ապահովելու համար կատարված բալանսային հաշվարկների ընթացքում աշխատանքի ծախսման նորմատիվներն ընդունվել են գյուղատնտեսության մեքենայացման երեք մակարդակներին համապատասխան, ըստ ընդունված ժամկետների։

Արդի վիճակը, որ հաշվարկված է 1955 թվականի տվյալներով, բնորոշվում է մեքենայացման մի այնպիսի մակարդակով, երբ տրակտորային քարշով է կատարվում այնպիսի աշխատանքների մեծ մասը, ինչպիսիք են հերկը, հողի նախացանքային մշակության մյուս տեսակները, հացահատիկային և մի քանի այլ կուլտուրաների ցանքն ու բերքահավաքը։ Թույլ են մեքենայացված ցանքերի մշակման, հացահատիկի զտման, չորացման ու բեռնման, ինչպես նաև դաշտերի պարարտացման աշխատանքները. դեռ ավելին, շատ բանջարանոցային կուլտուրաների և մի քանի տեխնիկական կուլտուրաների մշակման ու բերքահավաքի աշխատանքներում գրեթե բացակայում է մեքենայացումը։ Միջին հաշվով ցանքատարածությունների և տնկերի յուրաքանչյուր հեկտարին ընկնում է 2—2,5 հեկտար տրակտորային աշխատանք՝ պայմանական վարի վերածած։ Դա կազմում է բոլոր այն աշխատանքների մոտ 40 տոկոսը, որոնք արդեն այս կամ այն չափով մեքենայացված են կամ հնարավոր է մեքենայացնել։

Մեքենայացման երկրորդ մակարդակը, որ սկսվելու է մոտավորապես 1960—1962 թվականներին, նախատեսում է լրիվին մեքենայացնել այն աշխատանքները, որոնք ներկայումս այս կամ այն չափով մեքենայացված են և կարող են մեքենայացվել գոյություն ունեցող տիպի մեքենաների պայմաններում։ Այդ մակարդակի դեպքում մեքենայացվելու են հողի նախացանքային մշակության աշխատանքները, հացահատիկային կուլտուրաների ցանքի ու բերքահավաքի, ինչպես նաև տեխնիկական կուլտուրաների մեծ մասի և մասամբ բանջարանոցային կուլտուրաների ցանքի ու բերքահավաքի աշխատանքները։ Մեքենայացվելու են մի շարք աշխատանքներ նաև այգեգործության ասպարեզում։ Գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման այդպիսի մակարդակը կպահանջի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարի վրա կատարել մոտավորապես 5—6 հեկտար տրակտորային աշխատանք՝ պայմանական վարի հաշվով։

Մեքենայացման երրորդ մակարդակը, որ ընդունված է հաշվարկային թվի համար, ենթադրվում է լրիվին մեքենայացնել գյուղատնտեսական աշխատանքները, որի համար կպահանջվեն լեռնային պայմաններում գյուղատնտեսական աշխատանքներ կատարող նոր մեքենաներ։ Ենթադրվում է կատարելագործված նորագույն տեխնիկայի կիրառում՝ հեշտ կառավարվող կախովի մեքենաներով։ Ըստ հնարավորին լրիվ չափով կատարվելու է կոմպլեքսային մեքենայացում, ընդ որում մեքենայացնելով նաև օժանդակ արտա-

*գրական պրոցեսները՝ արտադրանքի մաքրումը, բեռնումը, բեռնաթափումը և տեղափոխումը։ Կոմպլեքսային մեքենայացման կարևորագույն գործոն է հանդիսանալու էլեկտրաէներգիայի լայն օգտագործումը գյուղատնտեսության արտադրական պրոցեսների կատարման համար։*

*Գյուղատնտեսության մեջ բանվորական ուժը հարկավոր կլինի մեքենաների ղեկավարման և սպասարկման համար, ինչպես նաև այնպիսի աշխատանքներում, որոնց համար պահանջվում է մարդու անմիջական մասնակցություն։ Այդ աշխատանքների թվին են պատկանում խաղողի, պտուղների և որոշ բանջարեղենի բերքի հավաքումը, տեսակավորումը և այլն։*

*Մեքենայացման այս մակարդակի պայմաններում կատարվող աշխատանքների ծավալը սահմանվել է ելնելով առաջավոր ագրոտեխնիկայից և անասնաբուծության արտադրական պրոցեսներից, առանձին կուլտուրաների աշխատատարությունից և անասունների գլխաքանակի սպասարկման համար պահանջվող աշխատողների միջին թվից՝ ըստ գյուղատնտեսական գոտիների։ Բանվորական ուժի պահանջի հաշվարկը կատարված է՝ հաշվի առնելով գյուղատնտեսական աշխատանքների տևողությունը, բուսաբուծության մեջ բեռնավորման անհամաչափ բաշխումը, տնտեսության կարիքները և այլն։*

*Գյուղատնտեսական արտադրության համար պահանջվող աշխատանքային ռեսուրսների՝ այդ կերպ կատարված հաշվարկը գյուղատնտեսական արտադրող բնակչության թիվը հաշվարկային ժամանակաշրջանում սահմանում է մոտավորապես 750—760 հազ. մարդ, իսկ գյուղական ամբողջ բնակչության թիվը՝ մոտ մեկ միլիոն շունչ։*

*Հաշվարկի համաձայն, որ կատարված է ելնելով բնակչության բազմաթիվ տարիների միջին աճից, 1970 թվականին բնակչության թիվը կազմելու է 2400 հազար մարդ։ Հետևաբար, քաղաքային բնակչությունը կազմելու է 1400 հազար մարդ։*

*Զգալի փոփոխություններ են կատարվելու գյուղատնտեսական արտադրող բնակչության թվի և աշխատանքային ռեսուրսների պահանջի մեջ՝ ըստ առանձին գոտիների և վարչական շրջանների։ Այդ հարցը լուծվելու է ներռեսպուբլիկական վերաբնակեցում կատարելու՝ լեռնային շրջանների բնակչության մի մասը ինտենսիվ գյուղատնտեսական արտադրության գոտիները տեղափոխելու միջոցով։ Աշխատանքային ռեսուրսների պահանջը խիստ աճելու է Արարատյան հարթավայրի նախալեռնային գոտում, նկատի ունենալով, որ այստեղ մեծ թափով զարկ է տրվելու խաղողագործության և այգեգործության զարգացմանը։ Արարատյան հարթավայրը իր հարաճուն պահանջները բավարարելու է իր բնակչության բնական աճի մոտավորապես 50 տոկոսի օգտագործման հաշվին։ Բոլոր մնացած գոտիները իրենց բնակչության ավելցուկը տալու են նախալեռնային գոտու գյուղատնտեսությանը և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին։*

***

*Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման հնարավորությունները նախ և առաջ կապված են հողային ռեսուրսներն առավել լրիվ օգտագործելու և ոռոգելի հողերի տեսակարար կշիռն է՛լ ավելի ավելացնելու հետ, քանի որ ոռոգումը Հայկական ՍՍՌ պայմաններում, չնայած երկրի բարձր լեռնային բնույթին, չորային կլիմայի և հողերի հարավային էքսպոզիցիայի գերակշռության պատճառով գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման կարևորագույն պայմանն է նույնիսկ լեռնային շրջանների մեծ մասում։*



*Գյուղատնտեսական շրջանառության մեջ դրվող հողատարածությունների ընդարձակման հնարավորությունները սահմանափակ են։ Այդ հնարավորությունները կայանում են նրանում, որ անհարմար հողերի մի մասը վեր է ածվում ոռոգվող վարելահողերի և այգիների։ Այդպիսի հողերի ընդհանուր տարածությունը կազմում է մոտ 67 հազար հեկտար։ Բացի դրանից, մարգագետնաարոտային տնտեսության գծով կատարվող ընդհանուր մելիորատիվ աշխատանքների կապակցությամբ պետական արոտավայրերի ֆոնդին կանցնի մոտավորապես 120 հազար հեկտար հող։*

*Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման գործում ոռոգման ցանցի լայնացման շնորհիվ մեծ դեր է խաղալու գոյություն ունեցող հողային տարածությունների տրանսֆորմացիան։ Հսկայական տարածություն են կազմում այն սակավարժեք հողերը, գլխավորապես ձմեռային և գարնան-աշնանային արոտավայրերը, որոնք ոռոգման դեպքում կարող են վերածվել արգավանդ հողերի՝ խաղողի և պտղի այգիների, տեխնիկական կուլտուրաների պլանտացիաների, բանջարանոցների և այլն։ Դրանց տարածությունը հասնում է մոտ 60 հազար հեկտարի։ Բացի դրանից, 3 հազար հեկտարով հյուսիսարևելյան գոտու անջրդի հողերի հաշվին ընդարձակվելու է բազմամյա տունկերի տարածությունը։ Այսպիսով, վարելահողերի և բազմամյա տունկերի տարածությունն ավելանալու է 130 հազար հեկտարով։*

*Աճելու է ռեսպուբլիկայի ոռոգելի հողերի ֆոնդը՝ 1955 թվականի 211 հազար հեկտարից հասնելով 383 հազար հեկտարի, ընդ որում Հայաստանի պայմաններում խիստ կարևոր ամառային ջրով ապահովված հողերի տարածությունը 127 հազար հեկտարից հասնելու է 324 հազար հեկտարի, այսինքն՝ ավելանալու է 2,5 անգամ։ Վեցերորդ հնգամյակում ոռոգելի հողերի ֆոնդը աճելու է մոտավորապես 20 տոկոսով։*

*Ոռոգելի հողերի ֆոնդի խոշոր աճ է նախատեսվում 1960 թվականից հետո՝ ռեսպուբլիկայի մեծ ու փոքր ջրային աղբյուրների հետ կապված իրրիգացիոն շինարարության ծրագրի կենսագործման կապակցությամբ. արդեն վերամշակված սխեմաների և ստուգված պլանների հիման վրա, որոնք ներկայումս մասամբ վերանայվում են, նպատակ ունենալով ոռոգման համար լայնորեն օգտագործել Արարատյան հարթավայրի և նախալեռնային շրջանների ստորերկրյա ջրերը։*

*Իրագործման համար ընդունված իրրիգացիոն օբյեկտների թվում կա երկու օբյեկտ՝ ոռոգման 30 հազար հեկտար ընդհանուր տարածությամբ (Թալինի ջրանցքի 2-րդ հերթը և Ախուրյանի ձախափնյա ջրանցքը), որոնց շինարարությունը կապված լինելով սահմանային ջրերի օգտագործման և հարևան պետության տերիտորիայում կատարվելիք աշխատանքների հետ, պահանջում է նախնական համաձայնության գալ հարևան պետության հետ։ Նկատի ունենալով հիշյալ օբյեկտների կարևորությունը, անհրաժեշտ է ժամանակին լուծել այդ հարցը, որպեսզի հաշվարկային ժամկետում ապահովվի դրանց շինարարության ավարտումը և ջրերի օգտագործումը։*

*Առանձին գյուղատնտեսական գոտիներից ոռոգումը առավել լայն զարգացում է ստանալու Արարատյան հովտի նախալեռնային գոտում։ Հենց այդ*

գոտում էլ կենտրոնացված են ձմեռային արոտավայրերի հիմնական տարածությունները, որոնք ոռոգման շնորհիվ վեր են ածվելու վարելահողերի և բազմամյա տնկերի պլանտացիաների։

Մյուս խոշոր միջոցառումը, որով պայմանավորված է գյուղատնտեսական արտադրության աճը, մարգագետինների և արոտավայրերի մելիորացիան է, որոնց դերը չափազանց մեծ է ռեսպուբլիկայի հողային ֆոնդում։ Մարգագետինները և արոտավայրերը գյուղատնտեսական հողատարածությունների մեջ ունեցած իրենց տեսակարար կշռով հասնում են գրեթե 60 տոկոսի, այդ թվում բնական խոտհարքները՝ 9 տոկոսի։

Արոտավայրերի մելիորացման միջոցառումները նախատեսում են ջրարբի դարձնել արոտավայրերը, կատարել արոտավայրերի մակերեսային և հիմնական բարելավում, արոտավայրերի մի մասը (50 հազար հեկտար) փոխադրել խոտհարքների, իսկ ոչ պիտանի հողերի մի մասը, ինչպես նշվեց վերևում, վերածել արոտավայրերի, որը մոտավոր հաշիվներով հնարավորություն կտա մոտ 2—2,5 անգամ բարձրացնելու օգտագործվող արոտավայրերի և բնական խոտհարքների բերքատվությունը։

Արոտավայրերի ոռոգման և մելիորացիայի հետ մեկտեղ՝ գյուղատնտեսական արտադրության աճման գործում մեծ դեր են խաղալու գյուղատնտեսական պրոցեսների հետագա մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը և հողագործությունն ու անասնաբուծությունը ռացիոնալ ձևով վարելու ուղղությամբ իրագործվող մի շարք միջոցառումները։ Աշխատանքի բալանսը կազմելիս, ինչպես նշվեց վերևում, սահմանվեցին մեքենայացման, էլեկտրիֆիկացման և տեխնոլոգիայի այն մակարդակները, որոնց հասնելու է գյուղատնտեսական արտադրությունը և արվեցին համապատասխան հաշվարկներ ըստ գոտիների։ Ամբողջ գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը, տնտեսության կազմակերպումը բարելավելու ուղղությամբ նշված միջոցառումների կենսագործման կապակցությամբ, աճելու է մոտավորապես 5—6 անգամ։

***

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության զարգացման և տեղաբաշխման ասպարեզում նշված հիմնական գծերը նախ և առաջ արտահայտվում են այն բանում, որ ռեսպուբլիկան այսուհետև ավելի մեծ չափով պետք է մասնագիտանա խաղողի և պտուղների արտադրության մեջ և դրան համապատասխան՝ գինու-կոնյակի և մրգա-բանջարային պահածոների արտադրության մեջ, դրանք լայնորեն արտահանելով միության մյուս ռեսպուբլիկաները։ Այդպիսի մասնագիտացում հնարավոր է դառնում շնորհիվ այն բանի, որ մեծ չափով զարգանալու է ոռոգումը խաղողի և պտուղների արտադրության գոտիներում։ Շեշտը դրվում է հիշյալ ճյուղերի զարգացման վրա, նկատի ունենալով այն հանգամանքը, որ մեր խաղողի սորտերը և հարավային պտուղները իրենց առանձնահատուկ որակով շատ պիտանի են տեսակավոր դեսերտի և սեղանի գինիներ ու կոնյակներ արտադրելու, ինչպես նաև պահածոներ պատրաստելու համար։ Ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության կողմից թողարկվող բոլոր արտադրանքները աչքի են ընկնում իրենց բարձր որակով և լայն պահանջ են գտնում միութենական քաղաքներում։



Հայաստանը խաղողի կուլտուրայի, ինչպես նաև ծիրանենու և դեղձենու մշակության հնամենի երկիր է։ Հայ գյուղացին դարեր ի վեր զբաղվելով այդ կուլտուրաներով՝ հսկայական փորձ ու սովորույթներ է ձեռք բերել դրանց մշակման ասպարեզում։ Բացի դրանից, պետք է ասել, որ այդ ճյուղերը ստորին գոտիների բուսաբուծության մյուս ինտենսիվ կուլտուրաների համեմատությամբ ավելի բարձր եկամուտ են տալիս։ Այս հանգամանքը նյութական ավելի բարձր շահագրգռվածություն է ստեղծում կոլտնտեսականների մեջ և նպաստում է պտղաբուծության ու խաղողագործության զարգացմանը։

Ժամանակակից տնտեսությունը խաղողի և պտղատու այգու յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստանում է 18—20 հազար ռուբլու եկամուտ, ընդ որում զարգացած խաղողագործության շրջաններում այդ գումարը հասնում է 25—30 հազարի և դրանից էլ բարձր։

Խաղողագործությունը ռեսպուբլիկայում առավելապես արդյունաբերական բնույթ է կրում։ Արարատյան հարթավայրի և Արարատյան հովտի նախալեռնային շրջանների այգիների տված խաղողի մեծ մասը բարձր շաքարայնության սորտերի խաղող է, որից պատրաստվում են դեսերտային թունդ գինիներ և կոնյակ։ Հյուսիս-արևելյան անտառային գոտում և Կոտայքի սարահարթի բարձրադիր նախալեռնային տեղերում մշակվում են խաղողի այնպիսի սորտեր, որոնք օգտագործվում են շամպայն գինիներ, սեղանի գինիներ և մասամբ կոնյակ պատրաստելու համար։ Զանգեզուրի և Դարալագյազի գոտում նույնպես կա առավելապես արդյունաբերական խաղողագործության զարգացման երկու օջախ՝ Արաքս գետի Մեղրու հովիտը և Արփա գետի հովիտը։ Ռեսպուբլիկայում համեմատաբար քիչ են խաղողի այն սորտերը, որոնք օգտագործվում են թարմ սպառման համար։ Ուստի խաղողագործության հիմնական՝ արդյունաբերական պրոֆիլի աճմանն ու զարգացմանը զուգընթաց անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել սեղանի խաղողի սորտերի արտադրությունն ընդլայնելու վրա՝ բնակչությանը թարմ խաղողով ապահովելու, ինչպես նաև սեղանի խաղողի արտահանման հնարավորություն ստեղծելու համար։

Խաղողի և պտղատու այգիների տարածությունը կարելի է ավելացնել մոտ 3 անգամ, 35,6 հազար հեկտարից հասցնելով 104,9 հազար հեկտարի։

Նկատի ունենալով, որ նախատեսված իրրիգացիոն շինարարությունը ավարտվելու է 1970 թվականին, ոռոգվող նոր հողերի մի մասի յուրացումը՝ այգիներ հիմնելու համար, կատարվելու է 1970 թվականից հետո։ Մինչև 1975 թվականը տնկերի համար լրացուցիչ յուրացվելու է մոտ 20 հազար հեկտար։

Մինչև 1970 թվականը գցվելու են 69 հազար հեկտար խաղողի և պտղատու նոր այգիներ կամ՝ 2 անգամ ավելի, քան գոյություն ունի ներկայումս։

Արդեն վեցերորդ հնգամյակի սահմաններում նախատեսվում է խաղողի այգիների տարածությունը հասցնել 30 հազար հեկտարի և պտղատու այգիներինը՝ 25 հազար հեկտարի, տնկելով 10 հազար հեկտար խաղողի և 8 հազար հեկտար պտղատու նոր այգիներ։ Միաժամանակ վեցերորդ հնգամյակում լիովին վերացվելու է խաղողի և պտղատու այգիների նոսրությունը, որը հավասարազոր է մոտավորապես 1,7 հազար հեկտար խաղողի և 1,2 հազար հեկտար պտղատու նոր այգիներ տնկելուն։

Բոլոր նոր այգիները տնկվելու են շարքային սիստեմով։ Ներկայումս ոչ միայն սովետական տնտեսություններում, այլև կոլտնտեսություններում բավական մեծ տարածություն են կազմում խաղողի այն այգիները, որոնք

տնկվել են շարքերով։ Գոյություն ունեցող թմբային սիստեմը մինչև հաշվարկային ժամկետի վերջը ամբողջովին փոխարկվելու է շպալերային, շարքային սիստեմի։ Խաղողի այգիները շպալերային սիստեմի փոխադրելը հնրավորություն կտա մեծ չափով բարձրացնելու խաղողի այգիների մշակության մեքենայացումը։

Նշված հեռանկարային ուրվագծերում ենթադրվում է, բացի այգիների, տնկարանների խոր վարից և պլանտաժից, տրակտորահարմար հողամասերում լիովին մեքենայացնել պտղատու և խաղողի այգիների միջշարքերի վարն ու կուլտիվացիան, այգիների փոշոտումն ու սրսկումը, ինչպես նաև խաղողի այգիների թաղումն ու բացումը։ Դա հնարավորություն կտա աշխատանքի արտադրողականությունն այդ ճյուղում բարձրացնելու 1,5—2 անգամ և, հաշվի առնելով բերքատվության աճը, 4 անգամ կրճատել արտադրանքի միավորի վրա աշխատուժի ծախսումը։

Խաղողի և պտղատու այգիների տեղաբաշխումը կատարելիս հատուկ ուշադրություն է դարձվում խաղողի սորտերի շրջանացմանը և պտուղների տեսակասորտային շրջանացմանը։

Խաղողի գծով նախատեսվում է այնպիսի սորտաշրջանացում, որը առավել լավ օգտագործելով գոտիների բնական պայմանները, լիովին ապահովի արդյունաբերական վերամշակման հիմնական ուղղությունները և թարմ սպառման կարիքները։

Գոտիներում պտուղների տեսակային և սորտային շրջանացումը կատարվում է ելնելով այն բանից, որ անհրաժեշտ է նախ՝ առավելագույն չափով զարգացնել հարավային պտղաբուծությունը, որը ռեսպուբլիկայի կոնսերվի արդյունաբերության բազան է, երկրորդ, բավարարել բնակչության թարմ մրգեղենի պահանջը, ինչպես նաև զուգորդել վաղահաս, միջահաս և ուշահաս տեսակներն ու սորտերը, որը առավել նպաստավոր պայմաններ կստեղծի արդյունաբերական ձեռնարկությունները նորմալ կերպով բեռնավորելու և բնակչությանը տևական ժամանակաշրջանում թարմ մրգերով ապահովելու համար՝ համապատասխան տեսակի ու սորտի մրգերի հասունացմանը զուգընթաց։

Ոռոգման զարգացումը հնարավորություն կտա պտղաբուծությունը զարգացնելու նաև լեռնային շրջաններում, համապատասխան գոտիներում նախատեսելով այգիների բավական տարածություններ այնպիսի մրգեր ստանալու համար, որոնք իրենց տեսակով առավել հարմար են տվյալ բնական պայմանների համար։

Նկատելիորեն փոխվում է առանձին գյուղատնտեսական գոտիների դերը խաղողագործության և պտղաբուծության զարգացման գործում։ Արարատյան հարթավայրը այժմ տալիս է ռեսպուբլիկայի խաղողի 75 և պտուղների 34 տոկոսը, Արարատյան հովտի նախալեռնային շրջանները՝ համապատասխանորեն 13 և 7 տոկոսը։ Պտուղների արտադրության գործում այժմ նշանակալի դեր է խաղում նաև Հյուսիս-արևելյան անտառային շրջանը, որը տալիս է պտուղների ընդհանուր արտադրանքի 25 տոկոսը։

(Շարունակելի)

---

# ՄԵՐ ՀԱՐԱՏԵՎ ԳՈՐԾԸ

ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Սովետական մարդկանց նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացմանը զուգընթաց բարձրանում է նրանց գնողունակությունը, զարգանում է ճաշակը, աճում է պահանջը ժողովրդական սպառման ապրանքների նկատմամբ։

Այս տարի Երևան քաղաքում նկատելիորեն աճեց ապրանքների վաճառքը։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության անցած ութ ամիսների պլանը գերակատարվեց։ Պետական ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալը առաջին կիսամյակի ընթացքում, 1956 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, ավելացավ 118 միլիոն ռուբլով, կամ 20,4 տոկոսով։ Հասարակական սննդի ապրանքաշրջանառությունն աճեց ավելի քան 5 տոկոսով։

Քաղաքի բնակչությանը պետական և կոոպերատիվ առևտրի գծով այս տարի վաճառվել են զգալիորեն ավելի շատ պարենային և ոչ-պարենային կարևորագույն ապրանքներ։ Այսպես, առաջին կիսամյակում, 1956 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, մի շարք ապրանքների վաճառքն ավելացել է. մսինը, երշիկեղենինը և այլ մսամթերքներինը՝ 20,6 տոկոսով, կենդանական յուղինը՝ 28,9, կաթինը և կաթնամթերքինը՝ 21,5, շաքարինը՝ 24,5, բրդյա գործվածքներինը՝ 14,1, մետաքսե գործվածքներինը՝ 32,1, բամբակե գործվածքներինը՝ 14,8, հագուստինը և սպիտակեղենինը՝ 26,8, տրիկոտաժեղենինը՝ 26,9, կոշվե կոշիկներինը՝ 14,3 տոկոսով։ Զգալիորեն ավելացել է նաև օճառի, կահույքի, ձեռքի ժամացույցների, կարի մեքենաների, տնային սառցարանների և լվացքի մեքենաների վաճառքը։

Սակայն, չնայած ժողովրդական սպառման ապրանքների վաճառքի այս աճին, բնակչության պահանջը մի շարք ապրանքների նկատմամբ դեռևս լրիվ չի բավարարվում։ Դա բացատրվում է ոչ միայն նրանով, որ որոշ ապրանքների արտադրությունն առայժմ ետ է մնում բնակչության աճած պահանջներից, այլև առևտրի վատ կազմակերպումով։

Հաշվի առնելով այն, որ Սովետական առևտուրը կոչված է հսկայական դեր խաղալու աշխատավորների կենսամակարդակի բարձրացման գործում, պարտիայի Երևանի քաղաքային Կոմիտեի պլենումը քննության առավ առևտրի կազմակերպումը և բնակչության մատակարարումը բարելավելու հարցը։ Պլենումի հրավիրմանը նախորդեց նախապատրաստական լայն աշխատանք։ Հասկանալի է, որ առևտրի վիճակի մասին չի կարելի դատել միայն զեկուցագրերով և ինֆորմացիաներով։ Նախքան հարցի ուսումնասիրությունը քաղաքային կոմիտեն խորհրդակցեց քաղկոմի պլենումի անդամների, առևտրա-

կան կազմակերպությունների ղեկավար աշխատողների հետ այն մասին, թե ինչպես ավելի նպատակահարմար է նախապատրաստել և քննարկել այդ հարցը։ Դրանից հետո քաղկոմի աշխատողները եղան խանութներում, ճաշարաններում, թեյարաններում, առևտրական բազաներում, հանգամանորեն ծանոթացան իրերի իսկական դրությանը, ուսումնասիրեցին առևտրի կազմակերպման ձևերն ու մեթոդները, զրույցներ ունեցան առևտրի թե՛ ղեկավար և թե՛ շարքային աշխատողների հետ։ Այնուհետև քաղաքային կոմիտեն հրավիրեց առևտրի ակտիվի և գնորդների համատեղ խորհրդակցություն, որտեղ դրվեց քաղաքային Սովետի գործկոմի առևտրի վարչության պետի զեկուցումը՝ առևտրի վիճակի մասին։ Պետք է ասել, որ խորհրդակցությունը շատ բանով օգնեց պլենումի նախապատրաստմանը․ և՛ առևտրի աշխատողները և՛ գնորդները արժեքավոր շատ առաջարկություններ արեցին քաղաքում առևտրի կազմակերպումը բարելավելու ուղղությամբ։

Երբ արդեն պարզ դարձավ իրական վիճակը և մեր խնդիրները առևտրի բնագավառում, հրավիրվեց քաղաքային կոմիտեի պլենումը, որին մասնակցում էին առևտրի ղեկավար աշխատողներ՝ տորգերի դիրեկտորներ, բազաների կառավարիչներ, խանութների, ճաշարանների վարիչներ, վաճառասեղանի աշխատողներ։ Պլենումին հրավիրված էին նաև Երևանի մերձակա գյուղական շրջանների պարտիական և սովետական ղեկավար աշխատողներ։

Նշելով պետական և կոոպերատիվ մանրածախ ապրանքաշրջանառության աճը, պլենումը միաժամանակ բացահայտեց առևտրի ու բնակչության մատակարարման գործում եղած լուրջ թերությունները։

Ի՞նչ թերություններ են դրանք․

Օր-օրին փոխվում, ընդարձակվում է Երևանը, արագ տեմպով աճում է նրա բնակչությունը, մինչդեռ առևտրական ցանցը ետ է մնում քաղաքի զարգացման տեմպերից․ ոչ միայն քիչ է խանութների, ճաշարանների, թեյարանների, առևտրական կետերի թիվը, այլև դրանք տեղաբաշխված են ո՛չ այնքան նպատակահարմար ձևով, որից ամենից շատ տուժում է քաղաքի ծայրամասերում ապրող բնակչությունը։ Սարի թաղում մինչև վերջերս էլ նավթի վաճառման կետ չկար։ Պուշկինի փողոցի վրա նույնիսկ հացի կրպակ գոյություն չունի։ Տնտեսական ապրանքների մասնագիտացված խանութները տեղավորված են միայն Շահումյան փողոցի վրա, այնպես, որ տնային գործածության ամենահասարակ առարկայի համար Արաբկիրից և Նոր Արեշից մարդիկ ստիպված պետք է գան հասնեն մինչև Շահումյան փողոցը։ Քաղաքում եղած գրեթե բոլոր ճաշարանները և ռեստորանները տեղավորված են Աբովյան փողոցի վրա։

Հաճախ ապրանքների բաշխումը մտածված ձևով չի կատարվում․ վատ է ուսումնասիրվում բնակչության պահանջը։ Խանութներում մանկական պուդրա դժվարությամբ է ճարվում, իսկ պահեստներում և բազաներում ինչքան ուզեք կա դրանից։ Շատ խանութներում չկա նույնիսկ կոճի թել, ասեղ, մատնոց, կոշիկի խողանակ։ Նորմա՞լ բան է սա։

Հասարակական սննդի ցանցի զարգացումը ևս ետ է մնում քաղաքի բնակչության պահանջներից․ քաղաքի ծայրամասերում, բանվորական ավաններում գրեթե չկան ճաշարաններ, թեյարաններ, սրճարաններ, խորտկարաններ։ Արդյունաբերական ձեռնարկությունների և ուսումնական հաստատությունների ճաշարաններում սպասարկումը վատ է կազմակերպված․ հաճա-



խորդները ճաշ, նախաճաշ և ընթրիք ստանալու համար շատ ժամանակ են կորցնում։ Հասարակական սննդի ձեռնարկություններում աշխատանքի պրոցեսների մեքենայացումը միանգամայն անբավարար է արմատավորվում, շատ են վերադիր ծախսերը, թանկ են ճաշերը, ցածր է նրանց որակը։

Խիստ ետ է մնում կոոպերատիվ առևտուրը։ Կոոպառը կոպիտ կերպով խախտում է կոմիսիոն առևտրի սկզբունքները․ փոխանակ անմիջապես տեղերում՝ սովետական տնտեսություններում, կոլտնտեսություններում մթերքներ գնելու և քաղաքում վաճառելու, կոոպառի աշխատողները մթերքները կոլտնտեսականներից գնում են հենց քաղաքի շուկաներում և ապա վաճառում։ Դրա հետևանքով կոոպառի խանութներում մթերքների գները մեծ մասամբ նույնն են, ինչ կոլտնտեսային շուկաներում։ Կոոպերատիվ առևտրի անբավարար կազմակերպման համար մեղավոր է առաջին հերթին Հայկոոպը, որը միանգամայն վատ է կատարում իր վրա դրած պարտականությունները։ Հայկոոպի շրջանային մթերման գրասենյակները հսկողության բացակայության հետևանքով ձախողում են պետական գնումների և մթերումների գործը։ Դա արտահայտվում է հենց մրգի և բանջարեղենի վաճառքի կազմակերպման գործում։ Ճիշտ է, այս տարի անցյալ տարվա համեմատությամբ ավելի շատ միրգ և բանջարեղեն է վաճառվում քաղաքի բնակչությանը, բայց, այնուամենայնիվ, վաճառքի է հանված զգալիորեն ավելի պակաս պոմիդոր, վարունգ, կարտոֆիլ, քան նախատեսված է։ Ի վերջո, Հայկոոպը չի կարողանում կազմակերպել մրգի և բանջարեղենի փոխադրման գործը, չնայած դրա համար կան բոլոր հնարավորությունները։ Ժամանակն է, որ Հայկոոպը իր աշխատանքը վերակառուցի բնակչության աճած պահանջներին համապատասխան և հաջողությամբ կատարի իր առջև դրված խնդիրները։

Բարվոք վիճակում չի գտնվում նաև կոլտնտեսային առևտուրը։ Արտաշատի, Էջմիածնի և Շահումյանի շրջանների մի շարք կոլտնտեսություններ Երևան քաղաքում խանութներ ունեն, բայց դրանք իրենց գոյությունը ոչ մի բանով չեն արդարացնում։ Ինչի՞ է նման, օրինակ, Արտաշատի շրջանի Ոստան գյուղի «Սմիչկա» կոլտնտեսության՝ Նալբանդյան փողոցի վրա գտնվող խանութը․ այս օրերին այստեղ թարմ համարյա ոչինչ չկա։ Այդ խանութը բացառություն չի կազմում․ դրությունը նույնն է Երևանում եղած գրեթե բոլոր կոլտնտեսային խանութներում։ Երևանցիները իրավունք ունեն մի այլ արդարացի պահանջ ևս ներկայացնելու քաղաքամերձ կոլտնտեսություններին․ վերջիններս շատ հաճախ մթերող օրգաններին հրամցնում են անորակ միրգ և բանջարեղեն․ պոմիդորը, օրինակ, չեն տեսակավորում, լավն ու վատը խառնում են իրար, լցնում արկղները և հանձնում գնման կետերին։ Հանդուրժելի՞ է միթե, որ պետգնման դիմաց կոլտնտեսությունները տալիս են դեռևս խակ, մանր ձմերուկ։

Առևտրական կազմակերպությունների աշխատանքում եղած ամենալուրջ թերությունը բնակչության սպասարկման ցածր կուլտուրան է։ Վաճառողները հոգատար և ուշադիր վերաբերմունք չունեն դեպի գնորդը․ ավելին, շատ վաճառողներ կոպիտ են վարվում հաճախորդների հետ, իսկ երբեմն էլ ուղղակի ոտնահարում են նրանց իրավունքները։ Խախտվում են սովետական առևտրի սկզբունքները, վաճառքի համար ստացված ապրանքն ու մթերքը ամբողջովին չեն հասնում գնորդին, և դա արդարացի դժգոհություն է առաջացնում։ Առևտրի ցանցում դեռևս մեծ չափերի են հասնում վատնում-յուրացումները,

թերակշռումները և թերաչափումները։ Դատական և դատախազական օրգաններն անբավարար պայքար են մղում այդ երևույթների դեմ, իսկ երբեմն էլ դատապարտելի ներողամտություն են հանդես բերում պետական միջոցները վատնողների, ժուլիկների և գողերի նկատմամբ։ Սա առաջին հերթին վերաբերում է Սպանդարյանի շրջանի 2-րդ, 3-րդ, Մոլոտովյան շրջանի 1-ին դատարաններին։

Պետք է նշել, որ արհմիութենական կազմակերպությունները խորամուխ չեն լինում առևտրի և հասարակական սննդի ձեռնարկությունների գործունեության մեջ, վատ են կազմակերպում հասարակական վերահսկողությունը։

Սովետական սպառողի նկատմամբ մեծ պարտք ունի մեր արդյունաբերությունը։ Արդյունաբերության աշխատողների կարևորագույն խնդիրն է՝ լավագույն ձևով բավարարել սովետական մարդու պահանջները, տալ բազմատեսակ և բարձրորակ ժողովրդական սպառման ապրանքներ։

Սակայն մեր արդյունաբերությունը բնակչության նկատմամբ իր պարտքը հարկ եղած չափով չի կատարում։ Մասնավորապես թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններն իրենց աշխատանքը չեն վերակառուցել բնակչության պահանջներին համապատասխան։ Նրանք լայն ասորտիմենտի բազմազան արտադրանք չեն տալիս։ Օրինակ, ներկայումս Երևանի խանութներում չկա տղամարդու 40 համարի կոշիկ։ Միշտ չէ, որ կարելի է հեշտությամբ ձեռք բերել երեխայի կոշիկներ։ Իսկ ինչո՞ւ, չէ՞ որ մենք լայն հնարավորություններ ունենք մեկընդմիշտ լուծելու երեխայի կոշիկների արտադրության հարցը։ Եվ ո՛չ միայն դա. կան շատ բաներ, որոնք հեշտությամբ կարելի է արտադրել տեղում, բայց հարկադրված ներմուծում ենք դրսից։ Ի՞նչ դժվար է, օրինակ, Երևանում կազմակերպել գնդասեղի, կնոպկայի, սանրի, սափրվելու սարքի արտադրությունը. նույնիսկ կոշիկի քուղ չի արտադրվում մեզ մոտ։ Վաղուց խոսվում է ռեսպուբլիկայում լվացքի մեքենաների արտադրություն կազմակերպելու մասին, բայց միայն խոսվում է. գործնական ոչ մի քայլ չի արվում այդ ուղղությամբ։

Ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները և պարտիական կազմակերպությունները հարկ եղած ուշադրություն չեն դարձնում արտադրանքի որակի վրա։ Այս տեսակետից լուրջ քննադատության է արժանի կոշիկի ֆաբրիկաների աշխատանքը. հաճախ դրանք սպառողին հրամցնում են միանգամայն անորակ և անճաշակ կոշիկներ։ Շատ ցածր է նաև պատրաստի հագուստեղենի, կահույքի և տնային գործածության առարկաների որակը. Երևանի էլեկտրալուսավորման արմատուրայի գործարանի արտադրած շատ էլեկտրական պլիտաներն ընդամենը երեք օրվա ուրախություն են պատճառում տնային տնտեսուհուն։ Իրենց գործարանի մարկայի պատվի համար չեն պայքարում նաև Մեխանիկական գործարանի աշխատողները։ Այս գործարանի արտադրած ալյումինե ամանեղենը շատ հաճախ չի վաճառվում անճաշակ և անորակ լինելու պատճառով։ Չկա հարկ եղած պատասխանատվություն արտադրանքի որակի համար, ձեռնարկությունների տնտեսական ղեկավարները և պարտիական կազմակերպությունները հաշտվում են այդ աննորմալ վիճակի հետ, ներողամիտ վերաբերմունք են հանդես բերում խոտանի և խոտանարարների նկատմամբ։

Պարտիայի շրջկոմները վճռական միջոցներ ձեռք չեն առնում արտադրանքի որակը բարձրացնելու և ասորտիմենտը բարելավելու համար, պատասխանատվության չեն կանչում նրանց, ովքեր խախտում են պետական կարգապահությունը, վատորակ արտադրանք են տալիս։



Ապրանքի որակի համար պակաս պատասխանատվություն չեն կրում առևտրական կազմակերպությունները. նրանք չպետք է թույլ տան, որ առևտրի ցանց թափանցի խոտանը, վաճառքի հանվի անորակ և անճաշակ արտադրանք։ Սակայն, ինչպես ցույց են տալիս փաստերը, առևտրական կազմակերպությունները միանգամայն անբավարար են ներգործում արդյունաբերական ձեռնարկությունների վրա՝ ապրանքների ասորտիմենտն ընդլայնելու և նրանց որակը բարելավելու գործում։ Ընդհակառակը, հաճախ վաճառքի են ընդունում ասորտիմենտին չհամապատասխանող և անորակ արտադրանք։ Ամենևին էլ ներելի չէ, որ առևտրական բազաները, որոնք կոչված են հանգամանորեն ստուգելու արդյունաբերական ձեռնարկություններից ստացված ապրանքի որակը, հաճախ իրենք են մատակարարում անորակ արտադրանք։

Մենք համառոտակի նշեցինք այն թերությունները, որոնք խանգարում են առևտրի և բնակչության սպասարկման հաջող կազմակերպմանը։ Այդ թերությունները չէին լինի, կամ ավելի պակաս կլինեին, եթե պարտիայի քաղկոմը, շրջկոմները, առևտրական ցանցի պարտիական կազմակերպությունները, ինչպես պետք է, զբաղվեին առևտրի կազմակերպման հարցերով։ Բանն այն է, որ պարտիական կազմակերպությունները չեն թափանցում առևտրի «մանրունքների» մեջ, այդ հարցով զբաղվում են ընդհանրապես այս կամ այն առիթով, երբ հարկ է լինում ազատել խանութի վարիչին կամ նշանակել նորը։ Միկոյանի պարտշրջկոմը վերջին մեկ և կես տարվա ընթացքում առևտրի կազմակերպման վերաբերյալ գրեթե ոչ մի ուշադրության արժանի հարց չի քննարկել, մինչդեռ այդ շրջանի առևտրական օբյեկտների աշխատանքում շատ լուրջ թերություններ կան։

Պարտիական կազմակերպություններն անհրաժեշտ միջոցներ ձեռք չեն առնում բարձրացնելու առևտրի բնագավառում աշխատող կոմունիստների դերն ու պատասխանատվությունը առևտրի վիճակի բարելավման համար։ Առևտրի ցանցի շատ կոմունիստներ իրենց վատ են դրսևորում աշխատանքում, իսկ պարտիական կազմակերպությունները ներողամիտ վերաբերմունք են հանդես բերում այդպիսիների նկատմամբ։ Ահա բազմաթիվ փաստերից մեկը. Գաստրոնոմի № 24 խանութի բաժնի վարիչ պարտանդամ Մ. Մելքոնյանը սովետական առևտրի սկզբունքները կոպիտ կերպով խախտելու համար մի շարք անգամ ենթարկվել է վարչական և կարգապահական տույժի, իջեցվել ցածր աշխատանքի, այս բոլորից հետո սկզբնական պարտիական կազմակերպությունը բավարարվել է նրան միայն նկատողություն հայտարարելով։

Պարտիայի շրջկոմները, առևտրի ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները միանգամայն անբավարար են զբաղվում առևտրի կադրերի տեղաբաշխման և դաստիարակության հարցերով. շարունակվում է այն դատապարտելի երևույթը, երբ գործը ձախողած, իրենց արատավորած աշխատողներն առևտրական մի կազմակերպությունից մյուսն են խցկվում, երբեմն նույնիսկ պարտիական կազմակերպությունների գիտությամբ և թողտվությամբ, ինչպես ընդունված է ասել՝ «մի դռնից դուրս են անում, մյուս դռնով ներս են խցկվում»։ Առևտրական ցանցի դռները մեկընդմիշտ պետք է փակել գողերի, ժուլիկների, խաբեբաների՝ բնակչության կենսական շահերի այդ թշնամիների առջև։

Պարտիայի քաղաքային կոմիտեի պլենումը ամենայն սրությամբ դրեց քաղաքում առևտուրը բարելավելու հարցը։ Առևտուրը և բնակչության սպասարկումը քաղաքական նշանակություն ունի։ Հարկավոր է իմանալ, որ առևտրի կազմակերպման գործում եղած խեղաթյուրումներն ու աղավաղումները բացասաբար են անդրադառնում մարդկանց տրամադրությունների վրա, արհեստական դժգոհություններ են առաջ բերում։ Հաշվի առնելով, որ ներկայումս քաղաքի պարտիական կազմակերպությունների առջև դրված խնդիրների մեջ առևտրի և բնակչության մատակարարման կազմակերպումը առանձնահատուկ նշանակություն ունի, քաղկոմի պլենումը այդ աշխատանքը բարելավելու նպատակով նշեց մի շարք միջոցառումներ։

Հարկավոր է այսուհետև ևս շարունակել առևտրի ցանցի ընդարձակումը։ Ուշադրություն դարձնել նրա ճիշտ տեղաբաշխմանն այն հաշվով, որ ապահովվի սպառողի սպասարկումը քաղաքի բոլոր վայրերում՝ թե՛ կենտրոնում և թե՛ ծայրամասերում։ Քաղաքային Սովետի գործկոմը մինչև տարվա վերջը պետք է ապահովի նախատեսված նոր խանութների և հասարակական սննդի օբյեկտների շահագործման հանձնելու գործը։

Առևտրական կազմակերպությունները պետք է լուրջ ուշադրություն դարձնեն ապրանքների բաշխման վրա, այն հաշվով, որ ամեն մի վայրում, յուրաքանչյուր խանութում լինեն բնակչության համար անհրաժեշտ ապրանքներ։

Լայն սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերական ձեռնարկությունները պետք է չեշտակիորեն ավելացնեն արտադրությունը, ընդլայնեն արտադրանքի ասորտիմենտը և հատկապես բարելավեն ապրանքների որակը։ Երևանի ձեռնարկությունները պետք է հասնեն այն բանին, որ նրանց արտադրած ժողովրդական սպառման ապրանքներն իրենց որակով չզիջեն սովետական և արտասահմանյան լավագույն նմուշներին։

Պարտիայի քաղկոմը, շրջկոմները, Ժողովրդական Տնտեսության Խորհուրդը, նրա համապատասխան վարչությունները վճռական միջոցներ պետք է ձեռք առնեն ժողովրդական սպառման ապրանքների որակը արմատապես բարելավելու համար։

Առևտրի աշխատողները հիմնավորապես պետք է ուսումնասիրեն գնորդի պահանջները, համառորեն հետապնդեն, որ արդյունաբերությունն ավելացնի այն տեսակի, ձևի, գույնի ապրանքների արտադրանքը, որոնց պահանջն ավելի մեծ է բնակչության մեջ։

Առևտրի աշխատողնրը պետք է ամուր, կենդանի կապ հաստատեն արտադրության հետ։ Անհրաժեշտ է սիստեմատիկաբար հրավիրել առևտրի և արդյունաբերության աշխատողների համատեղ խորհրդակցություններ, կազմակերպել հանդիպումներ, գնորդների կոնֆերանսներ և այլն։

Վաճառքի համար ստացված ապրանքների որակի նկատմամբ հսկողությունը առևտրի աշխատողների առաջնահերթ պարտականությունն է։ Հարկավոր է լրջորեն բարելավել առևտրական բազաների աշխատանքը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը վաճառքի համար ստացվող ապրանքների ասորտիմենտի և որակի համար։

Պարտիական և արհմիութենական կազմակերպությունները վճռական պայքար պետք է մղեն առևտրի կանոնները խախտողների, թերաչափումների և թերակշռումների դեմ, հասնեն այն բանին, որ այն, ինչ ստացվում է խա-



նութում վաճառքի համար, մինչև վերջին գրամը, վերջին սանտիմետրը հասնի գնորդին։ Այնուհետև, անհրաժեշտ է բարձրացնել առևտրի կուլտուրան և բնակչության սպասարկման մակարդակը. վաճառասեղանի աշխատողը գնորդի հետ պետք է վարվի վերին աստիճանի քաղաքավարի և կոռեկտ, բոլոր գնորդների նկատմամբ լինի հավասարաչափ ուշադիր և հոգատար։

Հարկավոր է արմատապես բարելավել հասարակական սննդի գործը, լուրջ ուշադրություն դարձնել ճաշարաններում, բուֆետներում և ռեստորաններում մարդկանց սպասարկումը կազմակերպելուն, ինչպես պահանջում են ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը՝ հասնել ամեն տեսակ վերադիր ծախսերի նվազեցման, սննդի որակի բարելավման ու էժանացման, ճաշարաններում և ռեստորաններում պատրաստել զանազան ճաշատեսակների ավելի շատ կիսաֆաբրիկատներ՝ բնակչությանը վաճառելու համար, ավելի լրիվ օգտագործել տեղական ռեսուրսները, զարկ տալ օժանդակ տնտեսություններին։ Հարկավոր է ավելի վճռականորեն անցնել ինքնասպասարկմանը, որպեսզի սպառողներն իրենք ստանան պատվիրած ճաշերը, ավելի շատ ավտոմատներ արմատավորել մթերքներ բաց թողնելու համար։ Անհրաժեշտ է հասարակական սննդի գործը դնել այնպես, որ աշխատավորների լայն մասսաների համար ավելի ձեռնտու լինի ճաշարաններից և բուֆետներից օգտվելը, քան մթերքներ գնելն ու տանը կերակուր պատրաստելը։

Պահանջվում է լայնորեն ծավալել կոլտնտեսային և կոոպերատիվ առևտուրը, որը կոչված է մեծ դեր խաղալու բնակչության սպասարկման գործում։ Կոոպերատիվ առևտրի աշխատողները պետք է ամենայն պատասխանատվությամբ կատարեն իրենց վրա դրված պարտականությունները. հանդես բերեն ճկունություն և օպերատիվություն, սերտ կապ հաստատեն կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների հետ, ժամանակին գնեն և վաճառողին հանձնեն նրանց ունեցած ավելցուկ մթերքները։ Պետք է վերջ տալ կոոպերատիվ առևտրի սկզբունքների խախտումներին, այն բանին, երբ, իբրև կանոն կոոպառի աշխատողները ապրանքը շուկայում գնում են կոլտնտեսականներից և շուկայում էլ վաճառում։ Դա կոոպերատիվ-կոմիսիոն առևտրի կոպիտ աղավաղում է։

Արմատական բարելավում է պահանջում նաև կոլտնտեսային շուկաների աշխատանքը։ Շուկաների աշխատողները դեռևս չեն կարողացել հարկ եղած կարգ ու կանոն ստեղծել այնտեղ։ Շուկաներում ցածր է սպասարկման մակարդակը, լավ չի սանիտարական վիճակը. սպեկուլյատիվ տարրերը շարունակում են իրենց սև գործը կատարել այնտեղ։ Շուկաների ղեկավարները, միլիցիայի աշխատողները պարտավոր են և պետք է անխնա պայքար մղեն այդպիսիների դեմ։

Մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքի բնակչության նկատմամբ պարտք ունեն մանավորապես Արտաշատի, Վեդու, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Կոտայքի շրջանների կոլտնտեսությունները և կոլտնտեսականները։ Գործի շահը պահանջում է, որ նրանք իրենց ավելցուկ մթերքները, միրգը, բանջարեղենը վաճառքի հանեն քաղաքի կոլտնտեսային շուկաներում, հանձնեն կոոպառին։ Դա ձեռնտու է և՛ իրենց և՛ քաղաքի բնակչությանը։

Առևտրական կազմակերպությունները պետք է ժամանակին ստանան և իրացնեն բոլոր տեսակի ֆոնդերը, զարկ տան նախաձեռնությանը, գտնեն ապրանքների լրացուցիչ աղբյուրներ։

Քաղաքում արդեն հիմք է դրված խոզաբուծական և թռչնաբուծական տնտեսությունների։ Արդեն 1958 թվականին խոզաբուծական տնտեսությունը պետք է ունենա 4000 գլուխ խոզ և արտադրի 256 տոննա միս, հավաբուծական տնտեսությունը ունենալու է 40 հազար հավ և արտադրելու է 23 տոննա միս և 1.740 հազար ձու։ Պետք է ամրապնդել այդ տնտեսությունները, ստեղծել նորերը։ Մենք լայն հնարավորություններ ունենք քաղաքում ջերմոցային տնտեսություններ ստեղծելու համար և պետք է ձեռնամուխ լինենք այդ գործին։ Հարկավոր է լուրջ ուշադրություն դարձնել պահեստային տնտեսությանը, այն լավ նախապատրաստել ձմռանը։

Անհրաժեշտ է ուժեղացնել հասարակական հսկողությունը առևտրի նկատմամբ, այս գործում բարձրացնել արհմիությունների դերն ու պատասխանատվությունը։ Գնորդներն իրենց հերթին պետք է լայն աջակցություն ցույց տան պետական վերահսկիչներին։ Հարկավոր է բարձրացնել դատական և դատախազական օրգանների դերն ու պատասխանատվությունը առևտրի սկզբունքների խախտումների, չարաշահումների և թերաչափումների դեմ մղվող պայքարում։

Առևտրի կազմակերպումը և բնակչության սպասարկումը պետք է մշտապես գտնվի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Առևտրի ցանցի սկզբնական պարտիական կազմակերպությունները պարտավոր են՝ հմտորեն օգտագործելով ադմինիստրացիայի նկատմամբ վերահսկողության իրենց ֆունկցիան, հասնել սովետական առևտրի ծավալմանն ու լավ կազմակերպմանը։

Անհրաժեշտ է ամենօրյա պայքար մղել առևտրի կուլտուրան բարձրացնելու համար, բնակչությանը լավ սպասարկելու, խանութներում գնորդների նկատմամբ քաղաքավարի և ուշադիր վերաբերմունքի համար, այն բանի համար, որ յուրաքանչյուր քաղաքացի խանութից, ճաշարանից դուրս գա գոհ և ոչ թե սպասարկող անձնակազմի վարմունքից վրդովված։

Պարտիայի քաղկոմը, շրջկոմները պետք է լրջորեն զբաղվեն առևտրի կադրերի ընտրության հարցերով. առևտրի ցանցում պետք է աշխատեն մաքուր, ազնիվ խղճի տեր մարդիկ։ Պահանջվում է ամենօրյա համբերատար աշխատանք առևտրի բոլոր աշխատողների դաստիարակման, նրանց կուլտուրայի, կազմակերպվածության, կարգապահության և գիտակցության բարձրացման ուղղությամբ։

Առևտուրը մեր հարազատ գործն է և այն պետք է հաջողությամբ գլխավորեն մեր պարտիական կազմակերպությունները։

---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԻ ՄԱՍԻՆ

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան ընդունեց օրենք՝ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի կատարելագործելու մասին։

Այդ որոշումներն ամենից ավելի ջերմ ողջունեցին մեր արդյունաբերության մեջ աշխատող բանվորները, տնտեսվարներն ու ինժեներա-տեխնիկական անձնակազմը։ Թեզիսները քննարկելիս բազմաթիվ մասնագետներ ջերմորեն ընդունելով արդյունաբերության ու շինարարության կառավարումը կազմակերպելու այս նոր վարչաձևերը՝ խնդիր էին դնում նրա զարգացման հետագա էտապների մասին։

Մեր կարծիքով ևս կառավարման կազմակերպումն էլ ավելի ճկուն դարձնելու, նրա վերջնական նպատակին հասնելու համար նոր կազմակերպված ժողովրդական Տնտեսության Խորհուրդները, հենց այժմվանից պետք է ձեռնամուխ լինեն մի քանի կարևոր հարցերի լուծմանը։ Գերագույն Սովետի սեսիայում իր զեկուցման մեջ այս հարցի **անհրաժեշտության** վրա կանգ առավ նաև ընկ. Ն. Ս. Խրուշչովը։ «Թեզիսները քննարկելիս,— ասաց նա,— շատ ընկերներ նշում էին ձեռնարկությունների դիրեկտորների իրավունքներն ընդլայնելու, ձեռնարկությունների ու կառույցների համար սահմանվող պլանային ցուցանիշների թիվը կրճատելու անհրաժեշտությունը, տեխնիկական, ֆինանսական ու տնտեսական հարցերի լուծման ասպարեզում դիրեկտորներին ավելի շատ ինքնուրույնություն տալու անհրաժեշտությունը։ **Հարկավոր է լրջորեն մտածել այդ հարցերի մասին և գտնել նրանց առավել խելամիտ լուծումը»** (ընդգծումը մերն է — Ս. Թ.)։

Ինչպես տեսնում ենք, հարցը լրջորեն հասունացած է և նույնիսկ Գերագույն Սովետի սեսիան անդրադարձել է դրան։ Քանի որ այս հարցերն այդքան հրատապ են և նրանց լուծումը հսկայական դեր կխաղա արդյունաբերության կառավարման կազմակերպումն էլ ավելի ճկուն դարձնելու գործում, մենք կցանկանայինք քննարկման կարգով առաջ քաշել մի քանի հարցեր։

Ամենից առաջ գաղտնիք չէ, որ ներկայումս արդյունաբերության արտադրանքի, նրա տեխնիկական-էկոնոմիկական ցուցանիշների պլանավորման, աշխատանքային ցուցանիշների նորմավորման, համանուն առանձին ձեռնարկությունների աշխատանքների ընդհանրացման և մի շարք այլ գործերում գոյություն ունեն խոշոր թերություններ։ Չափազանցություն չի լինի ասել, որ այդ թերությունները արդյունաբերության զարգացման արդի պայմաններում արդեն արգելակում են նրա առաջընթացի թափը։ Այդ իսկ առումով էլ խոսենք

արդյունաբերության արտադրանքի և տեխնիկական-տնտեսական ցուցանիշների պլանավորման մասին։ Մենք գտնում ենք, որ այս գործը գտնվում է ոչ ամենևին հստակ վիճակում։

Ամենից առաջ ցուցանիշների պլանավորման մասին։ Այդ ցուցանիշների թիվը, մեր կարծիքով, չափից դուրս մեծ է։ Օրինակ՝ ձեռնարկության համար սահմանվում են՝ հում նյութերի ծախսման գործակիցներ, համարյա բոլոր օժանդակ նյութերի ծախսման գործակիցներ, էներգետիկայի բոլոր տեսակների (էլեկտրական էներգիա, ջուր, վառելիքներ, գոլորշի, ցուրտ և այլն), տեսակարար ծախսերը (ծախսը՝ արտադրանքի յուրաքանչյուր տոննայի համար), արտադրանքի անխուսափելի կորուստների ու բնական պակասորդների համապատասխան գործակիցները և այլն և այլն։

Դրանց հետ մեկտեղ և դրանց զուգահեռ պլանավորվում են այնպիսի ցուցանիշներ, ինչպիսիք են՝ ինքնարժեքի իջեցման առաջադրանքը և կուտակումների գումարը։

Մի՞թե հասկանալի չէ, որ կուտակումների գումարի պլանի առկայության պայմաններում միանգամայն ավելորդ է ինքնարժեքի իջեցման առաջադրանքի ցուցանիշը։ Մի՞թե պարզ չէ, որ կուտակումները ինքնարժեքի իջեցման ուղղակի թվաբանական հետևություններ են, հետևապես ի՞նչ կարիք կա պլանավորելու և՛ ինքնարժեքի իջեցման արտադրանքը, և՛ կուտակումների գումարը։

Այնուհետև, հայտնի է, որ կուտակումների գումարի պլանը կարելի կլինի կատարել միայն ու միմիայն ինքնարժեքի իջեցման ճանապարհով, իսկ վերջինիս կարելի կլինի հասնել՝ միայն ու միմիայն հում նյութերի, օժանդակ նյութերի, էներգետիկայի խնայողության, կորուստների, պակասորդների վերացման ուղիներով։ Այսպիսով, միանգամայն ավելորդ է վերը հիշված ցուցանիշների պլանավորումը։ Տեխնիկական-տնտեսական ցուցանիշների ցանկից ձեռնարկության համար, մեր կարծիքով, պետք է պլանավորել միայն ու միմիայն մեկ ցուցանիշ՝ կուտակումների գումարի ցուցանիշը։ Չպետք է վախենալ, թե կոնտրոլ թվերի բացակայությունը ձեռնարկություններում կարող է տեղիք տալ նյութերի ավելորդ ծախսի կամ գործակիցների գերածախսի։ Ճիշտ է, առանձին դեպքերում և առանձին նյութերի գծով ձեռնարկության ղեկավարությունը կարող է և նման բաներ թույլ տալ, սակայն կուտակումների պլանը կատարելու համար նա ստիպված կլինի մեկ ուրիշ տեղ անել ավելի խիստ խնայողություն։ Եվ արտադրության կառավարումը ճկուն դարձնելու խնդիրն էլ հենց այն է, որ ղեկավարությանը թույլ տրվի դիմել նման միջոցառումների։ Այս ապացուցելու համար բերենք մի շատ տիպիկ օրինակ։

Կալցիում-կարբիդի արտադրության մեջ վառարաններից կարբիդը բեռնաթափելու համար գործ են ածվում 18—20 միլիմետր տրամագիծ ունեցող երկաթե ձողեր։ Վառարանների արտադրողականությունն այնքան մեծ է, որքան բեռնաթափումների հաճախականությունն արագ է։ Ինքնին հասկանալի է, որ բեռնաթափման հաճախականությունը պահպանելու համար պահանջվում են ավելի մեծ քանակությամբ երկաթե ձողեր։ Չնայած արդյունաբերության ղեկավարությանն այս բանը քաջ հայտնի է, այնուամենայնիվ երկաթե ձողերի ծախսման համար սահմանված է խիստ սահմանափակ գործակից։ Ստացվում է, որ մի քանի տասնյակ կիլոգրամ երկաթի խնայողության համար ձեռնարկությունները պետք է կորցնեն հարյուրավոր տոննաներ դեֆիցիտային ու թանկարժեք կալցիում-կարբիդ։ Հասկանալի է, որ եթե թողնես ձեռնարկության ղեկավարությանը, նա չի գնա այդ ճանապարհով։ Եվ այդ միանգամայն բնական է։ Անհասկանալի է մնում այն, թե ինչո՞ւ արդյունաբերության տեխնիկական ղեկավարությունը, նույնպես գործին քաջ տեղյակ լինելով, չի վերացնում այդ արտառոց անհեթեթությունը։



Մի քանի խոսք ձեռնարկության արտադրանքների պլանավորման մեթոդների մասին։

Հայտնի է, որ ձեռնարկության համար հաջորդ տարվա արտադրանքի պետական պլանները կազմելիս պլանավորող մարմինները ելնում են նախորդ տարում ձեռնարկության ձեռք բերած և արդեն իրացված ցուցանիշներից, ըստ որում, որպես հիմք են վերցնում ամենահաջող ամիսների արտադրական ցուցանիշները։ Սա, իհարկե, միանգամայն բնական է և պլանավորման պրոգրեսիվ մեթոդ է։ Սովետական ձեռնարկության արտադրական պետական պլանները այլ կերպ կազմվել չեն կարող։ Բայց պլանավորման մեթոդն ունի, ինչպես ընդունված է ասել, նաև մեդալի հակառակ կողմը, մենք կասեինք՝ նույնիսկ վտանգավոր կողմը, որի վրա պլանավորող մարմինները համապատասխան ուշադրություն չեն դարձնում, աչքաթող են անում, իսկ այդ կարող է հասցնել անցանկալի հետևանքների, առանձին դեպքերում՝ այս կամ այն ձեռնարկության կոլեկտիվի մոբիլիզացիոն վիճակի թուլացմանը՝ սրանցից բխող բոլոր հետևություններով։

Բանն այն է, որ այս մեթոդով լավ աշխատող, լավագույն ցուցանիշների հասնող ձեռնարկությունը հաջորդ տարվա համար ստանում է ավելի լարված պլաններ, քան վատ աշխատող և վատ ցուցանիշների հասնող նույնանման ձեռնարկությունը։ Ստացվում է այնպես, որ վատ աշխատող ձեռնարկության կոլեկտիվն ու ղեկավարությունը խրախուսվում են, քանի որ ցածր պլաններ ստանալով լայն հնարավորություններ են ունենում ինչպես պլանների կատարման, այնպես էլ պարգև-հավելումներ ստանալու համար։ Եվ հակառակը. լավ աշխատող ձեռնարկության կոլեկտիվի խրախուսանքի հնարավորությունները խիստ սահմանափակվում են։ Այսպիսով, ստացվում է աննորմալ երևույթ և, իրոք, օբյեկտիվորեն՝ ետ մնացող ձեռնարկությունների խրախուսում։

Բերենք մի ցայտուն օրինակ։

Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան Քիմիական կոմբինատն ունի կալցիում-կարբիդի արտադրության ցեխ. նույնանման ցեխ ունի նաև Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանը։ Այդ ցեխերը հզորությամբ միմյանցից տարբերվում են, բայց ագրեգատների ու վառարանների կարողությամբ միմյանց հավասարաչափ պատկերն են ներկայացնում։ Չնայած սրան, այդ ձեռնարկություններին իջեցվել են միանգամայն անհամապատասխան արտադրական ու տեխնիկական ցուցանիշների առաջադրանքներ։

Մեկ մեգավատ կարողության դիմաց Կիրովի անվան գործարանի համապատասխան ցեխն ստացել է 2,03 տոննայի առաջադրանք, իսկ Կիրովականի Քիմկոմբինատի համանուն ցեխը՝ 2,6 տոննայի առաջադրանք։

Էլեկտրական էներգիայի ծախսը մեկ տոննա կարբիդի համար Կիրովի անվան գործարանում հաստատված է 2800 կիլովատ ժամ, իսկ Կիրովականի կոմբինատում՝ 2200 կիլովատ ժամ։ Ներկայումս էլեկտրական էներգիայի փաստական ծախսը երկու ձեռնարկություններում էլ համարյա նույնն է և տատանվում է 2770—2790 կիլովատ ժամի սահմաններում։ Եվ ահա, պլանավորման վերը հիշված մոտեցման հետևանքով Կիրովի անվան գործարանի

*համապատասխան ցեխի ղեկավարությունը հաշվետվություն է ներկայացնում ու ցույց տալիս 10—20 կիլովատ ժամի խնայողություն և դրա դիմաց խրախուսանքներ ու պարգև հավելումներ է ստանում, իսկ Կիրովականի համանուն ցեխի ղեկավարությունն ստիպված է հաշվետվության մեջ ցույց տալ 70—80 կիլովատ-ժամի գերածախս և ստանալ միայն կշտամբանք։*

*Նույն պատկերն է ներկայացնում ագրեգատների արտադրողականության բնագավառը։ Մեկ մեգովատի դիմաց 2,03 տոննա կարբիդ ստանալու պայմաններում Կիրովի անվան գործարանը խրախուսվում է, իսկ նույն հզորության դիմաց 2,5 տոննա կարբիդ ստանալիս Կիրովականի Քիմիական կոմբինատը կշտամբվում է։*

*Պարզ է, որ պլանավորման գործում այսպիսի աննորմալ երևույթներին պետք է անհապաղ վերջ տրվի, մանավանդ, որ նման օրինակները եզակի չեն և կան ոչ միայն մեր ռեսպուբլիկայում, այլ Սովետական Միությունում։ Սա, իհարկե, չափազանց բարդ հարց է, բայց ո՛չ անլուծելի։ Բարդ է, որովհետև պլանավորման այդ ձևերը պրոգրեսիվ լինել չեն կարող. ասենք՝ առաջավոր ձեռնարկությանը հետամնացին հավասար պլան իջեցնելը անթույլատրելի կլինի, նույնիսկ հակապետական քայլ, իսկ ետ մնացող ձեռնարկության ցուցանիշների պլանները հավասարեցնել առաջավորի ցուցանիշներին՝ նշանակում է վերջինիս կանգնեցնել չափազանց ծանր ֆինանսական դրության առաջ, եթե չասենք է՛լ ավելին։ Ուրեմն պետք է ելք որոնել, որի պայմաններում երկու ձեռնարկություններն էլ ստանան անընդհատ առաջադիմող պլաններ և կոլեկտիվներն էլ ունենան աշխատանքի խթան։*

*Այս ուղղությամբ մենք կփորձենք անել մի առաջարկություն, որը կարծում ենք, պետք է որ ընդունելի լինի բոլոր ձեռնարկությունների համար։*

*1. Ձեռնարկության արտադրական պլանները կազմելիս առաջավոր ձեռնարկությանը պետք է իջեցնել նախորդ տարվա հաջող ամիսների ցուցանիշների միջին արդյունքները։ Խոսքը վերաբերում է միայն արտադրանքին (արտադրանքի քանակին), իսկ արտադրության տեխնիկական-տնտեսական ցուցանիշների առաջադրանքը կազմելիս պետք է վերցնել ոչ թե առանձին հաջող ամիսների ցուցանիշների միջինը, այլ* անպայմանորեն *անցյալ տնտեսական ողջ տարվա միջին ցուցանիշները։ Սա անհրաժեշտ է կոլեկտիվին յուրահատուկ խթան ստեղծելու համար։*

*2. Ինչ վերաբերում է ետ մնացող համանուն ձեռնարկությանը, ապա այստեղ պետք է վարվել հետևյալ կերպ.*

*ա) արտադրանքի քանակական պլանները կազմելիս պետք է վերցնել անցյալ տնտեսական տարվա լավագույն ամիսների ցուցանիշները և դրան գումարել որոշ տոկոս, բայց այն հաշվով, որ չհասնի առաջավոր ձեռնարկության միջին ցուցանիշին. օրինակ, ասենք, առաջատար ձեռնարկության համար որևէ ագրեգատի հաջորդ տարվա պլանը (արտադրանքի քանակը կամ որ նույնն է՝ ագրեգատի արտադրողականությունը) որոշված է 1000 տոննայի սահմաններում, իսկ ետ մնացող ձեռնարկության համար, ասենք, ելնելով լավագույն ամիսների տվյալներից, ստացվել է 850 տոննա։ Այս 850 տոննային պետք է ավելացնել որոշ տոկոս և ելնելով ամեն անգամ տեղի կոնկրետ պայմաններից, ավելացնել այնպիսի քանակություններ, որ նա չհասնի 1000 տոննայի, այսինքն՝ տատանվի 880—950 տոննայի սահմաններում (թիվը պայմանական է)։ Կոնկրետ պայմանների համար պլանավորող մարմիններն իրենց*



*ձեռքի տակ կունենան անհրաժեշտ տվյալներ, հետևապես ավելի ճշտիվ կմոտենան վերը հիշված հարցերի լուծմանը.*

*բ) ինչ վերաբերում է արտադրանքի տեխնիկական-տնտեսական ցուցանիշներին, ապա այստեղ, հակառակ առաջավոր ձեռնարկության համար կազմվելիք պլաններին,* հիմք *պետք է վերցնել ոչ թե միջին տարեկան ցուցանիշները, այլ* անպայմանորեն *անցյալ տարվա աշխատանքների ամենահաջող ամիսների միջին ցուցանիշները։*

*Սրանով նույնիսկ յուրահատուկ խթան կստեղծվի ետ մնացող ձեռնարկության կոլեկտիվի աշխատանքներում, նրանք կձգտեն հասնել առաջավոր կոլեկտիվներին։ Պլանավորման այսպիսի սխեման, մեր կարծիքով, և՛ պահպանում է պարտիայի առաջադրած պրոգրեսիվ պլանավորումների շունչն ու ոգին, և՛ հանդիսանում է խնդրի արդարացի լուծում՝ կոլեկտիվներին սոցիալիստական մրցությունների մեջ արժանավայել խթան ստեղծելու գործում։*

*Պլանավորման բնագավառում որոշ թերություններ կան նաև աշխատանքները պլանավորելու ու աշխատավարձը նորմավորելու գործում։*

*Ճիշտ է, վերջերս գոյություն ունեցող օրենքների համաձայն մինիստրությունների ու գերատեսչությունները մեծ իրավունքներ ու արտոնություններ են տվել ձեռնարկությունների ղեկավարությանը։ Դրանց մեջ ամենահիմնականն այն է, որ սույն թվականի հունվարի մեկից արտադրանքի նորմաները սահմանելու իրավունքը տրված է դիրեկտորներին և տեղական կազմակերպություններին։ Դա չափազանց կարևոր հարց է, քանի որ արտադրանքի նորմավորումն այն* հիմնականն *է, որի բազայի վրա որոշվում է բանվորի աշխատավարձը, իսկ աշխատավարձի հարցը, ինչպես ընդունված է ասել, ոչ միայն տնտեսական խնդիր է, այլև՝ քաղաքական։ Եվ, իրոք, աշխատավարձի կազմակերպումը, նրա ճիշտ հիմնավորումն ու սահմանումը մեծ դեր է խաղում արտադրությունը կազմակերպելու և կառավարելու գործում։*

*Սակայն, այդ իրավունքները տալով ձեռնարկությունների ղեկավարության իրավասությանը (խոսքը արտադրական նորմաները սահմանելու և հաստատելու մասին է) մինիստրություններն ու գերատեսչությունները իրենց ձեռքումն են պահել ցեխերի կատեգորիաները որոշելու, նրանց որ խմբին պատկանելը որոշելու չափազանց կարևոր և հիմնական լծակը։*

*Բանն այն է, որ արտադրական միևնույն նորմաներն ունենալու դեպքում տարբեր խմբերի պատկանող ցեխերի բանվորների աշխատավարձը միանգամայն տարբեր են միմյանցից։ Օրինակ՝ առաջին և երրորդ շկալաներով և նույն արտադրական նորման ունեցող ցեխերի աշխատողների վարձատրության չափերը միմյանցից զանազանվում են 1,5-ից 2-ի սահմաններում։*

*Այսպիսով, արտադրանքի նորմաները սահմանելու իրավունքը տալով դիրեկտորներին, իսկ շկալաների որոշման իրավունքը պահելով իրենց իրավասությանը, վերադաս մարմինները ամբողջովին ու վերջնական չեն լուծում աշխատողների աշխատավարձի կարգավորման հարցերը։ Մենք գտնում ենք, քանի որ նման խնդիրներին ձեռնարկությունների ղեկավարներն ավելի մոտ են կանգնած, քան վերադաս մարմինները, ապա ուրեմն այդ խնդիրների լուծումն ավելի ճիշտ ու արագ կլինի, եթե ամբողջությամբ հանձնվեն ձեռնարկությունների ղեկավարության իրավասությանը։*

*Լրիվ պատկերացում կազմելու համար անհրաժեշտ է մի քանի խոսք էլ*

ասել ինժեներա-տեխնիկական անձնակազմի և ծառայողների աշխատավարձերը նշանակելու գոյություն ունեցող կարգի մասին։

Ինչպես հայտնի է, ձեռնարկության ղեկավարությանը իրավունք է վերապահված աշխատավարձ նշանակել գոյություն ունեցող հաստիքային ցուցակների համաձայն և նրա սահմաններում։ Սա միանգամայն ճիշտ է և այլ կերպ լինել չի կարող, քանի որ այլ պայմաններում աշխատավարձ նշանակելու գործում կարող է առաջանալ քաոսային վիճակ։ Նույնիսկ Ժողովրդական Տընտեսության Խորհուրդներ ստեղծելու պայմաններում աշխատավարձի կարգավորման իրավունքները վերապահված է Միութենական կառավարությանը։ Եվ դա միանգամայն ճիշտ է։ Սակայն ձեռնարկության կառավարումն ավելի ճկուն դարձնելու, ղեկավարության ձեռքը համապատասխան խթանող լծակներ տալու նպատակով վատ չի լինի, եթե պլանավորող մարմինները ձեռնարկությանն իջեցնեն աշխատավարձի միայն մեկ ցուցանիշ՝ տարեկան ընդհանուր ֆոնդը։ Մենք գտնում ենք, որ կարելի է այդ սահմաններում ձեռնարկության ղեկավարությանը իրավունք վերապահել կատարելու աշխատավարձերի որոշ փոփոխություն՝ ելնելով աշխատողի անհատական ունակություններից և ձիրքերից, նրա աշխատանքային տեղի պայմաններից, ցեխի բարդությունից ու վտանգավորությունից և այլն։

Կարծում ենք, որ եթե պահպանվում է ձեռնարկության համար նախատեսված աշխատավարձի ընդհանուր տարեկան ֆոնդը, ապա նման փոփոխությունները ոչ մի կերպ չեն կարող շոշափել պետության կողմից աշխատավարձի կարգավորման ընդհանուր հարցերը և կունենան միայն ու միմիայն տեղական բնույթ։ Բայց դրա փոխարեն ձեռնարկության ղեկավարման հարցերն ավելի ճկուն կդառնան, գործին օգուտ կբերեն։

Բերենք միայն մի փոքրիկ օրինակ։

Վերջին տարիներս միշտ խնդիր է առաջ քաշվում՝ ուժեղացնել ձեռնարկությունների նախագծող ու կոնստրուկտորական բյուրոները, կենտրոնական և գիտա-հետազոտական լաբորատորիաները։ Սակայն ձեռնարկությունների տնտեսվարները չեն կարողանում հեշտությամբ վճռել այդ հարցերը, քանի որ գոյություն ունեցող աշխատավարձերի մեջ կան որոշ թերություններ, կամ, եթե ո՛չ թերություններ, համենայն դեպս, զգալի զանազանություններ՝ ցեխային աշխատողների և նշված բաժինների աշխատավորության աշխատավարձերի միջև։ Բացի դրանից ցեխային աշխատողներն օգտվում են մի շարք այլ արտոնություններից, որոնցից զուրկ են այդ բաժինների աշխատողները։

Այս և նման խնդիրները արագորեն կարող են լուծվել, եթե դիրեկտորներին և ղեկավարությանը իրավունք վերապահվի աշխատավարձեր նշանակելու ժամանակ որոշ փոփոխություններ կատարել հաստիքների որոշված սահմաններից դուրս, բայց աշխատավարձի տարեկան ֆոնդերի սահմաններում։ Այդ փոփոխությունները, իհարկե, նույնպես պետք է սահմանափակ լինեն և տատանվեն որոշ տոկոսի սահմաններում, ասենք՝ մոտավորապես 15—20 տոկոսի սահմաններում։

Մի քանի խոսք էլ ասենք ո՛չ գործարքային և գործարքային աշխատանքների բնույթը որոշելու իրավունքների մասին։ Մենք գտնում ենք, որ այս գործում ձեռնարկության ղեկավարությանը պետք է տալ միանգամայն անսահմանափակ իրավունքներ։ Վերջին հաշվով գործարքային և ո՛չ գործարքային աշխատանքներն այն լծակներն են, որոնց օգնությամբ ղեկավարությունը կա-



տարում կամ չի կատարում ձեռնարկության պետական արտադրական պլանները։ Եթե այդպես է, և իրականում հենց այդպես է, ապա ղեկավարությանը չպետք է զրկել այդ ամենահիմնական լծակներից մեկն իր ձեռքում ունենալու իրավունքից։

Ամփոփելով նշված հարցերը՝ կարելի է գալ հետևյալ եզրակացության։

1. Վերադաս մարմինները տնտեսական միավորումներին (գործարաններին, ձեռնարկություններին) պետք է իջեցնեն հետևյալ տեխնիկական-տնտեսական ցուցանիշները. ա) արտադրանքի պետական պլանը՝ արտադրությունների բոլոր տեսակների և համախառն արտադրանքի գծով. բ) արտադրանքների որակական հատկությունները. գ) աշխատավարձի տարեկան ընդհանուր ֆոնդը. դ) կուտակումների պլանը։ Ահա և բոլորը։ Մնացած խնդիրների լուծումը պետք է թողնել ձեռնարկությունների ղեկավարության հայեցողությանը։

2. Տալով ձեռնարկությանը տարեկան աշխատավարձի ընդհանուր ֆոնդը և հաստիքային ցուցակները՝ թույլ տալ ղեկավարությանը ընդհանուր ֆոնդի սահմաններում կատարել աշխատավարձերի որոշ փոփոխություններ՝ 15—20 տոկոսի սահմաններում։

Աշխատանքային պայմաններին և աշխատավարձի կարգավորմանը վերաբերող մյուս բոլոր հարցերի լուծումը պետք է թողնել ձեռնարկությունների ղեկավարության իրավասությանը։ Ընդ որում, աշխատանքային պայմանների մեջ պետք է դասել նաև այնպիսի հարցերը, ինչպիսիք են բանվորներին մասնագիտական հագուստներ, ուժեղացրած սնունդ և այլն տալը։

Ավելորդ չի լինի խոսել նաև ձեռնարկություններում գյուտարարության և նորարարության հարցերի գոյություն ունեցող դրվածքի մասին։

Ձեռնարկությունների համար համապատասխան առաջադրանքներ կազմելիս պլանավորող մարմիններն աչքաթող են անում մի քանի հանգամանք։ Ամենից առաջ դա վերաբերում է այդ նպատակի համար նյութա-տեխնիկական բազա ստեղծելուն։ Տնտեսվարները գիտեն, որ ոչ մի մինիստրություն կամ գերատեսչություն նման պլանավորում չի կատարում։ Սա չափազանց աննորմալ երևույթ է և խիստ արգելակում է գյուտարարության աշխատանքների առաջընթացը։ Այս աննորմալ երևույթն անհապաղ պետք է վերացնել։

Գյուտարարության և նորարարության զարգացման ու առաջընթացի համար նյութա-տեխնիկական բազա պետք է ստեղծել հիմնական արտադրանքի նյութա-տեխնիկական բազային համահավասար։ Այս բնագավառում մյուս հիմնական թերությունն էլ այն է, որ ձեռնարկությունների իրավունքները, չգիտես ինչու, խիստ սահմանափակված են։ Այսպես, եթե որևէ նույնիսկ գյուտարարական կամ նորարարական առաջարկության տնտեսական պայմանական էֆեկտը կազմում է խոշոր գումար, ձեռնարկության ղեկավարությունն այդ առաջարկությունն ընդունելու և ներդնելու իրավունք չունի։ Այն պետք է անպայմանորեն հաստատվի վերադաս մարմինների կողմից և հետո միայն ներդրվի։ Գործի այսպիսի դրվածքը մենք համարում ենք սխալ։ Ձեռնարկությունների իրավունքներն այս ասպարեզում չպետք է սահմանափակել։

Եվս մի չափազանց կարևոր հարց։ Կառավարական համապատասխան որոշումների համաձայն Պետական բանկի տեղական գրասենյակները երկարատև վարկերի միջոցով ֆինանսավորում են գյուտարարական աշխատանքների ներդրումը, աշխատատար պրոցեսների փոքր մեքենայացման աշխատանքները և այլն։

*Սա չափազանց կարևոր որոշում էր և հսկայական խթան հանդիսացավ վերոհիշյալ աշխատանքների աշխուժացման գործում։ Սակայն, չպետք է թաքցնել այն փաստը, որ շատ ձեռնարկության ղեկավարներ ու տնտեսվարներ հաճախ ձեռնպահ են մնում և այդ վարկերը չեն օգտագործում։ Բանն այն է, որ այդ վարկավորումը կատարվում է տվյալ ձեռնարկության արտադրանքի ինքնարժեքի հաշվին, հետևապես ոչ բոլոր ձեռնարկություններն են, որ կարող են տանել նման մի ծանրություն։ Սրանով էլ բացատրվում է տնտեսվարների զգույշ մոտեցումը այս խնդիրներին։*

*Գյուտարարական և պրոցեսների ավտոմատացման աշխատանքներին մեծ թափ հաղորդելու նպատակով, մեր կարծիքով, այդ որոշման մեջ պետք է մտցնել որոշ փոփոխություններ։*

*1. Մինչև, ասենք 200 հազար ռուբլու սահմաններում վարկավորումը կատարել ձեռնարկությունների ինքնարժեքի հաշվին, պահպանելով գոյություն ունեցող բոլոր պայմանները. խոսքը բանկերի պայմանների մասին է։*

*2. Նշված գումարից ավելի վարկավորումը կատարել կապիտալ ներդրումների հաշվին։ Խնդրի տեխնիկական հարցի լուծումը պետք է թողնել բանկերի իրավասությանը։*

*Մենք գտնում ենք, որ վարկավորման սիստեմի նման փոփոխությունները կվերացնեն տնտեսվարների գուցե և չափից դուրս զգուշությունը և խթան կհանդիսանան գյուտարարական աշխատանքների զարգացմանը։*

*Մի քանի խոսք էլ շինարարական աշխատանքների պլանավորման մասին։*

*Կասկած չի կարող լինել, որ արդյունաբերության ու շինարարության կառավարման նոր վարչաձևերին անցնելը զգալիորեն կբարելավի աշխատանքների այս բնագավառը։ Սակայն, ինչպիսի որոշումներ էլ որ ընդունվեն, մեր կարծիքով նույն տարվա աշխատանքների տիտուլը կազմելու իրավունքը պետք է վերապահվի ձեռնարկությունների ղեկավարներին։ Բանն այն է, որ այս կամ այն աշխատանքի անհրաժեշտությունը կամ նրանց հերթականությունը որոշելու հարցերն ամենից լավ գիտեն ձեռնարկությունների ղեկավարները և այդ աշխատանքներին ամենից մոտ կանգնած են նրանք։ Ուրեմն և անհասկանալի է, թե ինչո՞ւ այդ աշխատանքները հիմա կենտրոնացված են գերատեսչություններում ու մինիստրություններում։ Այդ սխալը պետք է ուղղել։ Ճիշտ է, այս հարցին կարող են առարկել, ասելով, որ գերատեսչությունը չի կազմում, այլ միայն հաստատում է ձեռնարկության կողմից կազմած տիտուլը, բայց այդ ճիշտ չի լինի։ Տիտուլը հաստատելիս գերատեսչություններն այնպիսի փոփոխություններ են կատարում, որ ձեռնարկության կողմից կազմված տիտուլից, կարելի է ասել, ոչինչ չի մնում։*

*Պլանավորման մեջ գոյություն ունեցող թերությունները, ձեռնարկությունների դիրեկտորների և առհասարակ ղեկավարության իրավունքների ու ինքնուրույնության լայնացմանը վերաբերող հարցերը, իհարկե, վերը արծարծված խնդիրներով չեն սահմանափակվում։*

*Կարծում ենք, որ հետագայում էլ գործին մոտիկ կանգնած մարդիկ կզբաղվեն այդ հարցերով ու նրանց ճիշտ լուծումով և մեր պարտիայի ու կառավարության անմիջական ղեկավարությամբ մեր արդյունաբերությունը կթևակոխի իր հետագա զարգացման, աննախընթաց զարգացման նոր փուլը։*

---

# ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ՊԱՐՏՈՒՍՈՒՑՄԱՆ ԳՈՐԾԸ

Գ. ՀԱՅՐՅԱՆ

*Հոկտեմբեր ամսի 15-ից ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում սկսվելու է պարտիական լուսավորության ցանցի նոր ուսումնական տարին։ Պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ հաջողությամբ ավարտել նախապատրաստական աշխատանքները և կազմ ու պատրաստ սկսել ուսուցումը բոլոր օղակներում։*

*Կոմունիստների քաղաքական ուսուցման հաջողության պայմաններից մեկը պարտլուսցանցի ճիշտ կոմպլեկտավորումն է։ Իսկ ճիշտ կոմպլեկտավորել, նշանակում է պարզել, թե յուրաքանչյուր կոմունիստ ուսուցման բազմազան ձևերից որ մեկն է ցանկանում ընտրել։ Այս հարցում պետք է ղեկավարվել կամավորության սկզբունքով և թույլ չտալ որևէ վարչարարություն։ Սակայն պետք է ասել, որ պարտիայի առանձին շրջկոմներ և սկզբնական կազմակերպություններ պարտլուսցանցի կոմպլեկտավորման վրա անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում, որի հետևանքով էլ շատ տեղերում կոմպլեկտավորումը կատարում են հապճեպ, ոտքի վրա, առանց կոմունիստների հետ նախնական զրույցի, առանց նրանց քաղաքական և հանրակրթական պատրաստությունը հաշվի առնելու։ Այդ է պատճառը, որ ամբողջ տարվա ընթացքում խոսակցություններ են գնում այն մասին, որ այս կամ այն քաղդպրոցում ու խմբակում սովորող ունկնդիրների մակարդակը տարբեր է, որ ճիշտ կլիներ ինքնակրթությամբ զբաղվողների մի մասին թողնել խմբակներում և ընդհակառակը։*

*Այս խոսակցությունները, իհարկե, չէին լինի, եթե պարտիական սկզբնական կազմակերպության բյուրոն կամ կոմիտեն կոմպլեկտավորման գործին նայեին լրջորեն, եթե նրանք հաշվի նստեին կոմունիստների ցանկության հետ, եթե նրանք լրիվ պատկերացում ունենային նրանցից ամեն մեկի կարողությունների ու նախասիրությունների մասին։ Չպետք է մոռանալ, որ կոմունիստների մտավոր կարողության և հակումների ճիշտ հաշվառումը պարտիական ուսուցման հաջողության կարևոր նախապայմանն է։*

## Ո՞ՐՆ Է ԲՆՈՐՈՇԸ ԱՆՑԱԾ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐՈՒՄ

*Ուսումնական նոր տարվա խնդիրների մասին խոսելուց առաջ անհրաժեշտ է անդրադառնալ այն հարցին, թե անցյալ տարվա համար ո՞րն է ամենից բնորոշը, ի՞նչն էր պիտանի, ընդունելի, և ի՞նչն անպետք ու անընդունելի։*

Անցած տարում ուսուցման մեջ տեղի ունեցած ամենաէական փոփոխությունն այն էր, որ պարտիական կազմակերպությունները կատարելով ՍՄԿԿ XX համագումարի որոշումները, կարողացան կոմունիստների ուշադրությունը բևեռել մարքս-լենինյան տնտեսագիտական ուսմունքի, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրության վրա։ Դա վճռական նշանակություն ունեցավ պրոպագանդայի և կյանքի միջև առաջացած խզումը վերացնելու, պրոպագանդան կյանքի, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ կապելու ուղղությամբ տարվող աշխատանքում։

Պարտիական լուսավորության ցանցի անցած ուսումնական տարում քաղաքական ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված 82 հազար հոգուց 26.500-ը, կամ 35 տոկոսը, ուսումնասիրում էր մարքսիստական-լենինյան տնտեսագիտական թեորիան և արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, առևտրի էկոնոմիկայի հարցերը։ Տարեց-տարի աճում է տնտեսագիտական կրթությամբ զբաղվող կոմունիստների թիվը։ Այսպես, օրինակ, եթե 1955 թվականին տնտեսագիտական կրթությամբ զբաղվում էին 3845 կոմունիստ, 1956 թվականին՝ 8000, ապա 1957 թվականին նրանց թիվը հասավ 26.500-ի։

Տնտեսագիտական գիտելիքների ուսուցման մեջ լայնորեն ներգրավվել են ռեսպուբլիկայի պարտիական, սովետական ու տնտեսական ղեկավար աշխատողները, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագետները, արտադրության առաջավորները։ Տնտեսագիտական ուսուցումը դրական ազդեցություն ունեցավ այդ կադրերի պրակտիկ գործունեության վրա, զգալիորեն բարելավվեց մեր արդյունաբերության ու գյուղատնտեսության աշխատանքը։

Բերենք մի քանի օրինակ.

Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանում ստեղծվել էր արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող 4 սեմինար, որտեղ ընդգրկված էին 90 ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ցեխի պետեր, վարպետներ և առաջավոր բանվորներ։ Սեմինար պարապմունքի ընթացքում աշխատանքի կազմակերպման, ներքին ռեզերվների հայտաբերման և օգտագործման մասին թեմաների խորը, բազմակողմանի ուսումնասիրությունը մեծ չափով օգնեց նորարարական շարժման զարգացմանը, որը կարճ ժամանակամիջոցում տվեց մոտ 6,5 միլիոն ռուբլու օգուտ։

Ղափանի հանքվարչությունում գործող արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարում ընդգրկված էր 46 կոմունիստ։ Նրանցից շատերին մտահոգում էր այն հարցը, թե ինչու տարիներ շարունակ հանքվարչությունը չի կատարում ինքնարժեքի իջեցման պլանը։ Այս թեման մանրամասնորեն ուսումնասիրելուց հետո քննարկվեց սեմինարում։ Ունկնդիրներն իրենց ելույթներում բացահայտեցին ինքնարժեքի իջեցման պլանները չկատարելու պատճառները, բազմաթիվ օրինակներ բերեցին հումքի, էլեկտրաէներգիայի, տրանսպորտի, մեխանիզացիայի ոչ ռացիոնալ օգտագործման մասին և ցույց տվին արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում իրենց մոտ եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Ձեռք առած միջոցառումների շնորհիվ ձեռնարկությունն ստացավ 1 միլիոն 258 հազար ռուբլու շահույթ։

Մեղրու շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունում գործող գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակում ընդգրկված էր 24 մարդ։



Այս խմբակի աշխատանքում դրականն այն էր, որ ունկնդիրներն առանձնահատուկ ուշադրություն էին դարձնում կոլտնտեսության բոլոր ճյուղերի եկամտաբերության բարձրացման և արտադրանքի միավորի վրա կատարվող ծախսերի կրճատման վրա։ Այդ բոլորի շնորհիվ կոլտնտեսությունը անցյալ տարի խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացավ 208 ցենտներ բերք և յուրաքանչյուր ցենտների վրա ծախսեց 2,26 աշխօր, այն դեպքում, երբ նախորդ տարիներին յուրաքանչյուր հեկտարից ստացվել էր 80—120 ցենտներ խաղող և ամեն մի ցենտների վրա ծախսվել էր 5—6 աշխօր։

Կադրերի տնտեսագիտական ուսուցումը կազմակերպելու գործում որոշ հաջողությունների են հասել նաև Սպիտակի, Իջևանի, Էջմիածնի, Շահումյանի, Կալինինոյի, Շամշադինի և մի շարք այլ շրջանների պարտիական կազմակերպությունները։ Կալինինոյի շրջանի պարտիական կազմակերպությունները համաժողովրդական պայքար ծավալելով բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, մսի և յուղի արտադրությամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու՝ պարտիայի առաջադրած լոզունգի կենսագործման համար, ամբողջ գաղափարական, քաղաքական աշխատանքը, պրոպագանդան և ագիտացիան ի սպաս են դրել այդ խնդրի կատարմանը։ Բավական է նշել, որ 1957 թվականի առ 1-ը օգոստոսի տվյալներով մեկ կովի կաթնատվությունը հասել է 1620 լիտրի՝ անցյալ ամբողջ տարվա 1740 լիտրի փոխարեն։ Կըլլդաղի կոլտնտեսությունն անցյալ տարվա 650 լիտրի փոխարեն յուրաքանչյուր կովից ստացել է 1740 լիտր կաթ։ Շրջանի կոլտնտեսությունները պարտավորվել են ընթացիկ տարում ամեն մի կովի կաթնատվությունը հասցնել 2500 լիտրի։

Անցյալ ուսումնական տարում ռեսպուբլիկայի մի շարք պարտիական կազմակերպություններում (Սպիտակ, Իջևան, Շահումյան, Սևան) լայն կիրառում գտավ տնտեսական կոնֆերանսների կազմակերպումը, որոնք մեծապես նպաստում են արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, ՄՏ կայանների տնտեսական գործունեության բարելավմանը։ Այդ կոնֆերանսները ոչ միայն կադրերի մարքս-լենինյան դաստիարակության միջոց են, այլև պրակտիկ փորձի ընդհանրացման հիանալի դպրոց։ Անհրաժեշտ է նոր ուսումնական տարում մյուս կազմակերպություններում ևս պրակտիկա դարձնել նման կոնֆերանսների անցկացումը։

Սակայն, չնայած այս բոլորին, կադրերի տնտեսագիտական կրթության կազմակերպման գործում դեռևս կան լուրջ թերություններ։

Կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակների, սեմինարների պարապմունքները առանձին պարտիական կազմակերպություններում գրեթե չեն տարբերվում ընթացիկ տնտեսական հարցերի վերաբերյալ սովորական արտադրական-տեխնիկական խորհրդակցություններից։ Միանգամայն քիչ ուշադրություն է դարձվում հարցերի տեսական կողմի վրա։ Այս տեսակետից բնորոշ է Երևանի Սպանդարյան շրջանի գինու կոմբինատի արդյունաբերության էկոնոմիկան ուսումնասիրող սեմինարի աշխատանքը։ Այդ սեմինարի պարապմունքները նման են հաշվապահական դասընթացների, միայն այն տարբերությամբ, որ թվերի մասին խոսելուց բացի, խոսվում է նաև գինու շշերի ու տարաների մասին։

Կիրովականի շրջանի Վահագնի գյուղի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունն ուսումնական տարվա սկզբին հաշվի առնելով կոմունիստների և անպարտիական ակտիվիստների ցանկությունը՝ կազմակերպեց

գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակ և պրոպագանդիստ առաջադրեց կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Մարտիրոսյանին։ Սակայն պրոպագանդիստ Ս. Մարտիրոսյանը անբարեխիղճ գտնվեց իր պարտականությունները կատարելու մեջ։ Նա դեպքից-դեպք հրավիրված պարապմունքներին ներկայանում էր առանց նախապես պատրաստվելու։ Եվ որովհետև նյութ չուներ խոսելու, հերթով հարձակվում էր իր ունկնդիրների վրա, նրանց կշտամբում՝ կոլտնտեսության աշխատանքներում եղած թերությունների համար։ Այդ էր պատճառը, որ ամեն մի պարապմունքից հետո զգալիորեն պակասում էր ունկնդիրների թիվը։ Եվ պատահական չի, որ պրոպագանդիստ Մարտիրոսյանի ձեռք առած այս «միջոցառումները» ոչնչով չփոխեցին վիճակը կոլտնտեսությունում, որտեղ ընկած է աշխատանքային կարգապահությունը, տարիներ շարունակ չեն կատարվում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնաբուծության մթերատվության առաջադրանքները։

Որոշ պարտիական կազմակերպություններ կադրերի տնտեսագիտական ուսուցման կազմակերպման գործում լուրջ վերաբերմունք չեն ցուցաբերում, որի հետևանքով հաճախ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներ են ստեղծում այնտեղ, որտեղ ունկնդիրների համապատասխան կոնտինգենտ ու պրոպագանդիստ չկա։ Դա հասցնում է նրան, որ 1—2 պարապմունքից հետո այդպիսի խմբակներն ու դպրոցները դադարում են գոյություն ունենալուց։ Այսպես պատահեց Քանաքեռի կոշիկի ֆաբրիկայում, ուր տարեսկզբին կոմպլեկտավորված երկամյա էկոնոմիկական դպրոցը երկրորդ պարապմունքից հետո դադարեց գործելուց և վերածվեց ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակի։

Պարտիական լուսավորության անցած ուսումնական տարվա բնորոշ կողմերից մեկն էլ այն է, որ լայն տարածում գտավ ուսուցման այնպիսի մի ձև, ինչպիսին է ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակը։ Մեկ տարում այդպիսի խմբակների թիվն աճեց ավելի քան 5 անգամ, հասնելով 881-ի, որտեղ ընդգրկվել են 11.694 կոմունիստ։ Պետք է նշել, որ այդ խմբակներից շատերը աշխատել են բավականաչափ լավ և ուսանելի փորձ են ձեռք բերել, որը պետք է ամրապնդել հետագայում։ Ոչ ոք այժմ չի կասկածում ուսուցման այդ ձևի նպատակահարմարության ու կենսունակության մեջ։ Այդ խմբակներում, երբ գործը լավ է տարվում, կոմունիստները հնարավորություն ունեն խորը կերպով ուսումնասիրելու Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության արտաքին ու ներքին քաղաքականության հարցերը, սպառիչ պատասխաններ ստանալու օրվա հուզող հարցերի վերաբերյալ, ճիշտ կողմնորոշվելու իրենց պրակտիկ գործունեության մեջ։ Սակայն պետք է նշել, որ մեզ մոտ պարտիական կազմակերպությունների մի զգալի մասում ուսուցման այդ ձևի վրա նայում են որպես ամենաստորին օղակի և ըստ այնմ կոմպլեկտավորում խմբակները։ Այդ ոչ ճիշտ ըմբռնումը իր արտահայտությունն է գտնում նաև պրոպագանդիստների ընտրության հարցում։ Որպես կանոն այդ տիպի խմբակների համար ընտրում են համեմատաբար քիչ փորձ և թույլ պատրաստականություն ունեցող պրոպագանդիստներ, որն իր բացասական ազդեցությունն է թողնում պարապմունքների գաղափարական բովանդակության վրա։ Եվ պատահական չէ, որ այդպիսի խմբակներում հաճախ պարապմունքներն անցնում են անհետաքրքիր, տաղտկալի, դուրս չեն գալիս



սովորական ինֆորմացիաների շրջանակներից, վեր են ածվում թերթերի սոսկ ընթերցանության։

Պետք է նկատի ունենալ, որ ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակներում ընդգրկվածների մեջ մեծ թվով ագիտատորներ կան, որոնք ամեն մի պարապմունքից հետո աշխատանք են կատարում մասսաների մեջ։ Ուրեմն անհրաժեշտ է այդ խմբակների պարապմունքների կազմակերպմանը ավելի լուրջ ուշադրություն դարձնել։

## ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆԸ

Վերևում մենք խոսեցինք քաղաքատնտեսության, կոնկրետ էկոնոմիկայի, ընթացիկ քաղաքականության հարցերի նկատմամբ կոմունիստների հետաքրքրության աճի, այդ ուղղությամբ ձեռք բերված որոշ հաջողությունների և նկատվող թերությունների մասին։ Ճիշտ է ասված, որ հաջողությունները երբեմն ունեն իրենց ստվերոտ կողմերը, որոնք չի կարելի չնկատել։ Բանն այն է, որ մենք ուժեղացնելով աշխատանքի մի օղակը, թուլացրել ենք մյուսը։ Այստեղ ամենից առաջ պետք է նկատի ունենալ ՍՄԿՊ պատմության, մարքսիզմ-լենինիզմի թեորիայի, առանձնապես դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի ակտուալ հարցերի ուսումնասիրության նկատմամբ որոշ կազմակերպությունների կողմից ցույց տրվող աններելի վերաբերմունքը։ Բավական է ասել, որ 1955—1956 ուսումնական տարվա հետ համեմատած, անցյալ ուսումնական տարում պարտիայի պատմությունն ու մարքսիստական-լենինյան ուսմունքի առանձին պրոբլեմներն ուսումնասիրող կոմունիստների թիվը կրճատվել է 16.835 մարդով։

Զարմանալի է, բայց փաստ է, որ ամբողջ ռեսպուբլիկայում մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունն ուսումնասիրող միայն երեք խմբակ գոյություն ունի։ Այստեղից, իհարկե, չպետք է եզրակացնել, թե թուլացել է կոմունիստների հետաքրքրությունը դեպի փիլիսոփայական հարցերը։ Դրա պատճառը պետք է փնտրել գործի վատ կազմակերպման մեջ։

Առանձին կազմակերպություններ սխալ հասկանալով տնտեսագիտական ուսուցման առաջնահերթ նշանակությունը, առանց մտածելու մեխանիկորեն պարտիայի պատմությունն ուսումնասիրող բոլոր կոմունիստներին անխտիր ցուցակագրեցին կոնկրետ էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներում։ Այդ ակտը կատարելուց հետո նրանք հանդիսավոր ձևով հայտարարեցին, թե իրենք դրանով լուծել են տեսության ու պրակտիկայի կապի կորվածության պրոբլեմը։

Բավական չէ, որ կրճատվել է պարտիայի պատմությունը, մարքսիստական-լենինյան տեսության հարցերն ուսումնասիրող կոմունիստների թիվը, այլև շատ տեղերում ցածրացել է խմբակներում ու սեմինարներում տարվող աշխատանքի գաղափարական մակարդակը։ Երբ այս կապակցությամբ դիտողություն է արվում, մեր որոշ պրոպագանդիստներ փորձում են արդարանալ նրանով, որ դասագիրք չկա։

Դա սխալ է նույնիսկ փաստական տեսակետից։ Ճիշտ է, որ ՍՄԿՊ պատմության նոր դասագիրք դեռ չկա, բայց չէ՞ որ հին դասագիրքը՝ իր լուրջ սխալներով ու արատներով հանդերձ, պիտանի շատ բան է պարունակում իր

մեջ։ Բացի այդ, կան այլ նույթեր, որոնց ուսումնասիրությունն առավել կարևոր է։ Չէ՞ որ վաղուց ի վեր հրապարակի վրա են Մարքսի և Էնգելսի ամենանշանավոր գործերի, Լենինի 35-հատորյակի թարգմանությունը մայրենի լեզվով։ Թարգմանված են նաև պարտիայի համագումարների, կոնֆերանսների, պլենումների որոշումները և հրատարակված մի քանի հատորներով։

Վ. Ի. Լենինի հանճարեղ աշխատությունների մեջ, պարտիայի որոշումներում հրաշալի կերպով շարադրված է մեր պայքարի ու աշխատանքի պատմությունը, ընդհանրացված է կոմունիստական շինարարության հարուստ փորձը։

Երբ մենք ասում ենք, որ պարտիայի պատմության ու տեսության հարցերի ուսումնասիրությանը պետք է լուրջ ուշադրություն դարձնել, այդ չի նշանակում, թե պետք է թուլացնել ուշադրությունը կադրերի տնտեսագիտական ուսուցման նկատմամբ։ Մի ծայրահեղությունից չի կարելի մյուսն ընկնել։ Երբ մենք ավելի խորն ուսումնասիրենք հարցը, կտեսնենք, որ չի կարելի ինչպես հարկն է ուսումնասիրել պարտիայի պատմությունը, և հատկապես նրա հետհոկտեմբերյան շրջանի պատմությունը, առանց շաղկապելու այն էկոնոմիկայի, սոցիալիստական շինարարության պրակտիկայի հետ։ Ճիշտ այնպես, ինչպես չի կարելի խորը կերպով ուսումնասիրել արդյունաբերության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի հարցերը, առանց լավ ըմբռնելու պարտիայի քաղաքականությունը։

Մեր խնդիրն է՝ նոր ուսումնական տարին սկսելիս այս բոլորը հաշվի առնել և միանգամ ընդմիշտ վերջ դնել պարտիայի պատմության, տեսության հարցերի ուսումնասիրության նկատմամբ առանձին տեղերում ցուցաբերվող թերագնահատմանը։

## ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆՆ ԻՆՔՆԱԿՐԹՈՒԹՅԱՄԲ ԶԲԱՂՎՈՂՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

Հայտնի է, որ պարտիայի պատմության ու տեսության հարցերի ուսումնասիրության գլխավոր ու հիմնական ձևը ինքնակրթությունն է։ Բայց անհրաժեշտ հսկողության բացակայության հետևանքով ինքնակրթությունը շարունակում է մնալ որպես պարտիական լուսավորության ցանցի ամենաթույլ օղակը։ Ամեն տարի ուսումնական տարվա սկզբին կոմունիստների մի զգալի մասը ցանկություն է հայտնում զբաղվելու քաղաքական ինքնակրթությամբ, իսկ պարտիական կազմակերպությունները իրենց գործունեությունը սահմանափակում են նրանով, որ տարեսկզբին կազմում են ցուցակներ, առանձնացնում կոնսուլտանտներ և տարվա ընթացքում կազմակերպում հատուկենտ դասախոսություններ։ Դրա արդյունքը լինում է այն, որ զգալի թվով կոմունիստներ, թաքնվելով ինքուրույն ուսումնասիրողների անվան տակ, ամբողջ տարվա ընթացքում ոչինչ չեն անում։ Օրինակ․ Քաջարանի ֆլոտացիոն ֆաբրիկայի դիրեկտոր Մ. Բարլաուխովը, չորացման բաժնի վարիչ Ռ. Ցեդերենկոն, ջերմէլեկտրակայանի գլխավոր ինժեներ Ա. Գրիգորյանը իրենց համարել են ինքնուրույն ուսումնասիրողներ, սակայն ամբողջ ուսումնական տարվա ընթացքում ոչինչ չեն արել։ Նույնը պետք է ասել նաև Արթիկի շրջսովետի գործկոմի գրեթե բոլոր բաժինների վարիչների մասին, որոնք ինքնուրույն ուսումնասիրողներ են, բայց իրենց քաղաքական-գաղափարական մակարդակի



բարձրացմամբ քիչ են զբաղվում։ Նրանք նույնիսկ չեն ուզում մասնակցել կազմակերպված դասախոսություններին, զեկուցումներին, անհատական ու խմբակային կոնսուլտացիաներին։

Դժբախտաբար, սրանք եզակի օրինակներ չեն։ Նման փաստեր կարելի է գտնել գրեթե բոլոր շրջաններում։

Այդպիսի երևույթներին վերջ տալու համար անհրաժեշտ է ավելի հստակ որոշել մարքսիզմ-լենինիզմի թեորիան ինքնուրույն ուսումնասիրողների նկատմամբ հսկողության ձևերն ու մեթոդները։ Կան պարտիական աշխատողներ, որոնք կարծում են, որ եթե միջամտեն կոմունիստների ինքնակրթության գործին, սիստեմատիկորեն հետաքրքրվեն նրանով, ապա դա կլինի վարչարարություն։

Մարքսիզմ-լենինիզմի թեորիան ինքնուրույն ուսումնասիրող կոմունիստների համար, իհարկե, քննություն կազմակերպելու կարիք չկա, բայց այն կոմունիստներին, որոնք վատ են սովորում, չեն բարձրացնում իրենց գաղափարական մակարդակը, կարելի է կանչել բյուրո, պարտիական ժողով և պահանջել նրանցից՝ պատասխան տալ, թե ինչո՞ւ չեն կատարում իրենց կանոնադրական պարտականությունը։ Սակայն վերահսկողությունը այս միջոցառումներով չի վերջանում։ Վերահսկողության ամենաարդյունավետ միջոցը օգնությունն է։ Կոմունիստներին պետք է օգնել այնպես, որ նրանց սրտերում սեր ու մեծ ցանկություն առաջանա դեպի տեսության հարցերը։ Պետք է հասկանալ, որ ժամանակները փոխվել են, բարձրացել է կոմունիստների պահանջների մակարդակը, իսկ այդ պահանջները կարելի է բավարարել միայն մտածված ու սիստեմատիկ օգնությամբ։

Մենք վատ ենք զբաղվում նաև պարտիական և սովետական ղեկավար աշխատողների ու ակտիվի քաղաքական ուսուցման հարցերով։ Վաղուց է, որ մեզ մոտ չենք հրավիրում ՀԿՊ քաղկոմ-շրջկոմների քարտուղարների, իդեոլոգիական բնագավառի ղեկավար աշխատողների սեմինարներ, խորհրդակցություններ, տեսական կոնֆերանսներ։

Պարտիական և սովետական ղեկավար կադրերի քաղաքական ուսուցման, ինչպես նաև մասսաների դաստիարակության կարևոր միջոցներից մեկը՝ այդ կադրերի անմիջական ակտիվ մասնակցությունն է պրոպագանդիստական աշխատանքներին։ Մինչդեռ ղեկավար աշխատողների մի մասն այդ ասպարեզում պահանջված ակտիվություն հանդես չի բերում։ Չպետք է մոռանալ, որ մեզ մոտ մինիստրը, նրա տեղակալը, գործարանի դիրեկտորը, աշխատավորների դեպուտատների քաղաքային կամ շրջանային Սովետի գործադիր կոմիտեի նախագահը, միաժամանակ քաղաքական գործիչներ են։ Իսկ այն ի՞նչ քաղաքական գործիչ է, որ սերտորեն կապված չէ մասսաների հետ, օրգանական պահանջ չի զգում հանդես գալու նրանց առաջ։ Դժբախտաբար, մեզ մոտ դեռ կան առանձին ղեկավար աշխատողներ, որոնց հետաքրքրության սահմանները շատ նեղ են և հաճախ դուրս չեն գալիս իրենց գերատեսչության պատնեշներից։

Տեսական անհրաժեշտ գիտելիքներ չունեցող գործիչը չի կարող պարտիայի քաղաքականության լիարյուն պրոպագանդիստ ու կիրառող լինել, նա հեշտությամբ կարող է շեղվել ճանապարհից, բյուրոկրատանալ, ընկնել քաղքենիության գիրկը։ Այդ տեսակետից բնորոշ է հետևյալ օրինակը։ Վերջերս Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի ապարատը կոմպլեկտավորելիս ֆինանսների

մինիստրի տեղակալ ընկ. Բաղալյանին Ժողտնտխորհում ֆինանսների բաժնի պետի աշխատանք առաջարկվեց։ Առաջին օրը ընկ. Բաղալյանը համաձայնվեց, բայց երկրորդ օրը կտրականապես հրաժարվեց, պատճառաբանելով, որ ինքը չի շարժվի իր տեղից, որովհետև այդ նոր տեղում նրա աշխատավարձը մի փոքր չափով կպակասի...

Այս և նման կարգի մի շարք օրինակները ցույց են տալիս, որ եթե պատասխանատու աշխատողը մարքսիզմ-լենինիզմի տեսությունը լավ չի տիրապետում, նա իսկական գործիչ լինել չի կարող և հեշտությամբ կարող է մոլորության մեջ ընկնել, դառնալ սովորական քաղքենի։

Պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է հասնեն այն բանին, որպեսզի յուրաքանչյուր պարտիական և սովետական ղեկավար աշխատող լինի պրոպագանդիստ, սեմինարի ղեկավար, կոնսուլտանտ, հանդես գա դասախոսություններով ու զեկուցումներով։

## ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ

Պարտիական լուսավորության սիստեմում և աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում մեծ դեր է կատարում դասախոսական պրոպագանդան։

Դասախոսական պրոպագանդայի ծավալման ասպարեզում աշխատանքի որոշ դրական փորձ են կուտակել ՀԿՊ Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմների, Սևանի, Գորիսի, Սպիտակի, Շահումյանի շրջկոմների դասախոսական խմբերը։ Այստեղ դասախոսական խմբերի կազմը հիմնականում համալրված է տեսականորեն պատրաստված և պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ ունեցող կադրերով։ Դասախոսական խմբերը սիստեմատիկաբար նիստեր են գումարում, քննարկում են դասախոսությունների տեքստեր, կիրառվում է դասախոսությունները փոխադարձաբար լսելու պրակտիկան։ Սակայն մի շարք քաղկոմ-շրջկոմների դասախոսական խմբերի աշխատանքներում դեռևս լուրջ թերություններ կան։ Արթիկի, Արտաշատի, Վեդու, Բասարգեչարի շրջաններում դասախոսական խմբերի անդամների մեծ մասը հանդես չի գալիս դասախոսություններով, բավարարվում է միայն ընթացիկ քաղաքականության մասին հազվադեպ ելույթներով։ Դասախոսական խմբերի թեմատիկայում տեսական հարցերը մղվել են երկրորդական պլանի վրա, նրանցում քիչ տեղ է հատկացված պարտիայի պատմության, փիլիսոփայության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, երիտասարդության կոմունիստական դաստիարակության, արտադրության առաջավոր փորձի վերաբերյալ թեմաներին։

Դասախոսական պրոպագանդայի ծավալման գործում իրենց արժանավոր տեղն ունեն Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ռեսպուբլիկական ընկերությունը և նրա տեղական բաժանմունքները։ Միայն 1957 թվականի անցած 7 ամիսների ընթացքում ընկերությունը կազմակերպել է 8352 դասախոսություն, հրատարակել է 33 բրոշյուր-սղագրություն, անց է կացրել 52 տեսական կոնֆերանս, հրատարակել է 14 բյուլետեն-թերթիկ և այլն։

Անհրաժեշտ է նշել, որ վերջին շրջանում զգալիորեն բարձրացել է ընկերության կողմից տարվող դասախոսական պրոպագանդայի մակարդակը, բարելավվել է ռեսպուբլիկական վարչության ղեկավարությունը և օպերատիվ



օգնությունը շրջանային ու քաղաքային բաժանմունքների նկատմամբ, նախագահության նիստերում սիստեմատիկաբար քննվում են դասախոսական պրոպագանդայի որակի բարելավման հարցերը։

Ընկերության աշխատանքում եղած ամենահիմնական ու գլխավոր թերությունը եղել և մնում է դասախոսությունների գաղափարական-քաղաքական բովանդակության, նրանց որակի բարձրացման համար անբավարար պայքարը։ Մինչև այժմ էլ որոշ տեղերում, այդ թվում և Երևան քաղաքում, դասախոսություն կարդալու համար հաճախ ամբիոն է տրվում այդ գործի հետ առնչություն, փորձ և գիտելիքներ չունեցող պատահական մարդկանց, պարզապես՝ անպատրաստ ընկերների։

Մեր դասախոսական պրոպագանդայի էական թերություններից մեկն էլ նրա թեմատիկայի նեղ լինելն է։ Մեզ մոտ, օրինակ, քիչ դասախոսություններ են կարդացվում ժամանակակից բուրժուական իդեոլոգիայի ռեակցիոն բնույթի մասին։ Քիչ դասախոսություններ են կարդացվում նաև հակակրոնական թեմաներով։ Շատ դասախոսություններում պակասում է հարձակողական ոգին, մարտական շունչը։ Ավելին, ինչպես գրավոր, այնպես էլ բանավոր պրոպագանդայի մեջ քիչ ուշադրություն է դարձվում Հայաստանի բանվորական շարժման ու Կոմունիստական պարտիայի պատմության հարցերին։ Այս հանգամանքը շատ անհրաժեշտ է, որովհետև վերջին ժամանակներս առանձին մարդկանց կողմից սխալ հայացքներ են զարգացվում, որոնք հանգում են պարտիայի համար վաղուց պարզված մի շարք հարցերի ռևիզիային։

Այս բոլորից մեր պրոպագանդիստներն անհրաժեշտ եզրակացություններ պետք է հանեն և վառոդը միշտ չոր պահեն բուրժուական գաղափարախոսության արտահայտությունների դեմ, ինչ ձևով էլ որ նրանք հանդես գան։

## ՊԱՐՏՈՒՍՈՒՑՄԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԴԵՄՔԸ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆ Է

Ղեկավարվելով լենինյան այն ցուցումով, որ պարտիական պրոպագանդայի գործում կենտրոնական դեմքը և ուսուցման քաղաքական-գաղափարական բարձր մակարդակի ապահովողը պրոպագանդիստն է, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները մի շարք միջոցառումներ են կիրառել պրոպագանդիստական կադրերի հետ տարվող աշխատանքը բարելավելու ուղղությամբ։ Բավական է նշել, որ մեր պրոպագանդիստների 92 տոկոսից ավելին ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն և երկարամյա պրոպագանդիստական աշխատանքի փորձ։ Պրոպագանդիստական աշխատանքի են ներգրավված մոտ 4100 կոմունիստ։ Հիշատակության է արժանի այն, որ վերջին տարիներս պրոպագանդիստական աշխատանքի են առաջ քաշվել բազմաթիվ ինժեներներ, գյուղատնտեսներ և այլ մասնագետներ։

ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեն որոշ աշխատանք է կատարել պրոպագանդիստական կադրերի պատրաստման ուղղությամբ. միայն վերջին մեկ տարվա ընթացքում պրոպագանդիստական դասընթացներն ավարտել են շուրջ 520 պրոպագանդիստներ։ Բացի դրանից, ՀԿՊ Կենտկոմը հրավիրել է պրոպագանդիստական կադրերի սեմինարներ, խորհրդակցություններ, որտեղ նրանց համար դասախոսություններ ու զեկուցումներ են կարդացել ՀԿՊ Կենտկոմի քար-

տուղարները, բաժնի վարիչները, մի շարք մինիստրներ, խոշոր մասնագետներ և անվանի գիտնականներ։

Տեղերում պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքի, նրանց տեսական ու մեթոդական օգնություն ցույց տալու հիմնական ձևը, ինչպես միշտ, այնպես էլ այժմ, հանդիսանում է քաղկոմ-շրջկոմներին կից պրոպագանդիստների մշտական գործող սեմինարները։ Սեմինարները շատ տեղերում հրավիրվում են սիստեմատիկաբար, ընդ որում հաշվի են առնվում պրոպագանդիստների ցանկությունը և պահանջները։ Սեմինարների մասնակիցները դասախոսություններ են լսում, պատմում են իրենց փորձի մասին, ստանում տեսական ու մեթոդական օգնություն։ Բայց պետք է ասել, որ ընդհանուր առմամբ մենք դեռևս վատ ենք աշխատում պրոպագանդիստների հետ։ Մի շարք շրջկոմներ պահանջված հոգատարություն հանդես չեն բերում պրոպագանդիստների տեսական-գաղափարական աճի մասին, անհրաժեշտ մեթոդական օգնություն ցույց չեն տալիս նրանց։ Նրանց համար կազմակերպվող սեմինար պարապմունքները հաճախ անցնում են տաղտկալի ձևով, քննվում են միևնույն թեմաները, հանդես են գալիս միևնույն մարդիկ։ Գրեթե չի կատարվում պրոպագանդիստական լավագույն աշխատանքի փորձի ընդհանրացում, ռեֆերատների քննարկումներ և այլն։

Օգտվելով պարտիական կազմակերպությունների վերահսկողության բացակայությունից, շատ պրոպագանդիստներ անբարեխղճություն են ցույց տալիս իրենց հանձնարարված գործի նկատմամբ, ձախողում են պարապմունքները։ Ամասիայի շրջանի Բայթարի կոլտնտեսության ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակի պրոպագանդիստն է շրջկոմի հրահանգիչ Գ. Պապիկյանը։ Ամբողջ տարին նա միայն 6 պարապմունք է անցկացրել և այն էլ չոր ու սխեմատիկ, անբովանդակ։ Ախտայի ՄՏ կայանի պարտկազմակերպության խմբակի պրոպագանդիստ, նույն կազմակերպության քարտուղար Ջ. Ղազարյանը փետրվարին դադարեցրել է խմբակի աշխատանքը, իսկ թե ինչ է արել մինչև փետրվարը, հնարավոր չէ որոշել, քանի որ ոչ գրանցում կա, ոչ էլ պրոպագանդիստն ու ունկնդիրներն են որևէ բան հիշում։

Այս և նման կարգի այլ փաստերը ցույց են տալիս, որ պարտիայի մի քանի շրջկոմներ լուրջ մոտեցում չեն ցուցաբերում պրոպագանդիստական կադրերի ընտրության գործում։ Նրանք հաճախ թույլ պրոպագանդիստներ են առաջադրում նաև կոմերիտական քաղլուս ցանցի համար և ամբողջ տարվա ընթացքում նրանց հետ համապատասխան աշխատանք չեն կատարում։ Պետք է վերջ տալ երիտասարդների կոմունիստական դաստիարակության այդ կարևոր գործի նկատմամբ ոչ լուրջ վերաբերմունքին և պարտիական լուսավորության նոր ուսումնական տարին նախապատրաստելու հետ զուգընթաց՝ լավագույն ձևով նախապատրաստել նաև կոմերիտական քաղաքական լուսավորության նոր ուսումնական տարին։

## ԲԱՐԵԼԱՎԵԼ ՔԱՂԼՈՒՍ ԿԱԲԻՆԵՏՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Կոմունիստների քաղաքական ուսուցման գործում մեծ անելիքներ ունեն պարտիայի քաղկոմ-շրջկոմների քաղլուս տներն ու կաբինետները։ Այս տեսակետից իրենց դերը լավ են կատարում ՀԿՊ Երևանի Ստ. Շահումյանի անվան քաղլուս տունը, Լենինականի, Կիրովականի, Սպիտակի, Սևանի, Շամշադինի, Ստեփանավանի և Ղափանի քաղլուս կաբինետները։



Շահումյանի շրջանի քաղլուս-կաբինետը դարձել է կոմունիստների քաղաքական ուսուցման կազմակերպման օջախ։ Այստեղ պրոպագանդիստները, դասախոսները, կոնսուլտանտները, սեմինարավարները և ագիտատորները համապատասխան նյութեր են ստանում ինչպես մարքսիզմ-լենինիզմի տեսության, պարտիայի ու կառավարության որոշումների, այնպես էլ շրջանի էկոնոմիկայի, արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորների ձեռք բերած հաջողությունների մասին, որոնք օգտագործում են պարապմունքների, դասախոսությունների ու զրույցների ժամանակ։

Պարտիայի Սպիտակի շրջկոմի քաղլուսկաբինետը պլանային կարգով ցիկլային դասախոսություններ, անհատական ու խմբակային կոնսուլտացիաներ, տնտեսական ու տեսական կոնֆերանսներ է կազմակերպում ոչ միայն շրջկենտրոնում, այլև Լուսաղբյուրի ու Սպիտակի ՄՏ կայանների գոտու կոլտնտեսություններում։ Աշխատանքի այդ պրակտիկան լավ է նրանով, որ պարտիական լուսավորության ցանցում ընդգրկված կոմունիստներն ու անպարտիական ակտիվիստները մոտիկից օգնություն են ստանում և նրանց մեջ ճաշակ է զարգացվում դեպի տեսության հարցերը։

Շրջկոմի մշտական կոնսուլտանտներից շաբաթվա բոլոր օրերին հերթապահներ են լինում քաղլուսկաբինետում, որոնք պատասխանում են քաղաքական ինքնակրթությամբ զբաղվող ընկերներին հուզող ու հետաքրքրող հարցերին, օգնում են նրանց ավելի խոր ուսումնասիրելու պարտիայի պատմության ու տեսության հարցերը։ Քաղլուս կաբինետը տեսական ու մեթոդական հարցերում համապատասխան օգնություն է ցույց տալիս նաև պրոպագանդիստներին։ Սակայն այդ նույնը չի կարելի ասել Վեդու, Ախտայի, Ախուրյանի, Աշտարակի, Միկոյանի քաղլուս կաբինետների մասին։ Այստեղ շատ քիչ են կազմակերպվում ցիկլային դասախոսություններ ու զեկուցումներ, խմբակային ու անհատական կոնսուլտացիաներ, տեսական կոնֆերանսներ, չի ընդհանրացվում արտադրության առաջավորների, պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձը։ Այդ բացատրվում է ամենից առաջ նրանով, որ քաղլուս կաբինետների աշխատանքը դուրս է մնացել վերոհիշյալ շրջանների պարտիական կոմիտեների տեսադաշտից։

Անհրաժեշտ է արմատապես բարելավել այդ կաբինետների աշխատանքը, յուրաքանչյուր ամիս հաստատել նրանց աշխատանքային պլանները, հետևել դրանց կենսագործմանը, հասնել այն բանին, որ քաղլուս կաբինետները դառնան մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդայի իսկական օջախներ։

***

ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեն մեծ ուշադրություն է դարձնում պարտիական լուսավորության ցանցի համար ուսումնական ձեռնարկների հրատարակման վրա։ Այս տարի առաջին անգամ հայերեն թարգմանվեցին և հրատարակվեցին արդյունաբերության ու գյուղատնտեսության էկոնոմիկայի վերաբերյալ ուսումնական ձեռնարկները, «Օգնություն քաղդպրոցների ունկնդիրներին» նոր ձեռնարկը, մասսայական տիրաժով հրատարակվել են ՍՄԿՊ

Կենտկոմի պլենումների, ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիաների նյութերն ու որոշումները։ Վերը նշված ուսումնական ձեռնարկները հնարավորություն կտան պարտիական կազմակերպություններին՝ նոր ուսումնական տարում ավելացնելու համապատասխան տիպի խմբակների ու սեմինարների թիվը, էլ ավելի բարձրացնելու նրանց աշխատանքի բովանդակությունը։ Պրոպագանդիստական կադրերին տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով անհրաժեշտ է նոր ուսումնական տարում լույս ընծայել բրոշյուրներ և ձեռնարկներ, որտեղ ընդհանրացվի պրոպագանդիստական աշխատանքի լավագույն փորձը։

Այս ուղղությամբ մեծ գործ կարող է անել Հայպետհրատը։ Բայց Պետհրատում նստած ընկերները թերանում են այդ գործում։

Կոմունիստների քաղաքական ուսուցման գործում մեծ դեր ունեն կատարելու մեր թերթերն ու ամսագրերը։ Սխալ կլիներ ասել, թե նրանք ոչինչ չեն անում։ Բայց այն, ինչ անում են, դեռ շատ քիչ է և բնավ մեր պահանջները բավարարել չի կարող։ Մամուլն այդ ասպարեզում պետք է աշխատանք կատարի երկու ուղղությամբ. նա պարտավոր է նախ՝ լայնորեն լուսաբանել ուսուցման ընթացքը, ընդհանրացնել առաջավոր պարտիական կազմակերպությունների փորձը, սուր քննադատության ենթարկել թերությունները։ Եվ երկրորդ՝ պարբերաբար տեսական հոդվածներ տպագրել պարտիայի պատմության, քաղաքատնտեսության, պատմական ու դիալեկտիկական մատերիալիզմի և այլ հարցերի մասին։

Սակայն այդ երկու ուղղությամբ էլ մեր մամուլն անբավարար է աշխատում։ Մեր թերթերի էջերից վաղուց ի վեր անհասկանալի պատճառներով չքացել է հարց ու պատասխանը, կոնսուլտացիոն հոդվածները, լավագույն դասախոսությունների սղագրությունների տպագրությունը։

Մինչև պարտիական լուսավորության ուսումնական տարվա սկիզբը շատ կարճ ժամանակ է մնացել։ Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ավարտել նախապատրաստական աշխատանքը, անել ամեն բան, որ առաջիկա ուսումնական տարում ձեռք բերվեն նոր հաջողություններ կոմունիստների ինչպես գաղափարական կոփվածության, այնպես էլ նրանց պրակտիկ գործունեության մեջ։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԼԽԱՎՈՐ ՄԵԹՈԴԸ

## Վ. ԾԱՂԻԿՅԱՆ

Մեր պարտիայի առաջնորդ Վ. Ի. Լենինը բացառիկ նշանակություն էր տալիս մասսաների գիտակցականության բարձրացմանը և այդ ուղղությամբ պարտիական կազմակերպությունների աշխատանքի բարելավմանը։ Նա ուսուցանում էր, որ պարտիայի քաղաքականության հաղթանակը նախ և առաջ պայմանավորված է նրանով, որ աշխատավորական լայն մասսաները համոզված լինեն պարտիայի քաղաքականության ճշտությանը։ Երբ մասսաները համոզված են պարտիայի քաղաքականության ճշտությանը, ոչ մի բանի առաջ կանգ չեն առնում այն իրագործելու համար։

Կալվածատիրական և կապիտալիստական պետությունների կարգապահությունը հիմնված է ճնշման և սովի վրա։ «Բանվորական պետության կամ պրոլետարիատի դիկտատուրայի համար հնարավոր է կարգապահության այլ աղբյուր՝ գյուղացիներին համոզելը բանվորների կողմից, նրանց ընկերական դաշինքը» (Երկեր, հատ. 29, էջ 541)։

Դեռևս Սովետական իշխանության առաջին տարիներին Լենինը բազմիցս անդրադառնալով պարտիայի կողմից գյուղում տարվող քաղաքական աշխատանքին՝ շեշտում էր աշխատավոր գյուղացիներին դաստիարակելու, նրանց պարտիայի քաղաքականության ճշտության մեջ համոզելու անհրաժեշտությունը։ «Գյուղացիները սովորել են իրենց ինքնուրույն տնտեսատերեր զգալ։ Նրանք սովորել են իրենց հացն ազատ վաճառել, և ամեն մի գյուղացի այդ իր անկապտելի իրավունքն էր համարում։ Այժմ հարկավոր է հսկայական աշխատանք կատարել, նրանց վերջնականապես համոզելու համար, որ այն քայքայումից, որ մեզ թողել է պատերազմը, կարելի է դուրս գալ միայն տնտեսության կոմունիստական կազմակերպումով։ Այստեղ հարկավոր է գործել արդեն ոչ թե բռնությամբ, այլ միայն համոզելով» (Երկեր, հատ. 29, էջ 9)։

Գործելով այդ մեթոդով՝ պարտիան իր հետագա գործունեության ընթացքում գյուղում քաղաքական-բացատրական ծավալուն աշխատանք կատարեց։ Նա գյուղացիական բազմամիլիոն աշխատավորական բանակին համբերատար կերպով համոզեց, որ մանր, փոշիացած տնտեսություններով հնարավոր չէ դուրս գալ կարիքից, որ անհրաժեշտ է համախմբվել կոլեկտիվ տնտեսություններում, խոշոր չափերով մեքենայացնել գյուղատնտեսության աշխատատար պրոցեսներ, բարձրացնել երկրագործության կուլտուրան և վճռականորեն զարկ տալ հացահատիկի ու գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ավելացմանը։ Այլ կերպ ասած՝ պարտիան, հենվելով զարգացած ծանր ինդուստրիայի բազայի վրա, ձեռնամուխ եղավ գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցում անցկացնելու քաղաքականությանը։ Հսկայական ջանքերի շնորհիվ պարտիան աշխատավոր գյուղա-

ցիությանը կարողացավ համոզել, որ դա միակ ճիշտ քաղաքականությունն է, և հենց այդ համոզմունքն էլ ապահովեց գյուղի կոլեկտիվացման հաղթանակը, որն իր նշանակությամբ հավասար էր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիային։

Արդյունաբերության, ամենից առաջ ծանր ինդուստրիայի առավել զարգացման, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման շնորհիվ մեր երկրում կառուցվեց սոցիալիզմ և այժմ սոցիալիզմից աստիճանաբար անցում է կատարվում դեպի կոմունիստական հասարակարգը։ Այստեղ ևս, կոմունիստական հասարակարգի կառուցման գործում, առավել ևս անհրաժեշտ է դառնում մասսաների դաստիարակությունն ու նրանց գիտակցության բարձրացումը, որովհետև, ինչպես ուսուցանում է Վ. Ի. Լենինը, «Կոմունիզմը բռնությամբ չի հաստատվում« (Երկեր, հատ. 29, էջ 203)։

Կոմունիստական հասարակության կառուցումը պահանջում է ինչպես տնտեսական ու քաղաքական գործողությունների մեծ թափ ու ծավալ, այնպես էլ լայն մասսաների գիտակցականության բարձրացում, ստեղծագործական ակտիվ աշխատանք։

Վլադիմիր Իլյիչ Լենինը սովորեցնում էր, որ որքան մեծ է պատմական գործողությունների թափը, որքան լայն է նրա ծավալը, այնքան ավելի շատ է այդ գործողություններին մասնակցող մարդկանց թիվը, և որքան ավելի խոր է բարեփոխությունը, որ մենք ուզում ենք իրագործել, այնքան ավելի շատ հետաքրքրություն և գիտակցական վերաբերմունք պետք է առաջ բերել դեպի այդ բարեփոխությունը՝ նորանոր միլիոնների համոզելով նրա անհրաժեշտության մեջ։

Կյանքում խոր բարեփոխություններ մտցնելու անհրաժեշտության մեջ լայն մասսաներին համոզելու և նրանց այդ գործին ակտիվորեն մասնակից դարձնելու լավագույն օրինակ էր արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի բարելավելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների հրապարակումը և համաժողովրդական քննարկումը։ Համաժողովրդական քննարկման ընթացքում ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսները լիակատար հավանություն գտան սովետական ողջ ժողովրդի կողմից։ Ժողովուրդը համոզվեց այդ բարեփոխության անհրաժեշտության մեջ, որից հետո միայն ՍՍՌՄ Գերագույն Սովետի յոթերորդ սեսիան ընդունեց օրենք՝ «Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն էլ ավելի բարելավելու մասին»։

Հենվելով արդյունաբերության զարգացման բնագավառում ձեռք բերած խոշոր հաջողությունների վրա և հետևողականորեն կենսագործելով ծանր արդյունաբերության առավել զարգացման լենինյան գիծը՝ պարտիան վերջին տարիներս լուրջ միջոցառումներ ձեռնարկեց սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Ամենից առաջ անհրաժեշտ էր լուծել գյուղատնտեսության ամբողջ արտադրության հիմքը կազմող հացահատիկային տնտեսության շեշտակի վերելքի հարցը։ Այդ հարցի լուծման համար պարտիան ու կառավարությունն անհրաժեշտ համարեցին ի հաշիվ խամ ու խոպան հողերի յուրացման ընդարձակել հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները, վճռականորեն ավելացնել հացահատիկի արտադրությունը։ Այսպիսի լուրջ և պատասխանատու խնդրի լուծումն անհնարին էր առանց աշխատավորական լայն մասսաների մասնակցության։ Ահա թե ինչու



պարտիան քաղաքական-բացատրական աշխատանք կատարեց երկրի ազգաբնակչության և հատկապես մեր պանծալի երիտասարդության մեջ, նրանց ամենայն պարզությամբ բացատրեց, որ առանց հացահատիկի արտադրության ավելացման հնարավոր չէ զարգացնել անասնաբուծությունը, շատացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Համոզված լինելով պարտիայի ու կառավարության այդ նոր նախաձեռնության ճշտության, երկրի էկոնոմիկայի զարգացման գործում նրա բացառիկ անհրաժեշտության մեջ՝ հարյուր հազարավոր սովետական քաղաքացիներ, ամենից առաջ պատանիներ ու աղջիկներ, կամովին աշխատանքի մեկնեցին խամ ու խոպան հողերը։ Նրանց ժրաջան աշխատանքի շնորհիվ ամենակարճ ժամանակամիջոցում յուրացվեց 35,5 միլիոն հեկտար խամ ու խոպան հող, որը հնարավորություն տվեց խոշոր չափով ավելացնելու հացահատիկի արտադրությունը և ապահովելու պետությանն անհրաժեշտ հացի ռեզերվների կուտակումը։

Պարտիայի ու կառավարության գործադրած վճռական միջոցառումների շնորհիվ զգալի չափով բարձրացել է նաև մսի, կաթի, բրդի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։ Երկրի առաջավոր շատ կոլտնտեսություններ վերջին տարիների ընթացքում կրկնապատկել ու եռապատկել են գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրությունը։

Հաշվի առնելով գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ եղած անսպառ ռեզերվներն ու առաջավոր կոլտնտեսությունների փորձը՝ Կոմունիստական պարտիան մարտական խնդիր դրեց՝ յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել աշխարհի կապիտալիստական ամենազարգացած երկրին՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այսպիսի լուրջ խնդիր դնելով՝ պարտիան գյուղատնտեսության աշխատողներին համբերատար կերպով համոզում է, որ այդ խնդիրը միանգամայն ռեալ է, որ այն հնարավոր է լուծել։ Այս ուղղությամբ պարտիական կազմակերպությունների ծավալած քաղաքական-մասսայական աշխատանքը դրական արդյունք է տալիս։

Երկրի բոլոր կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները համաժողովրդական մրցության են դուրս գալիս շեշտակիորեն բարձրացնելու հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց արտադրվող գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Այսպես, օրինակ, Տամբովի մարզի Կոմինտերնի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1957 թվականին արտադրել 60 ցենտներ, իսկ 1960 թվականին՝ 170 ցենտներ միս, կամ մսի համախառն արտադրանքն ավելացնել 4,5 անգամ։

Հայաստանի Շահումյանի շրջանի գյուղատնտեսության աշխատավորները պարտավորվել են յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց 1957 թվականին արտադրել 85 ցենտներ միս, 410 ցենտներ կաթ, 1958 թվականին՝ 100 ցենտներ միս և 445 ցենտներ կաթ։ Նույն շրջանի Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է ընթացիկ տարում 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 115 ցենտներ միս, 1050 ցենտներ կաթ։ Նոր Բայազետի շրջանի Աղկալա գյուղի Ի. Ստալինի անվան կոլտնտեսությունը պարտավորվել է 1957 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրել 220 ցենտներ կաթ, 60 ցենտներ միս,

որից 37 ցենտները խոզի միս, 1959 թվականին համապատասխան կերպով միս՝ 11 ցենտներ, որից խոզի միս՝ 62,5 ցենտներ, կաթ՝ 428 ցենտներ, իսկ 1960 թվականին՝ միս 114 ցենտներ, որից խոզի միս՝ 65 ցենտներ և կաթ՝ 476 ցենտներ։

Աղկալայի կոլտնտեսության այսպիսի պարտավորություն վերցնելը ուշագրավ է այն տեսակետից, որ նա դեռ նույնիսկ 1956 թվականին անասնաբուծական քիչ մթերքներ ստացավ։ Սակայն մյուս կոլտնտեսությունների, ինչպես և իր իսկ 1957 թվականի աշխատանքի փորձը կոլտնտեսականներին հաստատ համոզեց, որ իրենք կարող են հենց այս տարվանից զգալի չափով բարձրացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Ընթացիկ տարվա անցած ամիսների փորձը ցույց է տալիս, որ նրանք ֆուրաժային յուրաքանչյուր կովի կաթնատվությունը կբարձրացնեն մոտ 1000 կիլոգրամով։

Վ. Ի. Լենինը գրում էր, որ «... պատերազմը տնտեսական ճակատում ավելի դժվար և ավելի երկարատև կլինի. այդ ճակատում հաղթելու համար հարկավոր կլինի ավելի մեծ թվով բանվորների ու գյուղացիների դարձնել ինքնագործունյա, ակտիվ և նվիրված» (Երկեր, հատ. 31, էջ 632—633)։

Լենինի այս իմաստալից խոսքերի պրակտիկ կենսագործման օրինակ է ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի 6-ի որոշումը՝ Գյուղատնտեսության պլանավորման, կոլտնտեսային արտադրության ու կառավարման գործում կոլտնտեսականների նախաձեռնության ու ակտիվության է՛լ ավելի զարգացման մասին։ Այս որոշմամբ կոլտնտեսականներն իրավունք ստացան սահմանելու աշխատանքի վարձատրման ձևերն ու չափը, ինչպես նաև տնամերձ հողամասի չափը, աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու անհրաժեշտ միջոցառումների կենսագործումը, պլանների կազմումը և այլն։ Այս ամենը, ինչ խոսք, բարձրացրին կոլտնտեսականների ակտիվությունը կոլտնտեսությունների կառավարման գործում, որը մեծապես նպաստում է Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության անխախտ կիրառմանը։ Բայց, ցավոք սրտի, դեռևս կան առանձին կոլտնտեսությունների ղեկավարներ, որոնք սրա վրա ուշադրություն չեն դարձնում, կարևոր հարցերը լուծում են միանձնաբար, տնտեսությունը ղեկավարում են վարչարարությամբ, միայն կարգադրություններ ու հրամաններ արձակելով։ Այդպես էր վարվում, օրինակ, Նոր Բայազետի շրջանի Արծվաքար գյուղի կոլտնտեսության նախագահ Խ. Հովհաննիսյանը, որն այդպիսով կտրվեց կոլտնտեսականներից, գյուղական ակտիվից և կորցրեց իր հենարանը և բնականորեն սկզբնական պարտիական կազմակերպության ղեկավար օրգանի ընտրության ժամանակ նա կոմունիստների կողմից անհրաժեշտ վստահության չարժանացավ և չընտրվեց բյուրոյի կազմում։

Պարտիայի շրջանային կոմիտեն չէր կարող անտարբեր անցնել այս փաստի կողքով։ Նա համապատասխան միջոցներ ձեռք առավ և պարտիական կազմակերպության միջոցով ուժեղացրեց կոլտնտեսությանը ցույց տրվող ղեկավարությունը, օգնեց ընկ. Խ. Հովհաննիսյանին՝ վերացնելու իր աշխատանքի թերությունները։

Երբեք չպետք է մոռանալ, որ այս կամ այն միջոցառումն անցկացնելու համար նախ պետք է համոզել մեծամասնությանը։ Եթե մեծամասնությունը համոզված է, որ տվյալ միջոցառումն անհրաժեշտ է, ապա գործի հաջողությունն արդեն լիովին ապահովված է, իսկ եթե փոքրամասնությունը դեռ չի



հասել գիտակցության այդ աստիճանին և համոզված չէ անցկացվող միջոցառման ճշտությանը, ապա նրան պետք է ենթարկել մեծամասնության կամքին։

Կյանքում շատ հաճախ ենք հանդիպում այնպիսի երևույթների, երբ որոշ ղեկավար աշխատողներ ընդունելով մարդկանց համոզելու մեթոդով աշխատեցնելու կարևորությունը, դրա հետ միասին երբեմն ցուցաբերում են քաղաքական անտարբերություն, չեն փորձում հարկադրել անկարգապահ տարրերին։ Այդ կարգի ղեկավարները հաճախ հավատում են առանձին մարդկանց սուտ խոստումներին, փաստորեն քարշ են գալիս հետամնաց տարրերի հետևից և վերջիններիս չեն ստիպում ենթարկվել մեծամասնության կամքին, գնալ հասարակությանը համընթաց։

Այսպիսի երևույթ կար Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի կոլտնտեսության ղեկավարների մոտ։ Կոլտնտեսության նախագահ Ա. Գևորգյանը չէր ուզում աշխատանքում թերացողների, առաջավոր փորձի արմատավորումը ձախողողների սրտին դիպչել։ Պահանջկոտության բացակայությունը և անբարեխիղճ մարդկանց նկատմամբ ներողամտությունը հասցրեց այնտեղ, որ 1956 թվականին կոլտնտեսությունում ընկավ աշխատանքային կարգապահությունը, բերքատվությունն իջավ և տեղի ունեցավ անասունների զգալի անկում։

Լենինն ուսուցանել է, որ մեր օրերում հարկադրանքի միջոցները չեն սահմանափակվում պետական, ադմինիստրատիվ միջոցառումներով, նրանք դրսևորվում են նաև պարտիական ներգործությամբ։ Սակայն պետք է զգույշ մոտենալ հարկադրանքին և հարկադրել այնպես, որ այն օգնի գործի հաջողությանը, հարկադրել այն ժամանակ, երբ նախօրոք մեծամասնությունն արդեն համոզված է անցկացվող միջոցառման անհրաժեշտությանը։ «Ամենից առաջ մենք պետք է համոզենք և ապա հարկադրենք, մենք պետք է ինչպես էլ որ լինի, նախ համոզենք և ապա հարկադրենք»,— ասում էր Վ. Ի. Լենինը։ Խնդիրն այն է, որ հարկադրանքը զուգակցվի համոզման հետ, որի առկայության դեպքում հաջողությունն անպայման ապահովված է։

Մասսաներին համոզելու կարևոր միջոցներից մեկը քաղաքական աշխատանքն է։ Պրակտիկան ցույց է տալիս, որ պարտիայի դիրեկտիվների կենսագործման համար մասսաներին պետք է համոզել, նրանց մեջ ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանք կատարել։ Այդ գործում երբեմն չպետք է խուսափել կրկնություններից։ Հաճախ որոշ ղեկավարներ, ինչպես նաև ագիտատորներ ու պրոպագանդիստներ կարծում են, թե այն, ինչ իրենց հայտնի է, հայտնի է նաև բոլորին։ Սակայն իրականում այդպես չէ։ Առաջադրված խնդրի կատարման շահից ելնելով կարիք է զգացվում լայն մասսաներին նույն հարցը մի քանի անգամ բացատրել, կրկնողություններ կատարել։ «Առանց ահագին թվով կրկնությունների, առանց որոշ չափով ետ դառնալու, առանց ստուգման, առանց առանձին ուղղումների, առանց նոր պրիոմների, առանց հետամնացներին և անպատրաստներին համոզելու համար ուժերը լարելու՝ շինարարություն ծավալել չի կարելի» (Լենին, Երկեր, հատ. 31, էջ 627)։

Մասսաների մոբիլիզացման, դաստիարակության ու համոզման գործում խոշոր նշանակություն ունի ղեկավար աշխատողների սերտ կապը նրանց հետ, ղեկավարների ելույթները մասսայի առջև։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ

«Անձնական ներգործությունը և ելույթը ժողովներում չափազանց շատ բան է նշանակում քաղաքականության մեջ։ Առանց դրանց չկա քաղաքական գործունեություն» (Երկեր, հատ. 34, էջ 368)։

Պարտիական ղեկավարը մասսաների աչքին երևում է որպես պարտիայի ներկայացուցիչ, նրա իդեաների համար ակտիվ պայքարող։ Եթե պարտիական ղեկավար աշխատողը չի մասնակցում քաղաքական-լուսավորության կազմակերպման գործին, ուրեմն նա չի կատարում իր անմիջական պարտականությունը։ Մասսաների քաղաքական լուսավորության հարցերով պետք է զբաղվեն բոլոր ղեկավար աշխատողները, առանձնապես պարտիական ղեկավար աշխատողները՝ սկսած պարտիական կազմակերպության քարտուղարից։ Այս ուղղությամբ Նոր Բայազետի շրջանում որոշակի աշխատանք է կատարվում։ Այստեղ սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները, շրջանի ղեկավար աշխատողները սիստեմատիկորեն քաղաքական ու տնտեսական հարցերի շուրջը զեկուցումներով հանդես են գալիս աշխատավորական ժողովներում, նրանց պարզաբանում են օրվա հրատապ հարցերը և համոզում, որ միայն կազմակերպված ու համառ աշխատանքի միջոցով հնարավոր է հասնել պարտիայի ու կառավարության առաջադրված խնդիրների կատարմանը, հանրային տնտեսության ու կոլտնտեսականների եկամուտների բարձրացմանը։ Լավ արդյունք տվին կոլտնտեսականների ընդհանուր ժողովները, ուր շրջկոմի բյուրոյի անդամները հանդես եկան զեկուցումներով՝ նվիրված տվյալ կոլտնտեսության առջև դրված խնդիրների կատարմանը։ Այդ և մի շարք այլ միջոցներով պարտիական կազմակերպությունները բարելավեցին մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքը։

Մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքի բարելավումը իր հետ բերեց նաև տնտեսական աշխատանքների բարելավում։ Այսպես, եթե 1954 թվականին հացահատիկի միջին բերքատվությունը շրջանում կազմում էր 4 ցենտներ, ապա 1955 թվականին կազմեց 11,7 ցենտներ։ Բարձրացավ նաև ծխախոտի, կարտոֆիլի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը, իսկ կաթի համախառն արտադրանքն այդ նույն ժամանակամիջոցում ավելացավ 35 տոկոսով։

Մասսաներին համոզելու գործում կարևոր դեր է խաղում ղեկավարների անձնական օրինակը, նրանց վերաբերմունքը դեպի հանրօգուտ աշխատանքը, սոցիալիստական հասարակության համակեցության կանոնների ու նորմաների պահպանումը։ Փորձը ցույց է տալիս, որ այն կոլտնտեսությունում, որտեղ կան լավ նախագահ և պարտիական կազմակերպության լավ քարտուղար, գործերը հաջող են գնում, և ընդհակառակը, որտեղ այդպիսիք չկան, դրությունն անբարեհաջող է։ Այսպես, օրինակ, Նոր Բայազետի շրջանի Բատիկյան գյուղում 1955 թվականին կոլտնտեսության և գյուղական Սովետի նախագահներն զբաղվում էին հարբեցողությամբ, չէին մտահոգվում կոլտնտեսային արտադրության կազմակերպմամբ, իսկ պարտկազմակերպության քարտուղարը վարում էր երկդիմի քաղաքականություն, զբաղվում էր բամբասանքով, կոնկրետ միջոցներ չէր ձեռնարկում գյուղի ղեկավարների մոտ տեղ գտած այդ այլանդակ երևույթները վերացնելու համար։ Դա վատ օրինակ էր տալիս կոլտնտեսականներին, որոնց համար ղեկավարների արտասանած «ճիշտ» ճառերը արդեն համոզեցուցիչ չէին։ Այս բոլորի հետևանքով կոլտնտեսությունում կարգապահությունն ընկավ, կերի կուտակման պլանը խիստ



թերակատարվեց, ցածր եղավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասունների մթերատվությունը։ Պարտիայի շրջկոմը քննարկեց կոլտնտեսության ղեկավարների վարքագծի հարցը և այն քննության դրեց կոլտնտեսականների, պարտիական կազմակերպության ժողովում ու գյուղական Սովետի սեսիայում։ Գյուղի երեք ղեկավարներն էլ՝ Պ. Սերոբյանը, Ջ. Պետրոսյանը և Ու. Հարությունյանը, որոնք պարտիականների ու անպարտիականների մեջ կորցրել էին իրենց հեղինակությունը, այլևս չընտրվեցին ղեկավար աշխատանքի։ Նրանց փոխարեն ղեկավար աշխատանքի առաջ քաշվեցին երեք նոր երիտասարդ ընկերներ, որոնք իրենց վարքով ու նվիրված աշխատանքով դրական օրինակ են տալիս հասարակությանը, հետևողականորեն պայքարում են գյուղի գործերի վիճակը բարելավելու համար, և այդ արդեն տալիս է իր դրական արդյունքը։

Մասսաներին համոզելու, դաստիարակելու և աշխատանքում եղած թերությունները վերացնելու գործում կարևոր նշանակություն ունի բոլշևիկյան առողջ, համոզիչ քննադատությունը, որը բխում է գործի շահից։ Այսպես, Հացառատ գյուղի կոլտնտեսության առանձին ղեկավարներ, իսկ երբեմն էլ որոշ շարքային կոլտնտեսականներ թերանում էին աշխատանքում։ Հաճախ հանրային տնտեսության գործը թողած՝ նրանք զբաղվում էին անհատական խծբծանքներով, մեկը մյուսին վարկաբեկելով։ Այսպիսի պայմաններում, բնականաբար, գործը տեղից չէր շարժվում։ Կոլտնտեսության կոմունիստները և հենց իրենք՝ կոլտնտեսականներն իրենց ժողովներում խիստ քննադատության ենթարկեցին այդպիսի ընկերներին, ցույց տվին նրանց սխալը և պահանջեցին ազնվորեն աշխատել և միշտ էլ ելնել հանրային տնտեսության շահերից։ Ճիշտ, սկզբունքային քննադատությունն օգնեց այդ ընկերներին, և նրանք այժմ ազնվորեն են կատարում իրենց վրա դրված պարտականությունները։

Սակայն քիչ չեն դեպքերը, երբ առանձին հետամնաց, քաղաքական ցածր մակարդակի վրա գտնվող մարդիկ, ելնելով իրենց անձնական նեղ շահերից, ի չարն են գործադրում բոլշևիկյան այդ հատու զենքը, չխորշելով անգամ լավագույն աշխատողներին անտեղի վարկաբեկելուց։ Բերենք մի փաստ։ Նոր Բայազետի շրջանի Կ. Մարքսի անվան կոլտնտեսության դաշտավարական բրիգադայի բրիգադիր Ա. Հարությունյանը 1955 թվականին հաճախ չէր կատարում կոլտնտեսության նախագահի իրավացի կարգադրությունները, ինչպես նաև անբավարար էր ղեկավարում բրիգադայի աշխատանքը, որի համար ենթարկվեց պարտիական տույժի։ 1957 թվականին կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը մեկ անգամ էլ է անդրադառնում Ա. Հարությունյանի հարցին այն բանի համար, որ նա քարահավաք կազմակերպելու գործում ցուցաբերել է անկարգապահություն, չի կատարել պարտիական կազմակերպության որոշումը, դեռ ավելին, ստուգումը պարզեց, որ նա զբաղվել է աչքակապությամբ և սուտ տվյալներ է տվել քարահավաքի մասին։ Այս բոլորի համար նրան ազատեցին բրիգադիրությունից։ Ա. Հարությունյանը փոխանակ զգալու իր սխալները, սկսեց ժողովներում «քննադատել» ու ահաբեկել կոլտնտեսության նախագահին և վարկաբեկիչ դիմումներ գրել նրա նկատմամբ։ Շրջկոմի բյուրոն քննության առավ այդ հարցը, հաստատեց Հարությունյանին բրիգադիրությունից ազատելու որոշումը և պարտիական

կազմակերպությանը հանձնարարեց՝ քննության առնել նրա պարտիական
հարցը՝ կոմունիստին անվայել վարքագիծ ցուցաբերելու համար։

Իբրև կանոն շրջկոմի այդ կարգի որոշումներն ուղարկվում են բոլոր
սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ իրենց ժողովներում ըն-
թերցելու համար։ Դա մյուսների համար դաստիարակչական նշանակություն
է ունենում։

Մասսաների դաստիարակության գործում կարևոր նշանակություն ունի
արտադրական պրոպագանդան։ Դեռևս իր ժամանակին Լենինը դնում էր
արտադրական պրոպագանդան համեմատական մասշտաբով կազմակերպելու
հարցը։ Արտադրական պրոպագանդան հզոր միջոց է առաջավոր փորձը ար-
տադրության մեջ ներդնելու, հենց այդ փորձով լայն մասսաներին համոզելու
և ժողովրդի կենսամակարդակն ավելի բարձրացնելու գործում։

Լենինը գտնում էր, որ առաջավոր փորձի արմատավորումը չի կարելի
համարել միայն կամավոր, ինքնահոսի կարգով անցկացվող միջոցառում.
«մենք կարող ենք և պետք է հասնենք այն բանին, որ օրինակի ուժը դառնա,
նախ՝ բարոյական, իսկ հետո՝ նաև հարկադրական եղանակով մտցվող մի
տիպար աշխատանքի կազմակերպման գործում...» (Լենին, Երկեր, հատ. 27
էջ 239)։ Լենինը պահանջում էր հասնել այն բանին, որ առաջավոր փորձի
փոխանակումը և ներդրումը ծավալվի ամենուրեք և դառնա պարտադիր։ Այդ
ուղղությամբ մեր երկրում հսկայական աշխատանք է կատարված։ Բայց պար-
տիան երբեք դրանով չի հանգստանում և իր կազմակերպություններից պա-
հանջում է ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքի միջոցով օգնել
արտադրության մեջ գիտության և առաջավոր փորձի սիստեմատիկ ներդրմանը։

Թե առաջավորների փորձի փոխանակումն ինչպիսի մեծ նշանակություն
ունի արտադրության ընդհանուր բարձրացման գործում, այդ երևում է հետև-
յալ օրինակից։ Նոր Բայազետի շրջկենտրոնի կոլտնտեսությունը միշտ էլ
ծխախոտի բարձր բերք է ստանում։ Կոլտնտեսության առաջավոր օղակավար,
Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Հ. Զաքոյանի օղակը նույնիսկ անբա-
րենպաստ տարում հեկտարից ստացել է ո՛չ պակաս քան 20 ցենտներ բերք,
իսկ բարենպաստ տարիներին՝ 40—45 ցենտներ։ Մինչդեռ շրջանում 1955
թվականին միջին հաշվով ամեն մի հեկտարից բերք է ստացվել 11,1 ցենտ-
ներ։ Պարզ է, թե ինչքան կբարձրանար շրջանի կոլտնտեսությունների ծխա-
խոտից ստացվող եկամուտը, եթե բոլոր կոլտնտեսությունների ծխախոտա-
գործական օղակներն աշխատեին Հ. Զաքոյանի օղակի օրինակով։ Հաշվի
առնելով այս՝ պարտշրջկոմի բյուրոն անցյալ տարվա գարնանը լսեց Հ. Զա-
քոյանի զեկուցումը իր օղակի աշխատանքի փորձի մասին և կոնկրետ միջո-
ցառումների դիմեց այդ փորձը մյուս կոլտնտեսություններում արմատավորե-
լու համար։ Շրջանային թերթը մի էջ նվիրեց ընկ. Զաքոյանի փորձին, իսկ
Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության Նոր Բայա-
զետի բաժանմունքը հրապարակեց «Գյուղատնտեսության առաջավորի բյու-
լետեն» խորագրով թերթիկ, որը նույնպես նվիրված էր Զաքոյանի օղակի
փորձին։ Դրանից հետո շրջանի բոլոր ծխախոտագործական օղակավարները
հավաքվեցին Բայազետի ծխախոտի դաշտում և ծանոթացան Զաքոյանի աշ-
խատանքին։ Այս դեռ բավական չէր. 1957 թվականի գարնանը Նոր Բայազե-
տում և Սարուխանում կազմակերպված ծխախոտագործների ենթաշրջանային
հավաքներում Հ. Զաքոյանը, ինչպես և Նոր Բայազետի մյուս առաջավոր



ծխախոտագործ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Հ. Քոլոզյանը պատ-
մեցին իրենց աշխատանքի փորձի մասին և բոլորին համոզեցին, որ լավ աշ-
խատելու դեպքում ընթացիկ տարում յուրաքանչյուր հեկտարից կարելի է 7
ցենտներ ավելի բերք ստանալ, քան ստացվել է 1956 թվականին։

Շրջանի շատ ծխախոտագործներ, ընդօրինակելով Զաքոյանի և Քոլոզ-
յանի աշխատանքի փորձը, ընթացիկ տարում ապահովեցին հողի լավ մշա-
կում, յուրաքանչյուր հեկտարի վրա տնկեցին 150—160 հազար սածիլ և պայ-
մաններ ստեղծեցին բարձր բերք ստանալու համար։

Պակաս համոզիչ նշանակություն չունեցավ եգիպտացորենի մշակության
փորձը։ Հացառատի կոլտնտեսությունը եգիպտացորենի մշակության առա-
ջին տարում մեկ հեկտարից ստացավ 113 ցենտներ կանաչ մասսա և մոտ
50 ցենտներ կաթնամոմային հասունությամբ կողրեր։ Նույն կոլտնտեսու-
թյան դաշտավարական № 4 բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացավ
200 ցենտներ սիլոսի կանաչ մասսա և 50 ցենտներ կաթնամոմային հասունու-
թյամբ կողրեր։ Այրիվանքի կոլտնտեսության դաշտավարական № 1 բրիգա-
դան ծովի մակերևույթից 2500 մետր բարձր հողերում ցանած եգիպտացորենի
ամեն մի հեկտարից ստացավ 170 ցենտներ կանաչ մասսա։

Ճիշտ է, բերքատվության այս թվերը դեռևս մեծ չեն, բայց բոլորին հա-
մոզեցին, որ այդ արժեքավոր կուլտուրան շրջանում զարգացման լայն հեռա-
նկարներ ունի և կերի կայուն բազա ստեղծելու կարևոր միջոցներից մեկն է։
Այժմ շրջանի կոլտնտեսություններում եգիպտացորենի ցանքի անհրաժեշտու-
թյան մասին ոչ մի խելքը գլխին մարդ չի վիճում, և ամեն ինչ անում են բեր-
քատվությունը բարձրացնելու համար։

«Հայաստանի կոլտնտեսական» ամսագիրը իր 1957 թվականի ապրիլ
ամսվա համարում տպագրել էր «Ինչպես կազմակերպել տավարի արոտային
գիրացումը» հոդվածը, ուր համոզիչ կերպով ցույց էր տրված, թե ինչպես
Սիսիանի շրջանի Բազարչայի կոլտնտեսությունում և Մարտունու շրջանի
անասնաբուծական տոհմային տնտեսությունում արոտի ժամանակ անասուն-
ների արածումը ճիշտ կազմակերպելու շնորհիվ 194—263 կիլոգրամ քաշ
ունեցող տավարի կշիռը 3—4 ամսվա ընթացքում հասցնում են 331—378 կի-
լոգրամի։ Այս փորձը լավ ընդունվեց Նոր Բայազետի շրջանի կոլտնտեսու-
թյուններում և այժմ գրեթե բոլոր կոլտնտեսությունները նույն մեթոդով կազ-
մակերպում են տավարի արոտային գիրացումը։

Բազմաթիվ այլ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես առաջավորների
փորձը կոլտնտեսային լայն մասսաներին համոզում է, որ հնարավոր է խոշոր
չափով բարձրացնել դաշտերի բերքատվությունը և անասնաբուծության մթե-
րատվությունը։

Մասսաներին համոզելու գործում առաջավոր փորձի դերը մեծ է ոչ մի-
այն արտադրական, այլև աշխատանքի կազմակերպման ու վարձատրման
հարցերում։ Ընդօրինակելով Միության առաջավոր կոլտնտեսությունների
փորձը՝ Նոր Բայազետի շրջանի կոլտնտեսություններն իրենց կանոնադրու-
թյունները մշակելիս աշխատանքի կազմակերպման և ընդհանրապես կոլտըն-
տեսային շինարարության բնագավառում մի շարք նոր միջոցառումներ մշա-
կեցին։ Այդ միջոցառումներից են՝ կոլտնտեսության վարչական աշխատող-
ների վարձատրման ցենտներային սիստեմի կիրառումը, աշխօրերի պարտա-
դիր մինիմումի զգալի չափով բարձրացումը, տնամերձ հողամասի որոշ չափով

պակասեցումը, կոլտնտեսությունում անբարեխիղճ աշխատողների նկատմամբ կոլտնտեսության բարիքներից օգտվելու իրավունքի սահմանափակումը, ծերունիների և անաշխատունակ կոլտնտեսականների համար կենսաթոշակի սահմանումը և այլն, որոնք դրական արդյունք են տալիս։ Այսպես, եթե 1955 թվականին շրջանում կոլտնտեսությունների աշխատանքներին բոլորովին չէին մասնակցել 837 կոլտնտեսական, ապա 1956 թվականին այդ թիվը իջավ 347-ի, իսկ այս տարի այդ թիվը առավել կնվազի, որովհետև գյուղատնտեսական աշխատանքների ընթացքը ցույց է տալիս, որ առաջներում կոլտնտեսություններում չաշխատողների զգալի մասն արդեն կապվել է հանրային աշխատանքի հետ։ Կոլտնտեսության ղեկավար կադրերի ցենտներային սիստեմով վարձատրելու և վարչական ավելորդ հաստիքները վերացնելու շնորհիվ բավականին աշխօրեր խնայվեցին։

Սակայն առաջավոր փորձի կիրառմանը երբեմն խիստ խանգարում ու դիմադրում է բյուրոկրատիզմը, լճացածությունը։ Որոշ հետամնաց մարդիկ ուղղակի կամ անուղղակի դիմադրում են նոր, ավելի պրոգրեսիվ միջոցառումներին։ Օրինակ, երբ մտցվեց կոլտնտեսային ղեկավար աշխատողների վարձատրման ցենտներային սիստեմ, որոշ աշխատողներ, մանավանդ կոլտնտեսային միջին օղակի ղեկավար աշխատողներ, տեսնելով, որ այժմ չեն կարող առանց լարված աշխատանքի նախորդ տարիների չափ աշխօրեր վաստակել, սկսեցին դժգոհել, անգամ փորձեր եղան հրաժարվել ղեկավար աշխատանքից։ Այսպիսի դեպքեր եղան Արծվաքարի, Սարուխանի, Կարմիրի, Մուխանի կոլտնտեսություններում։ Մուխանի կոլտնտեսության դաշտավարական բրիգադիրներ Ա. Մարգարյանը, Ա. Ավետիսյանը պահանջեցին իրենց ազատել աշխատանքից, կարծելով, որ դրանով կնեղեն պարտիական կազմակերպությանն ու կոլտնտեսության վարչությանը և վերջիններս ստիպված կլինեն հրաժարվել վարձատրման ցենտներային սիստեմից։ Սակայն այդպես չստացվեց։ Պարտիական կազմակերպության բյուրոն որոշեց կոմունիստներ Ա. Մարգարյանի և Ա. Ավետիսյանի վարքագիծը քննության առնել պարտիական ժողովում, և նրանք տեսնելով պարտիական կազմակերպության միանգամայն սկզբունքային վերաբերմունքն ու պահանջկոտությունը՝ հրաժարվեցին իրենց սխալ, ո՛չ պարտիական վարքագծից և խնդրեցին իրենց թողնել ղեկավար աշխատանքում։

Պարտիական աշխատանքը աշխատանք է մարդկանց հետ։ Այդ աշխատանքում հիմնականը պետք է լինի համոզման մեթոդը։ Մասսաներին համոզելու, նրանց աշխատանքային խանդավառությունը գլխավորելու համար պարտիական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները պետք է վարպետորեն գործի դնեն պրոպագանդայի ու ագիտացիայի փորձված ձևերն ու մեթոդները և հասնեն այն բանին, որ սովետական ամեն մի քաղաքացի, որ պոստում էլ աշխատելիս լինի, անընդհատ բարձրացնի աշխատանքի արտադրողականությունը, ավելացնի նյութական բարիքների արտադրությունը և դրանով իսկ է՛լ ավելի հզորացնի մեր սոցիալիստական չքնաղ Հայրենիքը։

---

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԱՇ. ՍԱՐԳՍՅԱՆ*

Տնտեսության նկատմամբ պարտիայի շրջանային կոմիտեի ղեկավարությունը բնորոշվում է տնտեսության զարգացմամբ և աշխատավորության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմամբ։ Տարեցտարի բարձրանո՞ւմ է արդյոք հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը, աճո՞ւմ է հանրային անասնաբուծության մթերատվությունը, ավելանո՞ւմ են կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների եկամուտները — ահա սրանցով է որոշվում շրջանի պարտիական և սովետական օրգանների գործունեությունը։

Ներկայումս գյուղում տարվող աշխատանքն ընթանում է՝ գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու, բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու վերաբերյալ Կոմունիստական պարտիայի առաջադրած խնդիրները կենսագործելու նշանաբանով։

Վերջերս ՀԿՊ Կենտկոմի բյուրոն քննության առավ պարտիայի Ալավերդու շրջկոմի հաշվետվությունը և նշեց, որ շրջանային կոմիտեն, շրջանային Սովետի գործկոմն ու ՄՏ կայանի դիրեկցիան անբավարար են աշխատել ՍՄԿՊ XX համագումարի որոշումները կյանքում իրագործելու ուղղությամբ։ Դրա հետևանքով գյուղատնտեսության ղեկավարման, կոլտնտեսությունները կազմակերպորեն և տնտեսապես ամրապնդելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումները կենսագործելու գործում լուրջ սխալներ ու թերություններ կան։

Պարտիայի շրջանային կոմիտեն փոխանակ սիստեմատիկորեն ղեկավարելու և ուղղություն տալու սովետական օրգաններին ու ՄՏ կայանի դիրեկցիային, բարձրացնելու նրանց դերն ու պատասխանատվությունը գյուղատնտեսության ղեկավարման գործում, դիմազրկել է նրանց՝ իր վրա վերցնելով նրանց անմիջական ֆունկցիաները։ Իրականում շրջսովետի գործադիր կոմիտեն և ՄՏ կայանի դիրեկցիան աննշան չափով են զբաղվել շրջանի տնտեսության կարևորագույն հարցերով։ Նրանք փաստորեն մի կողմ են քաշվել շրջանի գյուղատնտեսության զարգացումը պլանավորելու գործից՝ այն վերապահելով կոլտնտեսությունների վարչություններին։ Մի շարք կոլտնտեսությունների վարչություններ օգտվելով այդ հանգամանքից՝ գյուղատնտեսական աշխատանքները պլանավորելիս իրենց ունեցած հնարավորություններից ավելի պակաս պլաններ են ընդունել. իջեցրել են անասունների գլխաքանակի աճման պլանը և կրճատել տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունները,

միջոցներ չեն ձեռնարկել բարձրացնելու անասունների մթերատվությունը և
հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։

Շրջկոմը լավ չիմանալով կոլտնտեսությունների հնարավորությունները՝
շատ ցածր պլաններ է ընդունել՝ թույլ տալով պլանավորման գործում լուրջ
սխալներ։ Այսպես, օրինակ, կոլտնտեսությունները 5-ամյա պլանով նախա-
տեսել են 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրել 160 ցենտներ
կաթ, 11.100 ձու, 269 կիլոգրամ բուրդ, իսկ դրան հակառակ շրջկոմի պլենումը
որոշում է ընդունել՝ արտադրել 150 ցենտներ կաթ, 7000 ձու և 240 կիլոգրամ
բուրդ։ Միայն ՀԿՊ Կենտկոմի միջամտությունից հետո է, որ ուղղվել է այդ
սխալը։

1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ հացահատիկային
կուլտուրաների համախառն բերքը Ալավերդում կրճատվել է 17,7 տոկոսով,
ծխախոտի հումքի համախառն արտադրանքը՝ 38,2 տոկոսով։ Կրճատվել է
նաև կարտոֆիլի ցանքը և իջել է բերքատվությունը։ Շրջանը այգեգործության
զարգացման համար ունի հողակլիմայական բարենպաստ պայմաններ, բայց
այգեգործությունը, որը շրջանում տնտեսության եկամտաբեր ճյուղերից մեկն
է, հարկ եղած ուշադրության չի արժանանում։ Շրջանում եղած 623 հեկտար
պտղատու այգիների յուրաքանչյուր հեկտարից վատ խնամքի հետևանքով
ստացվել է 13,1 ցենտներ բերք, իսկ 42 հեկտար բերքատու խաղողի այգիների
յուրաքանչյուր հեկտարից՝ 10,9 ցենտներ խաղող։ Շրջանում չի կատարվում
նոր այգիների տնկման պլանը։ Անխնամ և անմշակ թողնելու հետևանքով
բերքատու այգիները չորանում և շարքից դուրս են գալիս։

Անցյալ տարի, երբ ՀԿՊ Կենտկոմի պլենումը քննության առավ ռեսպուբ-
լիկայում խաղողագործության զարգացման հարցը, Ալավերդու շրջանի պար-
տիական և սովետական կազմակերպություններին պարտավորեցրեց առաջի-
կա տարիներին լրջորեն զբաղվել այգեգործության զարգացման հարցերով։
Այդ որոշումից հետո անցել է բավական ժամանակ, սակայն նրա իրակա-
նացման ուղղությամբ աննշան գործ է արվել։ Ճոճկան, Թեղուտ, Սանահին,
Ղաչաղան, Շնող, Հախպատ, Ուզունլար գյուղերի կոլտնտեսությունները, որոնք
խաղողագործության զարգացման համար հեռանկարներ ունեն, այդ ուղղու-
թյամբ մատը մատին չեն խփել։ Կոլտնտեսություններում ցածր է գյուղատըն-
տեսական աշխատանքի կուլտուրան։ Պատասխանատվության բացակայու-
թյան հետևանքով սիստեմատիկաբար խախտվում են ագրոտեխնիկական մի-
ջոցառումները, ցանքը կատարվում է ոչ կոնդիցիոն սերմացուով, ձգձգվում են
գյուղատնտեսական աշխատանքների ժամկետները։ Շրջսովետի գործկոմը և
ՄՏ կայանի դիրեկցիան իրենց ամենօրյա աշխատանքներում հարկ չեն հա-
մարել անդրադառնալ նման հարցերին։

Պարտիայի շրջանային կոմիտեն կոչված է գլխավորելու նորի, առաջա-
վորի արմատավորումը և տարածումը։ Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայում
եգիպտացորենը նոր կուլտուրա է և խոշոր նշանակություն ունի անասնապա-
հության կայուն կերի բազայով ապահովելու գործում։ Ղաչաղան, Այգեհատ,
Ուզունլար գյուղերի կոլտնտեսությունների փորձով ապացուցված է, որ լավ
մշակելու դեպքում շրջանում եգիպտացորենի ցանքի յուրաքանչյուր հեկտարից
կարելի է ստանալ 250—300 ցենտներ սիլոսի կանաչ մասսա։ Մինչդեռ շրջա-
նի կոլտնտեսությունների ճնշող մեծամասնություններում հեկտարից ստացել
են 40—50 ցենտներ։



Վերջին տարիներս պարտիան և կառավարությունը մի շարք որոշումներ
ընդունեցին անասնաբուծության զարգացման վերաբերյալ։ Բայց Ալավերդու
շրջանի պարտիական և սովետական կազմակերպություններն իրենց ունեցած
ո՛չ բոլոր միջոցները գործադրեցին մինչև վերջ կենսագործելու այդ որոշում-
ները, որի պատճառով այստեղ անասնաբուծության վիճակն ամենևին մխի-
թարական չէ։

1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր
անասունների գլխաքանակը կրճատվել է 5,6 տոկոսով, մանր եղջերավոր
անասուններինը՝ 6,9 տոկոսով, խոզերինը՝ 9,5 տոկոսով, թռչուններինը՝ 52,6
տոկոսով։ Հոտի մեջ պակասել է մայրական կազմը։ Բավական է ասել, որ
կովերը նախիրում 1956 թվականին կազմել են 30,6 տոկոս, իսկ մինչև 1957
թվականի մայիսի 1-ը՝ 28 տոկոս։ Ոչխարների մայրական կազմը հոտում
հաշվվում է 47,6 տոկոս։ Կովերի ստերջությունը կազմում է 29 տոկոս, իսկ
ոչխարներինը՝ 36,7 տոկոս։ Տարիներ շարունակ 100 կովից ստացել են 65
հորթ, 100 մայր ոչխարից՝ 76 գառ, 100 մայր խոզից 194 խոճկոր։ Ցածր է
նաև կովերի կաթնատվությունը և ոչխարների բրդատվությունը։ Անասնապա-
հության բնագավառում եղած այս թերությունների արդյունք են նրան, որ
շրջանի պարտիական կազմակերպություններն ուժերի մաքսիմալ լարումով
չեն մոբիլիզացրել շրջանի աշխատավորությանը՝ անասնապահությունն ապա-
հովելու կերի կայուն բազայով, որի համար շրջանը լայն հնարավորություն-
ներ ունի։ Մյուս թերությունն էլ այն է, որ տեղի է ունենում անասունների
կորուստ։ 1956 թվականին խոշոր եղջերավոր անասունների կորուստը հասել
է 6,5 տոկոսի, մանր եղջերավորներինը՝ 12,9, խոզերինը՝ 17 տոկոսի։

Շրջանում գյուղատնտեսության ետ մնալը բացատրվում է նրանով, որ
պարտիայի շրջկոմը և շրջսովետը խելացիորեն չեն օգտագործում շրջանի
պարտիական և սովետական ակտիվի ուժն ու հարուստ փորձը։ Շրջանում
մասնագետ կադրերը թերագնահատված են։ Շրջկոմի առաջին քարտուղար
ընկ. Վ. Գրիգորյանը և շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Ա. Ջանինյանը
կարծես որոշել են ամեն ինչ իրենց ձեռքով կատարել, և աշխատանքի այդ-
պիսի ոճի պատճառով շրջանում եղած 65 բարձրագույն և միջնակարգ կրթու-
թյուն ունեցող մասնագետները ըստ պատշաճի չեն օգտագործվում։

Պարտիայի շրջկոմը հաճախակի որոշումներ ընդունելով գյուղատնտե-
սության մասին՝ կազմակերպական միջոցառումներով չի ամրապնդում ըն-
դունված որոշումների կատարումը։ Նա անհրաժեշտ պահանջկոտություն չի
ցուցաբերել բարձրացնելու կոլտնտեսությունների ղեկավար կադրերի պա-
տասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Շրջկոմի ընդու-
նած մի շարք որոշումներ մնացել են անկատար։ Այսպես, շրջկոմի 2-րդ պլե-
նումը քննության առնելով պարտիական կազմակերպությունների խնդիրները
անասնապահական մթերքների արտադրության ավելացման գործում՝ որոշել
էր նշանակալից չափով բարձրացնել անասնապահական մթերքների արտա-
դրությունը։ Բայց իրականում այդ որոշումը լրիվ չի կենսագործվել։

Շրջկոմի բյուրոն վերջին երկու տարվա ընթացքում 4—5 անգամ քննել է
Թումանյան, Ուզունլար, Շնող, Լորուտ, Հաղպատ գյուղերի կոլտնտեսություն-
ների հարցը, որտեղ խիստ բարձր է գյուղատնտեսական մթերքների ինքնար-
ժեքը, ընկած է աշխատանքային կարգապահությունը, խախտվել են կոլտըն-
տեսային կանոնադրության մի շարք կետեր, սակայն շրջկոմը կազմակերպա-

կան միջոցառումներ չի ձեռնարկել կոլտնտեսություններն այդ վիճակից դուրս բերելու համար։

Տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունն ապահովելու գործում մեծ դեր ունեն սկզբնական պարտիական կազմակերպությունները։ Այնտեղ, որտեղ պարտիայի շրջկոմն իր առօրյա աշխատանքներում հենվում է սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա և գործում է նրանց միջոցով, այնտեղ առկա են տնտեսական հաջողությունները։ Մինչդեռ Ալավերդու շրջանում մենք ընդհակառակն ենք տեսնում։ Այստեղ շրջկոմը փոխանակ հենվելու սկզբնական պարտիական կազմակերպությունների վրա և նրանց միջոցով ապահովելու տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարությունը, շատ հաճախ անտեսում է նրանց և ցուցումներ է տալիս ուղղակի կոլտնտեսությունների վարչություններին։ Աշխատանքի այդպիսի պրակտիկան հասցրել է նրան, որ Թումանյան, Ուզունլար, Ծաթեր, Հաղպատ գյուղերի կոլտնտեսությունների նախագահներն իրենց կատարած մի շարք անօրինական գործերի համար չեն ուզում հաշվետու լինել սկզբնական պարտիական կազմակերպություններին։ Շրջկոմի բյուրոյում այս կամ այն կոլտնտեսության վիճակի վերաբերյալ հարցեր քննելիս շատ քիչ են հաշվի առնվում սկզբնական պարտիական կազմակերպության կարծիքը։ Իսկ դա հասցրել է նրան, որ մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններ ձևական մոտեցում են ցուցաբերում շրջկոմի ընդունած որոշումներին։

Պարտիայի շրջկոմն անբավարար է զբաղվում նաև սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների ընտրությամբ ու նրանց հետ տարվող աշխատանքներով, հաշվի չառնելով, որ 27 սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներից 21-ն ունեն մեկից երկու տարվա աշխատանքի փորձ։

Ներկա պայմաններում կոլտնտեսությունների նկատմամբ պարտիական ղեկավարությունն ապահովելու և տեղերում պարտիական-քաղաքական աշխատանքը կազմակերպելու գործում մեծ անելիքներ ունի ՄՏ կայանի գոտու գծով շրջկոմի հրահանգչական խումբը, որը, սակայն, խիստ անբավարար է աշխատում։

Շրջանի կոլտնտեսությունները ի պատիվ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի մի շարք պարտավորություններ են վերցրել։ ՄՏ կայանի գոտու հրահանգչական խմբի և սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ ավելի մոտիկից ղեկավարել մրցությունը, սիստեմատիկաբար քննության առարկա դարձնել նրա ընթացքը, խրախուսել մրցության առաջավորներին, նորարարներին, պրոպագանդել առաջավոր փորձը, մոբիլիզացնել աշխատավորներին ստանձնած պարտավորությունները ժամկետին կատարելու համար։ Մինչդեռ գյուղատնտեսական աշխատանքների այս եռուն օրերին, երբ որոշվում է տնտեսության բախտը, թե՛ սկզբնական պարտիական կազմակերպությունները և թե՛ կոլտնտեսությունների վարչությունները միանգամայն անբավարար են զբաղվում սոցիալիստական մրցության հարցերով։

***

Տնտեսության պարտիական ղեկավարումը արվեստ է։ Այն յուրաքանչյուր պարտիական աշխատողից պահանջում է սիստեմատիկաբար հաբստացնել



իր տնտեսագիտական գիտելիքները, խորապես և բազմակողմանիորեն ուսումնասիրել տնտեսությունը, բրիգադան, ֆերման, իմանալ կենդանի մարդկանց՝ արտադրության առաջավորներին, ուսումնասիրել և արմատավորել առաջավորների փորձը, լինել մասսաների մեջ, սովորել մասսաներից։

Տնտեսությունը ճիշտ ղեկավարելու համար պարտիական աշխատողը պետք է մշտապես կապված լինի մասսաների հետ։ Նա պարտավոր է հաճախակի զեկուցումներով, զրույցներով հանդես գալ կոլտնտեսականների ժողովներում, մտքեր փոխանակել նրանց հետ, լսել նրանց ձայնը։ Դա պարտիական աշխատողի առջև կդնի կյանքի կողմից թելադրվող նոր հարցեր, նրա շուրջը կհամախմբի մասսաներին։ Իսկ Ալավերդու պարտշրջկոմի բյուրոյի, շրջկոմի պլենումի անդամները և շրջկոմի բաժնի վարիչներն ու սովետական շատ ղեկավար աշխատողներ ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս տարի աշխատավորների առջև քիչ ելույթներ են ունեցել։

Տնտեսությունը խելացիորեն ղեկավարելու և այն առաջավոր դարձնելու գործում մեծ, շատ մեծ անելիքներ ունի կոլտնտեսության նախագահը։ Լավ նախագահից շատ բան է կախված։ Սակայն կոլտնտեսությունները մշտապես լավագույն կադրերով ապահովելու և նրանց հետ տարվող աշխատանքի կազմակերպման ուղղությամբ շրջկոմի կողմից ձեռնարկած միջոցառումները դեռևս խիստ անբավարար են։ Պարտիայի շրջկոմը փոխանակ ամրապնդելու կոլտնտեսությունների ղեկավար կադրերը, հաճախակի փոփոխում է նրանց։ Շրջանում եղած 27 կոլտնտեսությունների նախագահներից 21-ը ունի մեկից երկու տարվա աշխատանքի փորձ։ Կոլտնտեսությունների նախագահներին շատ քիչ օգնություն են կազմակերպում նաև շրջսովետի գործկոմը և ՄՏ կայանի դիրեկցիան։ Կոլտնտեսությունների նախագահների համար ինքնարժեքը իջեցման, տնտեսության պլանավորման, աշխատանքի կազմակերպման հարցերի վերաբերյալ շատ քիչ զեկուցումներ և դասախոսություններ են կազմակերպվում։

Ղեկավար աշխատողը գյուղ գնալուց առաջ պետք է ուսումնասիրի առաջավոր փորձի էությունը և հետո մեկնի ետ մնացող կոլտնտեսությունը, ֆերման և այս ամեն ինչ անի այդ առաջավոր փորձը տվյալ կոլտնտեսության արտադրության մեջ արմատավորելու համար, այդ փորձի օրինակով կոլտնտեսականներին ցույց տա, թե ինչպես պետք է ճշտորեն կատարել գործը։ Սակայն այսպես չեն աշխատում Ալավերդու շրջանի պարտիական և սովետական շատ ղեկավար աշխատողներ։ Ղաշաղան գյուղի ծխախոտագործական օղակի օղակավարուհի Գ. Գևորգյանն անցյալ տարի իր մշակած 3,5 հեկտար ծխախոտի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 27 ցենտներ ծխախոտի հումք։ Շնող գյուղից Ե. Մելիքսեթյանի ղեկավարած օղակը 10 հեկտարի վրա յուրաքանչյուր հեկտարից ստացավ 21 ցենտներ ծխախոտի հումք, սակայն անվանի ծխախոտագործների և նրանց առաջավոր փորձի ու անձնվեր աշխատանքի մասին շրջանի ղեկավար աշխատողներից և ոչ մեկը ոչ մի ջերմ խոսք չասաց կոլտնտեսություններում։

Վատ է աշխատում Ալավերդու ընկ. Ս. Անտաշյանի գլխավորած ՄՏ կայանը, որը իր պարտավորությունները անցյալ տարի կատարել է կիսով չափ, այս տարի չի ապահովել 3000 հեկտար աշնանացան կուլտուրաների գարնանային փոցխման աշխատանքները։ Չի կատարվում պարարտանյութերի փոխադրման պլանը։ 1360 հեկտար շարահերկ կուլտուրաների փխրեցման աշ-

խատանքները կատարվել է 27 տոկոսով։ Ռացիոնալ կերպով չի օգտագործվում տրակտորների կարողությունը։

Ներկայումս պարտիան խնդիր է դնում ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր աճը, իրականացնել գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելք և այդ հիման վրա հասնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի առավել բարձրացման։ ՀԿՊ շրջանային կոմիտեների և սկզբնական պարտիական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ամրապնդել տնտեսությունը լավագույն կադրերով և ապահովել նրա բոլոր ճյուղերի անշեղ վերելքը։

Ալավերդու շրջանում գյուղատնտեսությունը բարձրացնելու համար կան բոլոր ռեզերվները։ Մնում է, որ պարտիայի Ալավերդու շրջկոմը վերացնի իր աշխատանքում եղած բացերն ու թերությունները և ապահովի գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքը։

ՀԿՊ Կենտկոմի բյուրոն նշեց, որ Ալավերդու շրջկոմի, շրջսովետի գործկոմի և ՄՏԿ-ի ղեկավար ընկերների անբավարար գործունեության գլխավոր պատճառն այն է, որ նրանք տառապում են ինքնագոհությամբ, որի հետևանքով էլ պարտիական-սովետական աշխատանքներում թույլ ծավալում են դնել ինքնաքննադատությունը և քննադատությունը։ Այդ ինքնագոհ տրամադրությունների առկայությունը շրջանի ակտիվում, վտանգի տակ է դնում շրջանի գյուղատնտեսական պլանների կատարումը։

Ալավերդու ղեկավար ընկերները պետք է գործնական հետևություններ անեն ՀԿՊ Կենտկոմի բյուրոյի որոշումից և բարձրացնելով պարտիական կազմակերպական աշխատանքի մակարդակը, արմատապես բարելավեն շրջանի տնտեսական զարգացման վիճակը։

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻՆՈԱՐՎԵՍՏԻ ՀԱՍՈՒՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## Բ. ՇԱՀՈՒՄՅԱՆ

Հայտնի է, որ կինոն ավելի, քան գրականությունն ու արվեստի մյուս ճյուղերը, հնարավորություն ունի լայն չափերով շատ հեռու տանելու և պրոպագանդելու մի ժողովրդի նվաճումներն ու կուլտուրան, ցույց տալու, թե ի՞նչով է ապրում այդ ժողովուրդը, ի՞նչ իղձեր ու խոհեր ունի նա։

Լենինյան ազգային քաղաքականությունն այդ հնարավորությունն ընձեռեց նաև հայ ժողովրդին։ Այդ հնարավորություններն ավելի լայնացան, երբ մեծ համրը խոսեց։ Հնչուն կինոն կարող էր լայնորեն օգտագործել երաժշտությունը, որով այնքան հարուստ է մեր ժողովուրդը։ Ահա թե ինչու «Պեպո» ֆիլմի առաջին ցուցադրումները այնքան խանդավառեցին հանդիսատեսին. նրանք էկրանից լսում էին իրենց հարազատ երգերը։ Եվ տարիներ անց ամենուրեք՝ ժողովրդական հանդեսներում, հարսանիքներում, քեֆի ժամանակ երգում էին Արամ Խաչատրյանի «Պեպոյի երգը»։

Ցավոք սրտի պիտի նշել, որ Հայկինոյի աշխատանքի առաջին տարիները ավելի բուռն ու բեղմնավոր եղան, քան հետագա տարիները, երբ դրա համար ավելի լայն պայմաններ կային և տեղական կադրեր էին ստեղծվել։ Պատերազմի տարիներին արդեն այն վնասակար պրակտիկան, որի հետևանքով յուրաքանչյուր սցենար պիտի քննարկվեր ամենավերին ինստանցիաներում, հանգեցրեց նրան, որ 1952 թվականին ամբողջ սովետական կինեմատոգրաֆիան ընդամենը 8 կինոֆիլմ արտադրեց։

Բնական է, որ կինոարվեստի ստեղծագործական ուժերն անգործության էին մատնվել և տարիների ընթացքում կորցնում էին իրենց մասնագիտական ունակությունները։ Նրանք աստիճանաբար կորցնում էին ինքնավստահությունն իրենց ուժերի նկատմամբ և իսկական ստեղծագործական աշխատանք չունենալով՝ ձեռնամուխ էին եղել ուրիշների նկարահանած ֆիլմերի հայկական կրկնօրինակներ անելուն։ Այդ վիճակում էին գրեթե բոլոր կինոռեժիսորները։ Երջանիկ բացառություն էր կազմում Ամո Բեկ-Նազարովը, որին միայն կինեմատոգրաֆիայի ղեկավարները վստահում էին մի քանի տարին մեկ անգամ ֆիլմ նկարահանել («Զանգեզուր», «Անահիտ», «Դավիթ Բեկ»)։

Մեր ռեժիսորական կադրերն այնպես էլ դեկվալիֆիկացիայի կենթարկվեին, եթե պարտիայի Կենտրոնական Կոմիտեն վճռականորեն չվերացներ այն անմխիթար վիճակը, որ ստեղծվել էր սովետական կինեմատոգրաֆիայում։ Լայն հնարավորություններ տրվեցին նաև մեր կինոստուդիային, որի շնորհիվ հնարավոր եղավ և՛ հին, և՛ նոր ռեժիսորներին նկարներ հանձնարարել, դրանով էլ կյանքի կոչվեցին շատ և շատ կարևոր ուժեր թե՛ ռեժիսուրայի, թե՛ դերասանական կադրերի շրջանից։

Եվ երբ մենք անդրադառնում ենք Երևանի կինոստուդիայի միայն անցյալ

տարվա արտադրանքին, ապա տեսնում ենք, որ հնարավորություններ ընձեռելուց հետո միայն մի տարվա ընթացքում նա ավելի շատ աշխատանք կատարեց, քան պատերազմի բոլոր տարիներին միասին վերցրած։ Այստեղ, անշուշտ, մեծ նշանակություն է ունեցել ստուդիային ինքնուրույնություն տալը։

Ի՞նչն է բնորոշ արտադրված նոր ֆիլմերի համար։

1956 թվականին Երևանի կինոստուդիան մեր հասարակությանն ուրախացրեց իր արտադրած գեղարվեստական ֆիլմերով։ Դրանք թվով վեց էին, մի աննախընթաց աշխատանք, որ մինչև այդ չէր կատարել մեր կինեմատոգրաֆիան։

Այս խոշոր ծրագիրն իրականացնելու և վեց ֆիլմ էկրան հանելու համար Երևանի կինոստուդիայի պայմաններում հերոսական աշխատանք պետք էր կատարել և, իրոք, այդ հին, փորձված ու տրադիցիաներ ունեցող կոլեկտիվը հսկայական ստեղծագործական և կազմակերպական-տեխնիկական աշխատանք է կատարել։ Այդ աշխատանքը դժվար էր նաև այն իմաստով, որ ստուդիայի ստեղծագործական կոլեկտիվը երկար տարիներ իսկական ստեղծագործական աշխատանք չէր կատարել և նոր պետք է ձեռնամուխ լիներ նրան։ Այդ, անկասկած, իր կնիքը դրել է արտադրված ֆիլմերի վրա, ինչպես և այն, որ այդ մեծ աշխատանքի մեջ ներգրավվեցին բոլորովին թարմ երիտասարդ ուժեր, որոնք կինոարվեստի հին, փորձված մշակների հետ միասին իրենց լուման դրեցին այդ մեծ գործում։ Վերջապես այդ և նախորդ տարիներին արտադրված ֆիլմերում մեր ռեժիսյորները կարելի է ասել հայտնագործեցին դերասանական միանգամայն նոր ուժեր՝ հատկապես պատանիների շրջանից, որոնք իրենց անմիջական ու անկեղծ խաղով գրավեցին մեր հասարակության ուշադրությունը։

Ի վերջո, իբրև դրական երևույթ պետք է նշել նաև այն, որ մեր բեմի նշանավոր վարպետները, ինչպես Վահրամ Փափազյանը, Հրաչյա Ներսիսյանը, Ավետ Ավետիսյանը, Դավիթ Մալյանը, հասարակության սիրելի, հանգուցյալ Գուրգեն Գաբրիելյանը և ուրիշներ հանդես են եկել այդ ֆիլմերում և մի շարք կերպարներ կերտել։

Այս ամենի հետևանքը եղել է այն, որ այսօր էկրանի վրա կան այդ ֆիլմերը և Երևանի կինոստուդիայի նկարների շնորհիվ մեր երկրի արվեստի մասին գաղափար են կազմում Սովետական Միության ու նրա սահմաններից հեռու շատ միլիոնավոր մարդիկ։

Անդրադառնանք այդ ֆիլմերին առանձին-առանձին։

***

Ռեժիսյորներ Ստ. Կևորկովն ու Է. Քարամյանը վերջին տարիներում մի շարք նկարներ միասին են բեմադրում։ «Ուրվականները թողնում են բարձունքները» և «Ամպրոպի արահետով» ֆիլմերը նրանք ստեղծել են համատեղ աշխատանքով։ Թե՛ առաջին, թե՛ երկրորդ ֆիլմում նրանք հավատարիմ իրենց ստեղծագործական սկզբունքին՝ դետեկտիվ մոմենտներով ցանկանում են «բոլի մեջ պահել» հանդիսականին, որը նրանց, պիտի խոստովանել, հաջողվում է։ Բայց վերջանում է առաջին ֆիլմը, վերջանում է երկրորդը, և «բոլի մեջ պահած» հանդիսատեսը տարակուսանքի մեջ է. առաջին ֆիլմում մինչև վերջ էլ չի կարողանում պարզել, թե երկրաբանական էքսպեդիցիայի անդամներից



ո՞ր մեկն էր լրտեսը, իսկ երկրորդ ֆիլմի վերջում այնպես էլ անհասկանալի է մնում գլխավոր դերակատարների փոխհարաբերության, նրանց իրար նկատմամբ ունեցած արյունակցական կապի հարցը։

Մենք այս զուգահեռը իզուր չանցկացրինք, որովհետև այս ռեժիսյորների ստեղծագործության մեջ անորոշության դողա ստեղծելը դարձել է մեթոդ, որը, սակայն, չի օգնում ֆիլմին, այլ խանգարում է նրան։ Տարվելով այդ կարծեցյալ հետաքրքրականությամբ՝ ռեժիսյորները մոռանում են ֆիլմի բուն նպատակը՝ իրենց ասելիքը հստակ դարձնելը, որը ամեն մի գեղարվեստական ստեղծագործության կարևոր հատկանիշը պիտի լինի։ Դրա հետևանքով էլ ֆիլմում կա և՛ լավ դերասանական խաղ, և՛ բուրժուական քաղաքն ու նրա բարքերը ցույց տալու հնարքներ, բայց չկա անհրաժեշտ պարզությունն ու նպատակասլացությունը, որ այսօր պետք է ունենար այդ կարգի ֆիլմը։ Նկարում հնարավորություն կար լայնորեն տալու այն անհանդուրժելի խտրականությունը, որ գունավոր մարդկանց նկատմամբ գոյություն ունի կապիտալիստական երկրներում և հատկապես Հարավ-աֆրիկյան Միությունում։ Դրա փոխարեն մենք տեսնում ենք, որ սպիտակները հալածում են միայն Լեննիին, այն էլ թերևս նրա համար, որ նրա հետ արյունակցական կապ ունեն ու նա նպատակ ուներ ուսուցչությամբ զբաղվել։ Ստացվում է, որ ռասայական վայրագ խտրականությունը չի վերաբերում քաղաքական կյանքի և կենցաղի մյուս բնագավառներին, այլ սպիտակները գազանանում են, երբ կրթված գունավոր մարդ են տեսնում։ Թերևս հեղինակներն ասեն, որ նրանք ֆիլմն արել են ըստ Աբրահամսի երկի. նրանք իրավունք ունեն, բայց չէ՞ որ չէր կարելի անտեսել ներկա քաղաքական իրադրությունը և այն նորը, որ կա այդ բնագավառում, և քաղաքական մեծ հնչում ունեցող այս ֆիլմում կառչել մի ժամանակ գրած գրքին։ Դրա հետևանքով էլ ֆիլմը լրիվ պատկերացում չի տալիս այն իրական վիճակի մասին, որի մեջ այսօր սևամորթներն ապրում են կապիտալիստական երկրներում։ Թերություն է, որ ֆիլմում շատ է պլակատայնությունը։

Ակամայից հիշում ենք Կիևի ստուդիայի մի ֆիլմը, որ նվիրված էր սևամորթների հարցին։ Դա «Մաքսիմկա» հիանալի ֆիլմն է, որ անջնջելի տպավորություն է թողել դիտողների վրա։ Այդ ֆիլմում բացարձակապես քաղաքական ոչ մի ֆրազ չկա, այն, սակայն, շատ նպատակասլաց քաղաքական մի ֆիլմ է, որ անողոք կերպով մերկացնում է գաղութարարների և հատկապես անգլիական իմպերիալիստների տմարդի դեմքը։ Ֆրազների փոխարեն այնտեղ կերտված են մարդկային կենդանի խարակտերներ, և դուք հավատում եք նրանց ամեն մի շարժմանն ու խոսքին։ Այդ լիրիկական կերպարներն իրենց հասարակ վարմունքով ավելի շատ բան են ասում, քան պաթետիկ ճառերը։ Սևամորթների պոռթկումները, ինչ խոսք, պետք է տալ, բայց այդ պետք է անել համոզիչ կերպով և ո՛չ պլակատային շտրիխներով։

Նրանք դարձյալ համատեղ ձեռնամուխ են եղել «Կամո» մեծ ֆիլմի նկարահանմանը 1957 թվականին և անպայմանորեն հաշվի կառնեն այս հանգամանքը։

«Պատվի համար» ֆիլմի նկարահանմանը ձեռնարկեց մեր կինոստուդիայի հին մշակներից մեկը՝ ռեժիսյոր Արտաշես Հայ-Արտյանը («Մոսֆիլմում» նկարահանած ֆիլմերից բացի, նա մեզ մոտ նկարահանել է «Կարո» և «Քարտեզի վրա չնշանակված կետը» գեղարվեստական նկարները)։ Նա այս աշխատանքը սկսեց ստեղծագործական մեծ պարապուրդից հետո։ 1930 թվականից մինչև

*1955 թվականն ընկած ժամանակաշրջանը ստեղծագործական իմաստով ռեժիսյորի համար դատարկ մի տարածություն է, որի ընթացքում նա «ժանգոտել» է։ Վերջապես նրան վիճակվում է նորից գեղարվեստական ֆիլմ նկարահանել, որը փաստորեն հանդիսանում է նրա առաջին աշխատանքը երկարամյա ընդմիջումից հետո։ Դերասանների մի զգալի մասի անբասիր խաղը, ռեժիսյորական մի երկու գյուտերը (Էլիզբարովը Նավթի շատրվանի մոտ, Օթարյանի թղթերը ոչնչացնելուց հետո Էլիզբարովի և Սաղաթելի գողերին հանդիպելու տեսարանին ներկա գտնվելը) ստեղծել են բավականին հետաքրքիր մի ֆիլմ։ Այս էպիզոդները միաժամանակ ցույց են տալիս, թե ինչքան քիչ են օգտագործված կինեմատոգրաֆի հնարավորությունները և թե որքան շահած կլիներ ֆիլմը, եթե այդ հանգամանքը նկատի ունենար բեմադրողը։*

*Այն բանի հետևանքով, որ բեմադրողը այդ երկը ստեղծելիս մնացել է Շիրվանզադեի «Պատվի համար» դրամայի սահմաններում, (սցենարիստ Լ. Կարագյոզյանը, որքան մեզ հայտնի է, դուրս եկած է եղել այդ շրջանակներից) ֆիլմը լայն դիապազոն չունի, սահմանափակված է ինչ որ շրջանակներով, որը այդ ֆիլմին չի սազում։ Չէ՞ որ «Պատվի համար» ֆիլմով մենք մեր առաջ նպատակ չենք դնում այսօրվա դիտողին ցույց տալ Բաքվի հայ արդյունաբերող Էլիզբարովի ընտանեկան կյանքի մի իրադարձությունը, կամ նրա հայացքները՝ պատիվ հասկացողության վերաբերյալ։ Ձեռքի տակ ունենալով նույն Շիրվանզադեի Բաքվի հայ բուրժուազիայի կյանքին նվիրված մյուս երկերը, ուր հիանալի պատկերված են արդյունաբերական բուրժուազիայի առաջացումն ու զարգացումը, ֆիլմը բեմադրողները Էլիզբարովին չպետք է տային կամերային վիճակում։ Պետք էր տալ այն կապերը, որ հայ նավթարդյունաբերողներն ունեին Ռուսաստանում և Էլիզբարովի միջոցով՝ այն իղձերը, որ ունեին Մանթաշովները, Տեր-Ղուկասովները, Արամյանները։ Սրա փոխարեն մենք Էլիզբարովին համարյա միշտ տեսնում ենք Սաղաթելի ընկերակցությամբ, հաճախ վերհիշելիս Էլիզբարովի անցյալը, թե ինչպես դալլաքի տղան ու մանր խանութպանը արդյունաբերող դարձավ։ Ճիշտ է, այդ մոմենտը կա Շիրվանզադեի մոտ, բայց հարկ չկար դրա վրա շեշտ դնել, քանի որ քաջ հայտնի է, որ ոչ մի արդյունաբերող չի բավականանում իր ձեռք բերածով, երբեք սենտիմենտալ կապվածություն չունի իր անցյալի հետ. նա միշտ այրում է իր ետև կամուրջները և մնում է գիշատիչ։ Այդ էլ պետք էր շեշտել, քանի որ Էլիզբարովը չի խնայում նույնիսկ իր դստերը։ Ահա թե ինչու Շիրվանզադեի մյուս երկերի վրա հենվելով պետք էր Էլիզբարովին ցույց տալ ավելի լայն մասշտաբի գործիչ, ավելի մեծ ջրերում լողացող գիշատիչ։ Դրա համար շատ քիչ է ակումբի տեսարանը։ Վերը նշած ձևով վարվել են նույն ստուդիայում Սունդուկյանին էկրանիզացիայի ենթարկելիս և ճիշտ են վարվել. ինչո՞ւ նույնը չի կարելի անել Շիրվանզադեի նկատմամբ։*

*Այս հետևանք է, ինչպես վերը նշեցինք, այն երկար ստեղծագործական պարապուրդի, որ ապրել է ռեժիսյորը։ Այդ պարապուրդից հետո գեղարվեստական ֆիլմ ստանալով՝ նա շտապ գործի է ձեռնարկել ըստ երևույթին առանց ժամանակ ունենալու հանգամանորեն խորհելու ֆիլմի շատ դետալների մասին։ Այսպիսով, այս ֆիլմը պետք է դիտել իբրև բեմադրողի առաջին աշխատանքը և հուսալ, որ «Հյուսիսային աստղը» ֆիլմը Հրաչյա Քոչարի սցենարով, որին նա ձեռնարկում է, կարվի ավելի սառնարյուն ու մտածված։*

*«Սիրտն է երգում» ֆիլմը Երևանի կինոստուդիայի առաջին երաժշտական*



*նկարն է, որ սյուժե ունի։ Նրա բեմադրող ռեժիսյոր Գր. Մելիք-Ավագյանը ստեղծագործական լարված աշխատանք է կատարել իր այդ առաջին ինքնուրույն գործի վրա և որոշ արդյունքների է հասել։ Նա հասարակությանը ներկայացրեց մի երկ, որը ոչ մի դեպքում ընդունելի չէր լինի, եթե այնտեղ չշոշափվեր հայրենադարձության խնդիրը։ Այն, սակայն, ինչն արդարացնում է ֆիլմը, այնտեղ դարձել է ենթաթեմա, որի խնդիրն է՝ պահել հասարակությանը դահլիճում, որպեսզի նրանք մինչև վերջ լսեն Արթուր Այդինյանի՝ չգիտեք ինչ սկզբունքով ընտրված երգերը։*

*Նախ՝ ֆիլմում ճիշտ չի լուծված հայրենադարձության մեծ թեման։ Դա քաղաքական ակտ լինելու հետ միասին հոգեբանական խոշոր երևույթ է, որը խոր գեղարվեստական լուծում է պահանջում։ Այդ անել չկարողանալով՝ ռեժիսյորը դիմել է սոցիոլոգիային՝ նրա օգնությամբ փորձելով լուծել բոլոր բարդ խնդիրները։ Արտասահմանից ձգտում են Հայրենիք վերադառնալ գերազանցապես աշխատավորական տարրերը, որոնք համակված են խոր հայրենասիրությամբ։*

*Դժբախտաբար, հայրենասիրությունը «Սիրտն է երգում» ֆիլմում երկրորդական պլանի վրա է մղված։ Մենք միայն Ղարիբի հառաչանքներն ենք լսում Հայրենիքի համար, իսկ ֆիլմի հերոսը դժգոհ է միայն իր հետ կնքված կոնտրակտների ո՛չ այնքան ձեռնտու լինելուց և նրանից, որ անվաստակ մնացած երաժիշտները ջարդում են նրա գիթառը։ Նա միշտ օտար երգեր է երգում, հայրենիքի կարոտը չի զգում և չենք հասկանում, թե իր երկրի հետ ոչնչով չկապված այդ մարդը ինչու է սիրած աղջկան թողնում ու գալիս Հայաստան։ Հետևաբար, երբ ֆիլմում շոշափվում էր հայրենադարձության թեման, անպայմանորեն պետք էր տալ այն հուզիչ ու սրտաշարժ սերը դեպի հայրենի երգն ու կուլտուրան, որ ընդգծված կերպով նկատվում է սփյուռքահայության մեջ։ Չէ՞ որ բոլորին հուզում է այն շնորհակալ աշխատանքը, որ կատարում է երգչուհի Աիդա Ազնաուրյանը Ֆրանսիայում։ Նա Սայաթ-Նովայի, Ջիվանու, Շերամի, գուսան Աշոտի, Հավասու ինչպես և ժամանակակից ժողովրդական երգերը սիրով հասցրել է Անգլիա, Ամերիկայի Միացյալ Նահանգները, Կանադա և այլ երկրներ, շրջագայելով Հայկական երգի իր անսամբլի հետ, իսկ Աիդա Ազնաուրյանը եզակի չէ։ Մինչդեռ Կարենի շուրթերից մենք Հայկական երգ չենք լսում անգամ նրա Հայաստան գալուց հետո, որտեղ նա ավարտում է Կոմիտասի անվան կոնսերվատորիան։ Բացառություն է կազմում «Այ վարդ» երգը, որ բեմադրողը ասեք «զիջում անելով» մի կերպ, ինչպես ասում են, «թքով կպցրել է» մեր երաժշտական կուլտուրայի հետ ոչ մի առնչություն չունեցող Երևանի կինոստուդիայի արտադրած երաժշտական այս ֆիլմին։*

*Այն փաստը, որ «Սիրտն է երգում» կինոֆիլմի երաժշտական ձևավորման և նկարի բովանդակության միջև լուրջ աններդաշնակություն կա՝ խոսում է ոչ օգուտ հեղինակների։ Եթե Արթուր Այդինյանը ի վիճակի չէր երգել հայկական երգեր, ապա պետք էր հրավիրել մի այլ երգչի, որից անշուշտ կշահեր ֆիլմը, թե գեղարվեստականորեն, թե իդեապես։ Սա խոշոր սկզբունքային հարց է։ Իզուր չէ, որ այս խնդրին անդրադարձավ մամուլը, որից անպայմանորեն պետք է իր եզրակացություններն անի Երևանի կինոստուդիան։*

*Կինոաշխատողները պետք է ունկնդրեն մեր մամուլի ձայնին։*

*Այս ստուդիայի պատերի ներսում, դժբախտաբար, որոշ ժամանակ այն մտայնությունն էր տիրում (որի ռեցիդիվները, ինչպես տեսնում ենք, առկա է),*

թե մեր երաժշտությունը հասկանալի չի լինի մյուս ժողովուրդներին և ֆիլմը լայն (այսինքն միութենական) էկրան չի գնա։ Որ սա սնանկ տեսություն է, ապացուցվում է դեռ անցյալում մեծ Կոմիտասի երգչախմբի արտասահմանում տված համերգներով։ Սովետական Միության բոլոր ժողովուրդները սիրով են ընկալում հայկական երաժշտությունը։ Հայկական արվեստի և գրականության տասնօրյակները Մոսկվայում, Հայֆիլհարմոնիայի երգի ու պարի վաստակավոր անսամբլի ՍՍՌՄ-ում և արտասահմանում տված համերգները խոսում են այդ թեզի դեմ։ Այս բոլորն անտեսելով՝ առանձին «սրտացավ» մարդիկ, որ շահագրգռված էին հայ երաժշտությունը լայն էկրան գնալու խնդրով, առաջարկում էին մոդեռնացնել հայկական երաժշտությունը, այսինքն այն հարմարեցնել այդ երաժշտությունից ոչինչ չհասկացող կոսմոպոլիտների քիմքին։

Ցանկալի է մեր կինոն հեռու պահել երաժշտության այս ձևի «պատրիոտներից»։

Հետևաբար՝ «Սիրտն է երգում» ֆիլմի բեմադրողի և Երևանի կինոստուդիայի խոշոր սխալն է, որ այդ ֆիլմում հայկական երգը չի հնչում։

«Հովազաձորի գերիները» ֆիլմը ռեժիսոր Յու. Երզնկյանի առաջին ինքնուրույն աշխատանքն է։ Մեր պատանիների համար արված այս ֆիլմը պատանեկության մեջ դաստիարակում է սեր դեպի հայրենի բնությունը, արիություն, ընկերասիրություն, փոխադարձ օգնության զգացում։ Այս ֆիլմի հանողը երրորդ անգամ է, որ նկար է բեմադրում մանուկների մասնակցությամբ, որոնցից երկուսը երեխաների համար է։ Անպայմանորեն պետք է ընդունել երիտասարդ ռեժիսորի երեխաների հետ աշխատելու անվիճելի շնորհքը։ Այս ֆիլմն ավելի համոզիչ է, քան «Լեռնային լճի գաղտնիքը» նկարը, որի անհեթեթությունների հասնող թերությունների մասին խոսել է մեր մամուլը, նշվել է ստեղծագործական խորհրդակցություններում։ Այս նկարը ևս զերծ չէ նման թերություններից։ Ամենից առաջ անհասկանալի է, թե երեխաների անհետացումից հետո, երբ անհանգստանում են նրանց հարազատներն ու գյուղի ղեկավարները, ինչո՞ւ նրանք անմիջապես չեն խուզարկում իրենց հանդերն ու ձորերը, այլ դիմում են երկաթուղու և այլ կազմակերպությունների օգնությանը։ Պարզ է, որ դա անհրաժեշտ էր ֆիլմի հեղինակներին. նրանց պետք էր, որ երեխաների հետքը չգտնվի և նրանք հնարավորություն ունենան արկածներ ունենալ։ Բայց չէ՞ որ սա առնվազն միամիտ է։ Հետո, այդ ինչպե՞ս է, որ առանց վճարի փոստատարը ծրարներ ու թուղթ է բաժանում երեխաներին։ Ինչո՞ւ երեխաներն իրենց գերի են համարում դեռ այն ժամանակից, քանի դեռ չի փլվել կամուրջը և վերադարձի ճանապարհ կա։ Այս իրավացի հարցերը նկարը դիտողի ուղեղը զբաղեցնում են դահլիճից դուրս գալուց հետո։ Դահլիճում նա այդ մտքերով չի տարվում, քանի որ նա ամբողջովին կլանված է երեխաների՝ Գագիկի (Մկրտչյան) և Շուշիկի (Օրդոյան) անմիջական, անկեղծ խաղով։ Այն մթնոլորտը, որում արված է ֆիլմը, գրավում է դիտողին, և նա դահլիճից հեռանում է թեթև սրտով ու շնորհակալ մեր կինոաշխատողներից, որ նրանց հաջողվել է երեխաների համար ստեղծել մի լավ, գրավիչ ֆիլմ։

1956 թվականի գեղարվեստական ֆիլմերի շարքում իր առանձնահատուկ տեղն է գրավում ռեժիսոր Գր. Սարկիսովի «Երբ քեզ հետ են ընկերներդ» նկարը։ Այն նվիրված է շատ ակտուալ և ժամանակակից մի խնդրի՝ մեր երիտասարդության՝ արտադրության մեջ, այս դեպքում արդյունաբերական ձեռ-



նարկություններում աշխատանքի ներգրավելուն։ Ֆիլմի սյուժեն բարդ չէ. պոետ դառնալու հույսերով տարված պատանին դպրոցն ավարտելով գնում է Մոսկվա՝ գրականության ինստիտուտ ընդունվելու, սակայն այդ նրան չի հաջողվում։ Ռուբենը հուսահատ վերադառնում է տուն և չգիտե ինչ անել։ Հայրը, որ մեքենաշինական գործարաններից մեկում նշանավոր վարպետ է, որդուն խորհուրդ է տալիս գնալ արտադրության մեջ աշխատելու։ Տղան առանձին խանդավառությամբ չի հետևում հոր խորհրդին։ Երիտասարդ պոետացուն ընդունվում է գործարան, բայց շուրջը պրոզայիկ առօրյա տեսնելով՝ հիասթափվում է ու մյուս օրը աշխատանքի չի գնում։ Նա, սակայն, հետո զղջում է իր վարմունքի համար, վերադառնում է գործարան։ Հետագայում հարազատ միջավայրում նա արտադրական հաջողությունների է հասնում և տեսնում է, որ կյանքում գտել է իր տեղը։

Այս ֆիլմը նշանակալից է ոչ միայն իր թեմատիկայով ու ակտուալությամբ, այլև նրանով, որ բեմադրող Գր. Սարկիսովին հաջողվել է առաջինը մեր ռեսպուբլիկայում շոշափել արտադրական թեմա (որը դժվար գործ է համարվում բոլոր ստուդիաներում և շատ ստուդիաներ կան, որոնց չի հաջողվել նշանակալից ֆիլմ նկարահանել այս թեմայով) և կարողացել է ճշմարտացի կերպով տալ այն ջերմ մթնոլորտը, որը հնարավոր դարձրեց գործարանի մասին լսել չցանկացող երիտասարդի վերադաստիարակությունը։ Ֆիլմում ծաղրված է շաբլոնին հետևող կոմերիտմիության կազմակերպության բյուրոյի շաղակրատ քարտուղարը, որն անհոգի ու կազյոննի վերաբերմունք է ցուցաբերում դեպի իրեն վստահված գործը։

Բայց շաբլոնը պատժում է նաև բեմադրողին։ Ֆիլմում իբրև պարտադիր ասորտիմենտ հին ֆիլմերից բերված է մի վարպետ, որը անպայմանորեն հետամնաց է և կոչված է խանգարելու երիտասարդ բանվորին. ըստ որում նա (վարպետ Շաբոն) այն աստիճան սանձարձակ ու ճիվաղային է, որ դիտողը չի համոզվում, թե առաջավոր գործարանում վարպետի պատասխանատու աշխատանքը կարող էր վստահվել այդ աստիճան բացարձակ խուլիգանի։ Ֆիլմի հեղինակները սխալ են վարվել, որ Ռուբենին գործարան են ուղարկել բարձրագույն ուսումնական հաստատություն ընդունվելու գործում անհաջողության մատնվելուց հետո։ Ընդհակառակը, պետք էր ցույց տալ, որ պատանիները արտադրություն են դիմում ուղղակի աշակերտական նստարանին հրաժեշտ տալուց հետո։ Նրանք այս դեպքում էլ կարող էին գործարանում դժվարությունների հանդիպել և ֆիլմի հեղինակները կարող էին շարունակել իրենց սյուժեն։ Անհամոզեցուցիչ է նաև երիտասարդ զույգի գժտությունը՝ կնոջ սնոտիապաշտ լինելու պատճառով, ինչպես և ինքն այդ սնոտիապաշտությունը։ Երեխայի անհանգիստ լինելու համար նրա մայրը հնարավորություն ուներ լինելու իրենց գործարանի, թաղի և քաղաքի բազմաթիվ կոնսուլտացիաներում և չհասներ էջմիածին։

Ռեժիսորի ամենամեծ հաջողությունը պիտի համարել երիտասարդ դերասանների ընտրությունը, ինչպես և նրանցից մի քանիսի հաջող ու համակիչ խաղը (Գայանե՝ Զոյա Աթանեսյան, Կարո՝ Էդուարդ Քյոսայան, Օնիկ՝ Լևոն Բոյաջյան)։

Երկար անհաջող որոնումներից հետո Գր. Սարկիսովը ձեռնարկեց ժամանակակից թեմայի։ Այս, պետք է ասել, դժվարին ֆիլմը առաջին գործի անխուսափելի թերություններով թողարկելուց հետո, հուսով ենք, որ բեմադրողը

արդեն փորձ ունենալով, համարձակ ձեռնամուխ կլինի ժամանակակից նոր թեմայի նկարահանմանը։

Երևանի կինոստուդիայի 1956 թվականի արտադրած վեցերորդ ֆիլմը «Դարեր և տարիներ» դոկումենտալ նկարն է։ Այս ֆիլմը, որ լավ ընդունելություն գտավ ամենուրեք, պակաս չափով թերություններ ունի, քան վերը թված գեղարվեստական նկարները։ Եվ դա հասկանալի է։ Երևանի կինոստուդիան իր հարկադիր պարապուրդի տարիներին դեպքերի բերումով (կլոր հոբելյանական տարեթվերին) դոկումենտալ ֆիլմեր է արել և այդ բնագավառում զգալի դրական փորձ կուտակել։ Ռեժիսյոր Լ. Իսահակյանը, որ երկար աշխատել է դոկումենտալ ֆիլմերի բնագավառում, կարողացել է շնորհքով օգտագործել այդ փորձը և ավելի վառ ցույց տալ այն նվաճումները, որ հայ ժողովուրդը ձեռք է բերել պատմականորեն կարճ ժամանակամիջոցում։ Մեր պատմական անցյալի կարճ տեսությունից հետո ֆիլմում ցույց են տրվում այն նշանակալից նվաճումները, որ ձեռք են բերել մեր աշխատավորները կյանքի բոլոր բնագավառներում։

Ֆիլմը դիտող յուրաքանչյուր ոք պարզ պատկերացնում է, որ այն նվաճումները, որ ձեռք է բերել հայ ժողովուրդը, հնարավոր էր միայն լենինյան ազգային քաղաքականության կիրառման, սովետական կարգերի պայմաններում։

Պետք է դարձյալ նշել, որ ընդհանուր լավ աշխատանքի հետ այստեղ էլ հեղինակներին չի հաջողվել խուսափել շաբլոնից։ Այստեղ էլ տեսնում ենք տասնամյակների ընթացքում ֆիլմից-ֆիլմ փոխադրվող խաղողի կողովները ուսերին անցնող աղջիկների շարան, մատենադարանում ամենամեծ գիրքը ամենափոքրի հետ համեմատելը և այլն։ Այն նորը, որ տեսնում ենք ֆիլմում, առանձին դեպքերում ոչ թե արդյունք է տվյալ օբյեկտը նոր ու հետաքրքիր ձևով լուսաբանելու, այլ այն բանի, որ նա արգասիք է անցած ֆիլմից մեզ բաժանող տարիների ընթացքում մեր աշխատավորների աշխատանքի։ Պիտի ափսոսալ, որ այդքան հարուստ նյութին չի ուղեկցում այնպիսի ոգեշնչված ու պոետիկ տեքստ, որը ուներ «Խնդության երկիր» ֆիլմը, որի հեղինակներից մեկը դարձյալ ռեժիսյոր Իսահակյանն էր։

***

Մի տասնամյակ առաջ, երբ Երևանի կինոստուդիան դեռ գունավոր նկարահանումներ չէր անում, ռեժիսյոր Յա. Քոչարյանը իրեն հատուկ համառությամբ ձեռք բերեց գունավոր ժապավեն և երկու մասանի կինոակնարկ նկարահանելու թույլտվություն ստացավ։

Նա նկարահանեց Երևանի աշունը. նայելով դեղձով ծանրաբեռնված ծառերին, պամիդորին, խաղողին բոլորս հիանում էինք, թեև ակնարկը արված էր անկապ և անգրագետ՝ գույների համադրության տեսակետից։

Բայց ինչո՞ւ էինք հիանում։

Հիանում էինք այն պատճառով, որ դա առաջին գործն էր։ Մեզ ուրախացնում էր այն գիտակցությունը, որ փորձն արդեն արվեց և վաղը Երևանի ստուդիան էլ կսկսի գունավոր նկարահանումներ անել։ Այդպես էլ եղավ։ Մի քանի տարի է, որ Երևանի կինոստուդիան սկսել է գունավոր նկարներ արտադրել, իսկ այս տարի արդեն կունենա իր գունավոր լաբորատորիան։



Այժմ, սակայն, չենք կարող ուրախանալ ու հորթի հրճվանքի մեջ ընկնել նրա համար, որ կարողանում ենք նկարահանել և այն էլ միանգամից մի քանի ֆիլմ։ Մեզ ուրախացնելու համար այժմ շատ բան է պետք։

Այն, ինչ արվել է մինչև հիմա, իսկ դա արվել է մեծ դժվարությունների հաղթահարումով ու հերոսական աշխատանքով՝ զգալի նվաճում է։ Դա սկիզբն է այն մեծ գործի, որին սպասում է մեր հասարակությունը, որն իրավունք ունի մեծ կտավի և արդիական ֆիլմեր պահանջելու Հայֆիլմից։ Արված ֆիլմերը անխտիր կրում են առաջին աշխատանքի խորը կնիք և, դժբախտաբար, վկայում են մի բան, որ կինոարվեստի բնագավառում աշխատող մեր մշակները իրենց լրիվ հաշիվ չեն տալիս, թե ինչի՞ են նրանք կոչված և ի՞նչ է պահանջվում նրանցից։ Դժբախտաբար բարեկամաբար արվող դիտողությունները հիվանդագին կերպով են ընդունվում նրանց մի մասի կողմից, որոնք այնքան են ինքնավստահ ու ինքնահավան, որ անգամ հարմար են համարում մամուլի կողմից արված դիտողությունները դիտել իբրև թշնամական ակտ՝ կինոաշխատողների նկատմամբ։

Դրա փոխարեն լավ կլիներ նրանք ըմբռնեին, որ այն, ինչ արվել է 1955 և 1956 թվականներին, մեր հասարակությունն ընդունել է իբրև անխուսափելի անցողիկ մի շրջան՝ անգործությունից մինչև գեղարվեստական ֆիլմեր անելուն վարժվելը։ Գաղտնիք չէ, որ դեռ վերջերս արված ֆիլմերից շատերը չեն հիշվում, հիշողության մեջ չեն մնում։ Մինչդեռ կան տասնամյակներ առաջ արված ֆիլմեր, բայց անջնջելի են մնացել դիտողների հիշողության մեջ (օրինակ՝ «Նամուս», «Զարե», «Պեպո», «Զանգեզուր», «Լեռնային մարշ», «Սևանի ձկնորսները») այնինչ ավելի ուշ արված ֆիլմերը, ինչպես «Լեռնային հեղեղ», «Արարատյան դաշտի աղջիկը», «Մի անգամ գիշերը», «Անահիտ» մոռացվել են։

Ո՞րն է դրա գաղտնիքը։

Դա ցույց տալու համար տեսական մեծ վերլուծություններ կատարելու կարիք չկա։ Առաջիններում կյանքը տրվել է ճշմարտացի, մարդիկ գործել են իրենց բնական միջավայրում, խոսել իրենց հատուկ, տիպիկ, կենդանի լեզվով, իսկ երկրորդում ամեն ինչ փչացրել է խարակտերների համահարթումը, անկոնֆլիկտայնությունը, իրականությունը լաքելը, հետևաբար՝ աղավաղումը։ Դրա որոշ տարրերը մենք տեսնում ենք նաև դեռ վերջերս արված ֆիլմերի մի զգալի մասում ևս («Լեռնային լճի գաղտնիքը», «Հասցեատիրոջ որոնումները», «Հովազաձորի գերիները», մասամբ «Սիրտն է երգում»)։

Պարզ է, թե որն է մեր կինոարվեստի իսկական ճանապարհը։ Նա ամենից առաջ ճշմարտացի կերպով, մեծ արվեստով պետք է ցույց տա մեր առօրյան իր բազմազանությամբ, բարդությամբ ու վեհությամբ, վեր հանի մեր ժամանակի մարդուն, ցույց տա, թե ինչն է, որ նրան դարձնում է այդքան տոկուն ու համառ՝ լենինիզմի գաղափարները իրագործելու համար մղած պայքարում։ Իր խոր վերլուծական նկարագրությունն է սպասում հայ ժողովրդի ռևոլյուցիոն պայքարը դաշնակների տիրապետության դեմ և երկրում սովետական կարգեր հաստատելու համար։ Մեր էպոսը, հայ ժողովրդի հերոսական անցյալի առանձին դրվագները, այդ ժողովրդի ջահակիր լինելը՝ դարերի խորքից, ցայտուն ֆիլմերով պետք է տրվի մեր ժողովրդին։ Այս անելու համար անհրաժեշտ է կարողանալ ֆիլմում էպոխա, միջավայր ստեղծել, քանդակել իսկական կերպարներ իրենց հարազատ միջավայրում, որոնք լինեն այդ մի-

ջավայրի ծնունդը և ոչ թե նկարի մեջ երևան կոնգլոմերատի ձևով ի մի հավաքված տարբեր տրադիցիաների տեր մարդիկ: Ի՞նչ խոսք, որ դրա համար պահանջվում է մեր կյանքի, ժողովրդի, նրա անցյալի ու կուլտուրայի լավ իմացություն, որ, դժբախտաբար, դեռ պակասում է մեր կինոարվեստի ստեղծագործական աշխատողների և՛ ավագ, և՛ կրտսեր սերնդին:

Բայց կյանքը հրամայաբար դնում է դրա պահանջը:

Կինոարվեստի բնագավառում շատ վաղուց գոյություն ունի «ոչ մի վիջում» լավ լոզունգը, որը, դժբախտաբար, երբեք խստորեն չի կիրառվել:

Հայկական կինոարվեստի վերջին տարիների ուղին անընդհատ զիջումների ուղին է, որը վերջնականապես պետք է փակվի: Արդեն եկել է ժամանակը, երբ մենք մեր կինոարվեստից լիարժեք քաթաններ պահանջելու իրավունք ունենք:

Ընկեր Մ. Շաթիրյանը, որ «Սովետական արվեստ» ամսագրի 1957 թ. № 2-ում համարյա ամփոփել է հիշյալ ամսագրի մեր կինոարվեստի խնդիրների շուրջը բացած խրախուսելի մտքերի փոխանակությունը, ասում է. «Սակայն չի կարելի նաև ծայրահեղության մեջ ընկնել, և անտեսելով մեր այսօրվա ուժերն ու հնարավորությունները, պահանջել մեր կինոարվեստից այն, ինչին նա միայն վաղը ի վիճակի կլինի հասնել»:

Ընկ. Շաթիրյանի ո՞ր պահանջն է, որին մեր կինոարվեստը «միայն վաղն» ի վիճակի կլինի հասնել:

Ահա այն. «...ունենալ կուռ դրամատուրգիա, ցայտուն կերպարներ, սեղմ ու բովանդակալից դիալոգ»:

Ահա՜ թե ինչ:

Եթե մեր կինոարվեստը միայն վաղը ի վիճակի կլինի անել այդ, ապա այսօր ի՞նչ պիտի անի: Դա կնշանակի «օբյեկտիվ մոտեցման» ակադեմիական դատողություններով հովանավորել «յոլա տանելու» անհանդուրժելի պրակտիկան և այն շարունակել մինչև անհայտ ու անժամկետ «վաղը»: Իսկ ակնհայտ է, որ «յոլա տանելով» ոչ մի արվեստ ոչ մի բարձունքի չի հասնի:

***

Խոսելով կինոարվեստի մասին՝ ոչ մի րոպե չի կարելի մոռանալ, որ նա սերտորեն կապված է տեխնիկայի և բավականին բարդ տեխնիկայի հետ: Ժամանակակից կինոստուդիան հագեցված է ամենաճշգրիտ ապարատներով, հնչունագիր կամերաներով, քիմիական լաբորատորիաներով և, վերջապես, ամբողջ աշխատանքի բախտը կախված է նրանից, թե ինչ որակի կինոժապավենի վրա են նկարահանվում թանկարժեք, ընդարձակ պավիլիոնները: Հետևաբար տեխնիկան այստեղ վճռական նշանակություն ունի, նա կարող է շատ բարձրացնել ֆիլմը և, ընդհակառակը, այդ տեխնիկային լրիվ չտիրապետելու ժամանակ՝ փչացնել այն:

Երևանի կինոաշխատողների դժբախտությունն այն է, որ մեր կինոստուդիան Սովետական Միության մեջ տեխնիկայով առավել պակաս հագեցված ստուդիաներից է և արտադրական ու պավիլյոնային նույնիսկ մինիմալ հնարավորություններ չունի՝ իր արտադրական աշխատանքի ծավալին համապատասխան: Սա այնպիսի թերություն չէ, որը հնարավոր լինի անտեսել, քանի որ դա սերտորեն կապված է մեր կինոարվեստի աշխատողներին առաջադրվող



բարձր պահանջների հետ. չի կարելի մարդկանցից գեղարվեստորեն և իդեապես բարձր ու կատարյալ ֆիլմեր պահանջել՝ առանց տարրական հարմարություններ ստեղծելու դրա համար: Այս վիճակը, որ ստեղծված է Երևանի կինոստուդիայում, պետք է քննվի ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի 1956 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումների ոգով և դրական լուծում տրվի:

Այդ կապակցությամբ չի կարելի մի քանի խոսք չասել կինոարտադրության նոր բազա, ապա ժամանակակից կինոստուդիա կառուցելու անհրաժեշտության մասին, որ միշտ խոսակցության առարկա է, բայց կոնկրետ լուծում չի ստանում:

Վերջապես չի կարելի հանդիմանական խոսք չասել մեր կինոաշխատողներին՝ մուլտիպլիկացիոն ֆիլմեր անելուց հրաժարվելու համար: Այս հանդիմանանքը առաջին հերթին վերաբերում է կինոստուդիայի նախկին դիրեկտոր ընկ. Ա. Կանանովին և ստուդիայի նախկին գլխավոր ռեժիսոր ընկ. Ամո Բեկ-Նազարովին, որոնք այդ բնագավառում ստեղծված սցենարական-տեխնիկական դժվարություններից ազատվելու հեշտ միջոցը համարեցին ստեղծագործական շնորհքով մի կոլեկտիվի լիկվիդացումը: Մինչդեռ մեծ դժվարություններով էին ստեղծվել մուլտիպլիկացիոն ցեխը և նրա շնորհալի կադրերը:

Եթե նկատի ունենանք այս ժանրի կարևորությունը մեր մանուկ սերնդի դաստիարակության գործում, ապա կտեսնենք, թե ինչ խոշոր բավականությունից ենք զրկել մեր երեխաներին: Կինոստուդիայի ղեկավարությունը և Կուլտուրայի մինիստրությունը անպայմանորեն պետք է մտահոգվեն այս խնդրով:

***

Սովետական կինոարվեստի առաջ ծառացած խնդիրներն այն հոյակապ խնդիրներն են, որ կոչվում են կոմունիստական հասարակարգի կերտում: Այսինքն՝ սովետական հասարակությանը և առաջավոր մարդկությանը հուզող խնդիրներից կարևորագույնները: Այդ խնդիրների մակարդակի բարձրության վրա գտնվելու է կոչված նա՝ մեր գրականության ու արվեստի բազմաթիվ ճյուղերի հետ միասին:

Սովետական մարդկանց բաղձանքն է մեր կինոարվեստը տեսնել այդ վիճակում, յուրաքանչյուրը մեզնից նախանձախնդիր է դրան: Երբ խոսում ենք Հայկական կինոարվեստի մասին, միշտ ելնում ենք նրանից, թե նա այսօր ի՞նչպես է կատարում իր ինտերնացիոնալ պարտքը, ի՞նչ լումա է մտցնում սովետական ընդհանուր ու մեծ կինոարվեստ ստեղծելու գործում: Իսկ ավանդը, ցավոք սրտի, դեռ փոքր է: Ահա, թե ինչու են բորբոքվում կրքերը ամեն անգամ, երբ մտքերի փոխանակություն է սկսվում կինոարվեստի հարցերի շուրջը:

Մարտ ամսին կինոարվեստի հարցերի շուրջը Կուլտուրայի մինիստրության հրավիրած խորհրդակցությունը այդ բնագավառը ղեկավարող ընկերներին հնարավորություն տվեց ծանոթանալու եղած թերություններին և բազմաթիվ կենսական խնդիրներ, որ առաջադրվեցին այնտեղ, կենսագործելու առաջիկա աշխատանքում:

Այստեղ բացառիկ կարևոր դեր է վերապահված կինոստուդիայի պարտիական կազմակերպությանը: Նա պետք է գլխավորի ստեղծագործական

կոլեկտիվի համառ պայքարը մեր կինոարվեստը մի նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու համար։ Ստեղծագործական ոչ մի կարևոր հարց չպետք է անցնի սկզբնական կազմակերպության կողքից. նրան պետք է հուզեն թեմատիկայի հարցերից մինչև առանձին ստեղծագործական աշխատողի վարպետության հասնելու հարցերը։ Ցավոք սրտի, սակայն, պետք է նշել, որ անցյալում եղել են դեպքեր, որ հակառակ պարտկազմակերպության որոշման, արտադրություն են հանձնվել գեղարվեստականորեն և իդեապես թերություն ունեցող սցենարներ։

Պարտիական կազմակերպությունը պետք է զբաղվի վերջերս մամուլում արծարծված «Ուրվականները թողնում են բարձունքները» ֆիլմի սցենարի հեղինակներ Կոլտունովի և Քարամյանի կողմից կատարած պլագիատի հարցով։

Պարտկազմակերպությունն իր հերթին ավելի ուշիմ ու մտածված աշխատանքով պետք է օգնի դիրեկցիային ու վերադաս պարտիական օրգաններին հասնելու նրան, ինչին մենք ձգտում ենք կինոարվեստի բնագավառում։

Դրան մեծապես կօգնի կինեմատոգրաֆիայի՝ արվեստի այդ սինթետիկ ճյուղի շուրջը համախմբելը մեր կուլտուրայի բոլոր բնագավառների բանիմաց և շնորհալի մշակներին։ Եթե այդ գծով խրախուսելի աշխատանք է կատարվում կոմպոզիտորների հետ, ապա չի կարելի չդատապարտել այն նախապաշարումը, որ գոյություն ունի կինոստուդիայի աշխատողների մի զգալի մասի մեջ՝ թատերական ռեժիսյորների ուժերի նկատմամբ, որոնք, անկասկած, օգուտ կբերեն մեր կինոարվեստին։

Աշխատանքի ինքնաամփոփ եղանակը օգուտ չի բերել արվեստի ոչ մի բնագավառի և ոչ մի օգուտ չի կարող բերել մանավանդ կինոարվեստին, որը, ինչպես հայտնի է, սինթեթիկ է համարվում։

Մենք պետք է հասնենք հայկական կինոարվեստի կատարյալ հասունությանը։ Ով ազնվորեն նվիրված է արվեստին և զգաստ է նայում իրերի վիճակին, նա գիտակցում է, թե մենք դեռ ինչքա՜ն ետ ենք մնացել այդ բնագավառում։ Պետք է քրտնաջան աշխատանքով ձգտել ամենակարճ ժամանակում նվազեցնել այն տարածությունը, որ մեզ բաժանում է «Մոսֆիլմ», «Լենֆիլմ» ստուդիաների, ինչպես և արտասահմանյան պրոգրեսիվ կինոաշխատողների նվաճումներից։

Դա հրամայական պահանջ է, որ դրվում է մեր կինոաշխատողների և մասնավորապես կոմունիստ ստեղծագործական աշխատողների առջև։

Նրանք, անկասկած, կլուծեն այդ լուրջ խնդիրը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԻՆԸ ՆՈՐ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԱԿՏԻՎ ԿԱՌՈՒՑՈՂՆ Է

## Մ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Սովետական ժողովուրդը բուռն խանդավառությամբ է նախապատրաստվում տոնելու մարդկության պատմության մեջ նոր դարագլուխ բացած Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը։ Մեծ Հոկտեմբերի փոթորկալից օրերին, երբ կենաց ու մահու կռիվ էր գնում Սովետական ռեսպուբլիկայի պահպանության համար, մեր երկրի հազարավոր կանայք զենքը ձեռքին, տղամարդկանց հետ կողք-կողքի արիաբար մարտնչում էին թշնամու դեմ բանվորների ու գյուղացիների առաջին իշխանությունն ամրապնդելու համար։ Երկրի խաղաղ շինարարության տարիներին, սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում սովետական կանայք հանդես բերին ակտիվ մասնակցություն ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին հազարավոր կանայք ռազմաճակատում իրենց քաջագործություններով, իսկ միլիոնավոր կանայք թիկունքում իրենց աշխատանքային սխրագործություններով փառավոր էջեր գրեցին մեր ժողովուրդների պատմության մեջ։ Այժմ, երբ մեր երկիրը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սոցիալիզմից աստիճանաբար անցնում է կատարում դեպի կոմունիզմ, կանայք ամենաակտիվ մասնակցությունն են ունենում այդ վեհ գործին։

***

Վ. Ի. Լենինը խոշոր նշանակություն էր տալիս կնոջը հասարակական, քաղաքական կյանքին ներգրավելու հարցին։ Նա գտնում էր, որ չի կարելի նոր հասարակություն կառուցել առանց կանանց հասարակական ծառայության, քաղաքական կյանքի ասպարեզ ներգրավելու։ «Սովետական իշխանության սկսած գործը,—ասում էր Վ. Ի. Լենինը,— կարելի է առաջ տանել միայն այն ժամանակ, երբ հարյուրավոր կանանց փոխարեն ամբողջ Ռուսաստանում այդ մեծ գործին կմասնակցեն միլիոնավոր ու միլիոնավոր կանայք։ Այն ժամանակ սոցիալիստական շինարարության գործը, մենք վստահ ենք, կամրապնդվի։ Այն ժամանակ աշխատավորները կապացուցեն, որ իրենք կարող են ապրել և կարող են տնտեսավարել նաև առանց կալվածատերերի ու կապիտալիստների։ Այն ժամանակ սոցիալիստական շինարարությունը Ռուսաստանում այնպես ամուր կկանգնի, որ Սովետական ռեսպուբլիկայի համար ոչ մի արտաքին թշնամի մյուս երկրներում և Ռուսաստանի ներսում սարսափելի չի լինի» (հատոր 30, էջ 38)։

*Կապիտալիզմի պայմաններում, որտեղ իշխում էր արտադրության մի-
ջոցների մասնավոր սեփականությունը, կնոջ ազատության, իրավահավասա-
րության մասին խոսք անգամ լինել չի կարող։*

*Կնոջ հարցը դրականորեն լուծեց միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական
Մեծ ռևոլյուցիան։ Նա մեկ անգամից վերացրեց կնոջ օրենսդրական անհա-
վասարությունն օրենքով։ Սոցիալիստական հասարակարգը կանանց ազատեց
շահագործման կապանքներից և նրա առջև լայն հնարավորություն բացեց
իրենց միտքը, կազմակերպական տաղանդն ու ստեղծագործական ունակու-
թյունները դրսևորելու պետական, տնտեսական, կուլտուրական և հասարա-
կական կյանքի բոլոր ասպարեզներում։ Սովետական իշխանությունը հաստա-
տեց տղամարդկանց և կանանց քաղաքական և քաղաքացիական իրավունք-
ների լրիվ հավասարություն, ընտրելու և ընտրվելու իրավունք, աշխատանքի,
հանգստի, կրթության իրավունք։ Կանանց և տղամարդկանց հավասարությունը
ոչ միայն հայտարարվեց օրենքով, այլև ապահովվեց նրա փաստական իրակա-
նացումը։*

*Կնոջ իրավահավասարության իրականացման Սովետական Միության
փորձը մեկ ընդմիշտ հերքեց և մերկացրեց բուրժուական ռեակցիոն, կեղծ գի-
տական թեորիաները, որոնք փորձում են ապացուցել կնոջ հոգեկան ու լիար-
ժեքությունը, որ իբր թե կինը չի կարող տղամարդուն հավասար դիրք գրավել
հասարակության մեջ և ընտանիքում։*

*Սովետական Միության օրինակով ամբողջ աշխարհի աշխատավորները
տեսնում են, որ կնոջ ազատագրումը հնարավոր է միայն մարդու կողմից մար-
դու շահագործման ոչնչացման, սոցիալական և ազգային ճնշումների լիկվի-
դացման միջոցով։*

*Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ հարկավոր է, որպեսզի կին բանվորու-
հիները ավելի ու ավելի շատ մասնակցեն հասարակական ձեռնարկություն-
ների կառավարմանը և պետության կառավարմանը։ Կառավարելով, կանայք
արագորեն կսովորեն և կհասնեն տղամարդուն։*

*Սովետական Միությունում իրականացվում են Լենինի այդ խոսքերը.
միայն Սովետներում ընտրված կանանց թիվը խոսում է հասարակական կյան-
քում և պետության կառավարման գործում կնոջ աճած դերի մասին։ Այսպես,
ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են ընտրված 343 կին, դա շատ
ավելի է, քան բուրժուական երկրների բոլոր պառլամենտներում եղած կանանց
թիվը միասին վերցրած։ Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերա-
գույն Սովետների դեպուտատներ են 2209 կին, ավելի քան կես միլիոն կա-
նայք ընտրված են տեղական Սովետներում։*

*Մեզ մոտ, Հայաստանում կանայք տղամարդկանց հետ համահավասար
մասնակցում են պետության կառավարման գործին։ Բավական է նշել, որ մեր
ռեսպուբլիկայից 7 կին ընտրված են ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ-
ներ, որոնց թվին են պատկանում Ապակե տարայի գործարանի դիրեկտոր
Մ. Բաբաջանյանը, արտադրության առաջավոր և նորարար Ա. Առաքելյանը,
ռեսպուբլիկայի կոմունալ տնտեսության մինիստր Ն. Թուխիկյանը, վաստա-
կավոր մանկավարժ Վ. Դայանը, ՀԿՊ Վեդու շրջկոմի Արարատի ՄՏԿ-ի գոտու
գծով քարտուղար, ագրոնոմ Ն. Վիրաբյանը և ուրիշները։ 91 կին ընտրված են
ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատներ, 4219 կին ընտրված են տեղական
Սովետներում։*



*Հազարավոր բանվորուհիներ և կոլտնտեսուհիներ մասնակցում են նյու-
թական բարիքների ստեղծմանը, տալիս են բարձր արտադրողականությամբ
աշխատելու փայլուն օրինակներ։ Կանայք ռեսպուբլիկայի արդյունաբերության
մեջ կազմում են աշխատող բանվորների, ինժեներների, տեխնիկների ընդհա-
նուր թվի ավելի քան 40 տոկոսը։*

*Շատ բանվորուհիներ ֆաբրիկաներում և գործարաններում ցույց են տա-
լիս աշխատանքի հիանալի օրինակներ։ Ջուլհակուհի Լ. Գասպարյանը 29 տա-
րի անփոփոխ աշխատում է Լենինականի Մայիսյան ապստամբության անվան
մանվածքային ֆաբրիկայում. Նա այժմ սպասարկում է 762 իլիկ և իր օրվա
նորման կատարում է 125 տոկոսով, պետությանը պլանից դուրս ամեն օր
տալով 30 կգ. մանվածք։*

*Ռեսպուբլիկայում հայտնի են Կիրովի անվան գործարանի 1—7 ցեխի
ավագ մեքենավարուհի Դ. Կոնովալովայի, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրի-
կայի գործող բանվորուհի Օ. Սիմոնյանի, Կորդի ֆաբրիկայի մանող բանվո-
րուհի Մ. Հովհաննիսյանի և շատ ուրիշների անունները, որոնք աշխատանքա-
յին սխրագործություններ են կատարում մեր Հայրենիքի հզորության և բար-
գավաճման համար։*

*Կանայք մեծ ուժ են նաև սոցիալիստական գյուղատնտեսության մեջ։
Նրանք ակտիվորեն մասնակցում են գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշ-
տակի վերելքի համար մղվող պայքարին։ Տասնյակ ու հարյուրավոր կանայք
գլխավորում են գյուղատնտեսության արտադրության պատասխանատու տե-
ղամասեր, աշխատում են որպես կոլտնտեսությունների նախագահներ, գյու-
ղատնտեսության մեխանիզատորներ, անասնաբուծական ֆերմաների վարիչ-
ներ, զոոտեխնիկներ, ագրոնոմներ և այլն։*

*Շահումյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսությունը համարվում
է ռեսպուբլիկայի լավագույն կոլտնտեսություններից մեկը։ Այստեղ տարեց-
տարի բարձրանում է սոցիալիստական դաշտերի բերքատվությունն ու ավե-
լանում հանրային հոտի գլխաքանակը, աճում է դրամական եկամուտը։ Այդ
հաջողությունների գաղտնիքը նրանումն է, որ կոլտնտեսությունում ճիշտ են
ընտրված և տեղադրված կադրերը, որոնց թվումն է կոլտնտեսության նախա-
գահ, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Նազանի Գալստյանը։*

*Տնտեսությունը հմտությամբ վարելու լավագույն օրինակ է ցույց տալիս
նաև Կիրովականի շրջանի Լերմոնտովո գյուղի կոլտնտեսության նախագահ
Լ. Ռուբցովան։ Նա որպես 30 հազարական մեկնեց ետ մնացող կոլտնտեսու-
թյուն, որի բարձրացման համար լարված աշխատանք է կատարում։*

*Էջմիածնի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսության բամբակագործական
օղակը, որին ղեկավարում է Կ. Մկրտչյանը, 1956 թվականին հեկտարից մի-
ջին հաշվով պետությանն է հանձնել 40 ցենտներ բամբակ։*

*Վեդու շրջանի աշխատավորությանը հայտնի է Կիրովի անվան սովետա-
կան տնտեսության այգեգործական օղակի օղակավարուհի Մարգարիտ Սա-
յադյանի անունը։ Նրա ղեկավարած օղակը ամեն տարի ստանում է խաղողի
բարձր բերք։ 1956 թվականին այդ օղակն իրեն ամրացրած 7,3 հեկտար խա-
ղողի այգու յուրաքանչյուր հեկտարից ստացել է 173 ցենտներ բերք։ Իր լա-
վագույն աշխատանքի համար նա ընտրվեց շրջանային Սովետի դեպուտատ։
Ռեսպուբլիկայում մեծ համբավ են ձեռք բերել անվանի կթվորուհիներ՝ Ա. Ավե-
տիսյանը, Ռ. Հակոբյանը (Շահումյանի շրջան), Տ. Սիրովարկինան (Կալինի-*

նոյի շրջան) և շատ ուրիշները, որոնք 1956 թվականին փուրաժային ամեն մի կովից կթել են 4000—5000 լիտր կաթ։ 45 կթվորուհի պարգևատրվել են ՀՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով։

Շատ կանայք աշխատում են որպես աշխատավորների դեպուտատների գյուղական Սովետների նախագահներ։ Հոկտեմբերյանի շրջանի Մարգարայի գյուղսովետի նախագահ է աշխատում Սաթիկ Մաթևոսյանը։ Նա մեծ աշխատանք է կատարել գյուղի բարեկարգման, կուլտուրական շինարարության, ճանապարհաշինության ուղղությամբ։ Նրան կարելի է տեսնել ամենուրեք՝ և հիվանդանոցում, և դպրոցում, և ակումբում, և կոլտնտեսության դաշտերում. որտեղ էլ որ նա լինում է, խորանում է հարցերի մեջ, օգնում է վերացնելու նկատված թերությունները։

Կանայք ակտիվ մասնակցություն ունեն նաև մեր երկրի գիտական և կուլտուրական կյանքին։ 1956 թվականին կանայք կազմում էին բարձրագույն կրթությամբ բոլոր մասնագետների 53 տոկոսը։ Շուրջ 10 հազար կին ունեն գիտությունների թեկնածուի և դոկտորի աստիճան, պրոֆեսորի և դոցենտի կոչում։ Ագրոնոմների 40 տոկոսից ավելին կանայք են։

Սովետական Միության գիտնականների շարքերում արժանավայել տեղ է գրավում ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ, մաթեմատիկոս Պ. Կոչինան, որը բազմաթիվ գիտական աշխատություններ ունի նվիրված հիդրոտեխնիկայի հարցերին։ Մեր Հայրենիքի գիտության ծաղկման գործին աչքի ընկնող ծառայություն մատուցելու համար ընկ. Պ. Կոչինան արժանացել է Լենինյան մրցանակի։ ՍՍՌՄ Լենինի անվան Գյուղատնտեսական գիտությունների ակադեմիայի իսկական անդամ Ուշակովան իր բեղմնավոր աշխատանքով մեծ գործ է կատարել գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։

Մեր ռեսպուբլիկայում ևս գիտության, արվեստի և գրականության ասպարեզում կանայք քայլում են առաջավորների շարքերում։ Փոքր չէ շնորհալի կին նկարիչների, քանդակագործների, արտիստուհիների թիվը։ Ավելի քան 97 կին ռեսպուբլիկայի վաստակավոր արտիստուհիներ են, 22-ը՝ ժողովրդական, իսկ երեքը՝ ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհիներ։

Շատ կանայք աշխատում են գիտության բնագավառում, ակտիվ մասնակցություն են հանդես բերում գիտական նորանոր պրոբլեմների մշակմանը։ Ռեսպուբլիկայում գիտության բնագավառի աշխատողներից շուրջ 800-ը կանայք են։ Հայտնի են գիտության բնագավառի աշխատող անվանի շատ կանայք, ահա ՀՍՍՌ Ակադեմիայի թղթակից անդամ, քիմիական գիտությունների թեկնածու Վ. Տարայանը, որի հայտնագործությունները կիրառում են գտել երկրի շատ լաբորատորիաներում։ Բիոլոգիական գիտությունների դոկտոր Դ. Բաբայանը, քիմիական գիտությունների դոկտոր Ա. Բաբայանը և շատ ուրիշներ։

Կանայք մեծ գործ են կատարում ժողովրդական կրթության և առողջապահության բնագավառներում։ Բավական է նշել, որ ուսուցչական բանակի 70 տոկոսը կանայք են. ավելի քան մեկ միլիոն կանայք աշխատում են առողջապահության ասպարեզում։ Մեր ռեսպուբլիկայում հարյուրավոր կանայք իրենց ուժերն ու ընդունակությունները նվիրում են աճող սերնդի կրթության ու դաստիարակության ազնիվ գործին, մեծ սիրով և ջանասիրությամբ կատարում են բժշկի և ուսուցչի պատվավոր պարտականությունները։ Ռեսպուբլի-



կայի մանկավարժներից շուրջ 10 հազարը կանայք են, որոնցից 247-ը արժանացել են ռեսպուբլիկայի վաստակավոր ուսուցչի կոչման։ Բժիշկների 60 տոկոսը կանայք են։

Վ. Ի. Լենինը հասարակական ճաշարանները, մսուրները, մանկապարտեզները, որոնք թեթևացնում են կնոջ աշխատանքը, համարում էր կոմունիզմի ծիլեր և գտնում էր, որ այդ միջոցներն են, որոնք իրոք կոչված են ազատագրելու կնոջը, կարող են նվազեցնել և ոչնչացնել նրա անհավասարությունը տղամարդու հետ՝ հասարակական արտադրության և հասարակական կյանքի մեջ ունեցած դերի տեսակետից։ Կենսագործելով մեծ Լենինի այս ցուցումները, մեր երկրում տարեց-տարի ընդարձակվում է մանկապարտեզների, մանկամսուրների, հասարակական սննդի և առևտրի օբյեկտների ցանցը։ Զգալիորեն ավելացել է սննդի կիսաֆաբրիկատների, կնոջ աշխատանքը թեթևացնող խոհանոցային իրերի արտադրանքի թողարկումը և այլն։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայում գործում են ավելի քան 300 մանկապարտեզներ, 156 մանկամսուրներ, չհաշված ամառը դաշտային աշխատանքների ժամանակ կոլտնտեսությունների մանկապարտեզներն ու մանկամսուրները։

ՍՄԿՊ XX համագումարը կանանց աշխատանքի և կենցաղային պայմանների հետագա բարելավման համար նշեց մի շարք միջոցառումներ։ Համաձայն համագումարի որոշման ավելացվեց հղիության և ծննդաբերության արձակուրդների տևողությունը, ստեղծվեցին առաջին գիշերօթիկ դպրոցները, ցերեկօթիկ խմբերը՝ դպրոցներում և ակումբներում, ավելացավ մանկապարտեզների, մանկամսուրների և ծննդատների շինարարությունը։

Պարտիան և կառավարությունը բարձր են գնահատում կանանց անձնվեր աշխատանքը։ Ռեսպուբլիկայում քաջարի աշխատանքի համար 7978 կին պարգևատրված են շքանշաններով և մեդալներով, 65 կին արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։

Ներկայումս, երբ ռեսպուբլիկայում լայն կերպով ծավալվել է սոցիալիստական մրցությունը ի պատիվ Հոկտեմբերի 40-ամյակի, այդ մրցության մեջ ակտիվ կերպով մասնակցում են նաև կանայք։ Ֆաբրիկաներում և գործարաններում, կոլտնտեսություններում, ՄՏԿ-ներում և սովետական տնտեսություններում կանայք հանդես են գալիս նաև արժեքավոր նախաձեռնություններով, նորանոր պարտավորություններ են վերցնում կատարելու և գերակատարելու արտադրական նորմաները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Կանանց արտադրական ակտիվությունը կլիներ ավելի բարձր, եթե տեղական պարտիական և սովետական կազմակերպություններն ավելի շատ ուշադրություն դարձնեին նրանց աճեցմանը, նրանց հետ տարվող աշխատանքին։

ՍՄԿՊ XX համագումարը նշեց, որ մի շարք պարտիական և սովետական օրգաններում կանանց երկչոտությամբ են առաջ քաշում ղեկավար աշխատանքի։ Պետք է նշել, որ այդպիսի մոտեցում գոյություն ունի նաև մեր ռեսպուբլիկայի առանձին շրջանների պարտիական, սովետական կազմակերպություններում։ Այլապես ինչով կարելի է բացատրել, որ պարտիական, սովետական, կոմերիտական օրգաններում ղեկավար աշխատանք կատարող կանանց թիվը դեռևս քիչ է։

Առանձնապես անբավարար է կանանց ղեկավար աշխատանքի առաջ քաշ-

ման գործը գյուղական շրջաններում։ Այսպես, Արտաշատի շրջանը համարվում է ռեսպուբլիկայի առաջավոր շրջաններից մեկը։ Այստեղ բանիմաց շատ կին կադրեր կան, որոնք աչքի են ընկնում որպես լավագույն բամբակագործներ, խաղողագործներ, բայց նրանցից միայն վեցն են կոլտնտեսություններում աշխատում որպես բրիգադավարներ։ Ստեփանավանի, Ալավերդու, Հոկտեմբերյանի, Կալինինոյի, Կոտայքի և մի շարք ուրիշ շրջաններում կոլտնտեսությունների վարչության նախագահների պոստում ոչ մի կին չի աշխատում։ Կանանց թիվը փոքր է նաև կոլտնտեսության վարչության նախագահների տեղակալների, բրիգադիրների, ֆերմայի վարիչների կազմում։ Առանձին շրջաններում պարտիական ղեկավար աշխատանք կատարող կանանց թիվը ոչ թե ավելանում, այլ տարեց-տարի պակասում է։ Կոտայքի շրջանում 1956 թվականին սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներ էին 9 կին, իսկ այս տարի միայն 4-ը։

Ախուրյանի շրջանում 1956 թվականին կար պարտկազմակերպությունների 4 կին քարտուղար, բայց այս տարի մնացել են 2-ը, իսկ Սպիտակի շրջանում պարտկազմակերպության ոչ մի կին քարտուղար չկա։

Այս փաստերը խոսում են այն մասին, որ պարտիայի առանձին շրջկոմներ և սկզբնական կազմակերպություններ կանանց հետ տարվող աշխատանքն իրենց տեսադաշտից դուրս են թողել։

Կանանց ղեկավար աշխատանքի առաջ քաշումը միայն այն ժամանակ է արդարացնում իրեն, երբ պարտիական կազմակերպությունները ամենօրյա և բազմակողմանի օգնություն են ցույց տալիս նրանց։ Երբեմն պատահում է այնպես, որ մեծ ոգևորությամբ երիտասարդ կնոջը առաջ են քաշում ղեկավար աշխատանքի, բայց կարճ ժամանակ չանցած մոռանում են նրան, անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս հմտանալու իր գործում և որոշ ժամանակ անցնելուց հետո աշխատանքից ազատում են, որպես իրեն չարդարացնողի։

Անհրաժեշտ է ստեղծել բոլոր պայմանները, որպեսզի կանայք ավելի լրիվ երևան հանեն իրենց ստեղծագործական ուժերն ու ընդունակությունները և ակտիվ մասնակցություն ունենան մեր երկրի պետական, տնտեսական և կուլտուրական շինարարությանը։

Սովետական կանայք, մեր ամբողջ ժողովրդի հետ միասին պայքարել ու այսուհետև էլ անդուլ կերպով կպայքարեն ՍՄԿՊ XX համագումարի որոշումները կենսագործելու և իրենց անձնվեր աշխատանքով մեր սոցիալիստական Հայրենիքի հզորությունն էլ ավելի ամրապնդելու համար։

---



# ԼԵՆԻՆԻ ԱՆՄԱՀ ԿԵՐՊԱՐԸ

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐՅԱՆ

Շուտով Սովետական Միության բոլոր ժողովուրդները, ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ նշելու են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 40-ամյակը։ Նրանք միաժամանակ անսահման սիրով ու ջերմ երախտագիտությամբ մեծարելու են սոցիալիստական ռևոլյուցիայի հանճարեղ առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինին, որը փառապանծ Կոմունիստական պարտիայի ստեղծողն է, աշխարհում առաջին սոցիալիստական պետության հիմնադիրը։

Հանդիսանալով պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների մեծ դրոշակակիրը՝ Լենինը բոլոր երկրների աշխատավորների մեծագույն բարեկամն էր։ Ինչպես ասել է պրոլետարական հռչակավոր գրող Մաքսիմ Գորկին, «Վլադիմիր Լենինը, այս աշխարհի մեծ, իսկական մարդը», հանդիսացավ ժողովուրդների իրավահավասարության և բարեկամության ստեղծողն ու ոգեշնչողը։ Նա պրակտիկորեն նշեց սոցիալիզմի հաղթության նախապայմանները, կոմունիզմի կառուցման կոնկրետ ուղիները։

Ռևոլյուցիայի մեծագույն վարպետի կյանքն ու գործը պատկերող յուրաքանչյուր երկ ոգևորության նոր աղբյուր է կոմունիզմ կառուցող միլիոնների համար։ Այս առումով խոշոր արժեք են ներկայացնում այն բազմաթիվ հուշերը, որոնք գրել են Վլադիմիր Իլյիչի մասին նրա զինակիցներն ու աշակերտները, նրա հարազատները, բանվորներն ու գյուղացիները։

Հիրավի, մեծ ու շնորհակալ գործ է կատարել ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը, որը երկու հատորի մեջ զետեղել է այդ մեծարժեք հուշերը Լենինի մասին։ Դրանք Վլադիմիր Իլյիչի կյանքն ու գործունեությունը ուսումնասիրողների համար անչափ արժեքավոր աղբյուր են։ Դրանց մեջ վառ գույներով դրսևորվում է մեծ Լենինի, աշխատավոր մարդկության միշտ սիրելի, հավերժ կենդանի ու անմոռանալի առաջնորդի, ուսուցչի, մարդու անմահ կերպարը։

«Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի երկրորդ մասը, որը վերջերս լույս է տեսել Մոսկվայում, արտացոլում է Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը գերազանցապես հետհոկտեմբերյան տարիներին։ Այդ հուշերը բնութագրում են Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ Կոմունիստական պարտիայի մղած պայքարը՝ սովետական պետության ամրապնդման, սոցիալիստական շինարարության կազմակերպման բարդ ու դժվարին խնդիրների լուծման համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան շրջադարձային կետ հանդիսացավ մեր Հայրենիքի պատմության մեջ։ Կոմունիստական պարտիան

դարձավ սովետական պետության այն ղեկավարող և ուղղություն տվող ուժը, որը ոգեշնչեց ժողովրդական մասսաներին հաղթահարելու երկրի առջև կանգնած հսկայական դժվարությունները։ Հարկավոր էր կազմակերպել պայքարը արտաքին ու ներքին թշնամիների դեմ, ետ մղել իմպերիալիստների կատաղի հարձակումները, կազմակերպել ներքին հակառևոլյուցիայի ջախջախումը։ Հարկավոր էր ապահովել քաղաքների ու բանակի մատակարարումը հացով, պարենով, սոցիալիստական հիմունքներով կարգավորել ձեռնարկությունների ու տրանսպորտի աշխատանքը։ Հարկավոր էր ամրապնդել աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, որը չուներ ինչպես պետական, այնպես էլ տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման փորձ։

Եվ ահա պատմական այդ մեծագույն իրադարձությունների ֆոնի վրա ցայտուն կերպով ուրվագծվում է Լենինի՝ Սովետական իշխանության հանճարեղ կազմակերպչի վառ կերպարը։

Վ. Վ. Կույբիշևը իր հուշերում գրում է, որ Լենինը «շոշափում էր երկրի ժողովրդա-տնտեսական կյանքի այն բոլոր երևույթները, որտեղ կարելի էր հայտաբերել սոցիալիզմի նորանոր ծիլերը։ Նա գործադրեց իր ամբողջ հսկայական եռանդը, որպեսզի պատերազմից ավերված ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում ձիգ տա մեկ օղակը մյուսի հետևից, որպեսզի դուրս քաշի ամբողջ շղթան»։

Վ. Ի. Լենինին գրավում էր այն ամենը, ինչ շոշափում էր պարտիայի, պետության և ժողովրդի անմիջական շահերը։ Նա բառիս բուն իմաստով այրվում էր աշխատանքում։ Արտաքին և ներքին թշնամիներից երկրի պաշտպանությունը կազմակերպելու, սկսված քաղաքացիական պատերազմը ղեկավարելու հետ միասին, Լենինը, ինչպես վկայում են Վ. Ա. Վիդմոնտի, Ն. Կ. Կրուպսկայայի և Վ. Վ. Կույբիշևի հուշերը, զբաղվում էր քաղաքական, տնտեսական, մանկավարժական, վարչական և կուլտուր-լուսավորական, կազմակերպական ու ագիտացիոն-պրոպագանդիստական հարցերով։ Լենինը գրում էր դիրեկտիվներ ու կոչեր, որոշումներ ու հրահանգներ, լրագրային հոդվածներ ու տեսական մեծ աշխատություններ, ընդունում էր բանվորական և գյուղացիական պատվիրակություններ։ Նա հանդես էր գալիս միտինգներում, ժողովներում, զորանոցներում, գործարաններում, դպրոցներում։ Նա ուղղություն էր տալիս Սովետների աշխատանքին և աշխատավորների մասսայական կազմակերպությունների գործունեությանը, խորապես զբաղվում էր միջազգային հարցերով։

Եվ այդ ամենը, ինչպես նշում է Վ. Ա. Կարպինսկին, Լենինը կատարում էր առանց պանիկայի։ Նրան բոլորովին խորթ էր որևէ շփոթվածություն։ Սովետական ռեսպուբլիկայի ամենաօրհասական պահերին նա անհողդողդ հաստատակամությամբ ընդունում և կիրառում էր անհրաժեշտ որոշումներ։

«Լենինը,— ասում է Ա. Ա. Անդրեևը,— մարմնավորում էր առաջնորդի մի այնպիսի արիություն, որ ոչ մի բանի հետ համեմատել չէր կարելի՝ անվեհերություն, երկաթե կամք, որ հիմնված էր բանվոր դասակարգի ուժի նկատմամբ ունեցած խոր հավատի և սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի անխուսափելիության, կոմունիզմի հաղթանակի վրա։ Լենինին չէր կարելի պատկերացնել հանգիստ վիճակում։ Նա միշտ ու ամբողջովին գտնվում էր աշխատավորության դասակարգային թշնամիների դեմ, նախապաշարմունքների, թերությունների դեմ մղվող պայքարում։ Անհաշտությունը դեպի ամեն



տեսակի օպորտունիզմը, ատելությունը դեպի պրոլետարիատի թշնամիներն ու ստրկության բոլոր ձևերը նրա մեջ միաժամանակ զուգակցվում էին մարդկանց նկատմամբ ունեցած մեծագույն նրբազգացության և բացառիկ մարդկայնության հետ։ Այսպես էր Լենինը» (էջ 40)։

Ծանր ժամանակներ էր ապրում Հայրենիքը. մի կողմից քաղաքացիական պատերազմ, մյուս կողմից՝ օտարերկրյա ռազմական ինտերվենցիա։ Կրակե բլոկադայով էր շրջապատված Սովետական երիտասարդ Ռեսպուբլիկան։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ժողովրդին ոտքի էին հանել արդար պատերազմի և կազմակերպել էին սովետական պետության պաշտպանությունը։

Ժողովրդական Կոմիսարների Սովետի քարտուղարության երկար տարիների աշխատող Լ. Ա. Ֆոտիևան իր հուշերում պատմում է , թե ինչպես «այդ տարիներին Վլադիմիր Իլյիչին հաճախ կարելի էր տեսնել խորապես մտազբաղ վիճակում, հակված իր աշխատասենյակի սեղանին փռված քարտեզի վրա։ Նա նշում էր մեր զորքերի դասավորությունը, հակառակորդի ուժերի առաջխաղացումը, պարտիայի և Սովետական կառավարության մյուս ղեկավար աշխատողների հետ կշռադատում, քննարկում էր թշնամու ջախջախման ստրատեգիական պլանները... Վլադիմիր Իլյիչը թափանցում էր պաշտպանության կազմակերպման բոլոր մանրամասնությունների մեջ։ Նա մշտապես ստուգում էր իր կարգադրությունների կատարումը... Կրեմլի իր աշխատասենյակից ուղղակի հեռագրով, փոստով ու հեռախոսով երկրի բոլոր ծայրերն էր ուղարկում իր կարգադրությունները, հրամանները, ընկերական խորհուրդները, նշելով անհետաձգելի խնդիրները, նախազգուշացնում էր սխալներից, պահանջում էր, համոզում» (էջ 204)։

«Լենինը,— պատմում է այնուհետև նա,— զինվորական չի եղել և բանակում երբեք չի ծառայել, նա համեստորեն ասում էր, որ ռազմական գործը չգիտե, բայց հենց Լենինն էր Սովետական պետության պաշտպանության իսկական կազմակերպիչն ու ղեկավարը... Ռազմական հարցերի գծով պարտիայի և Սովետական կառավարության կարևորագույն որոշումներից և ոչ մեկը չի կայացվել առանց Լենինի ակտիվ մասնակցության։ Կարելի է հաստատապես ասել, որ քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի տարիներին Սովետական պետության պաշտպանության հարցերի գծով Լենինի թողած ամբողջ հսկայական նյութի ուշադիր ուսումնասիրությունը Լենինին ցույց կտա որպես սովետական ռազմագիտության հիմնադրի» (էջ 205)։

Սովետական կառավարությունը Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ սոցիալիստական շինարարության ծավալմանը։ Շատ հատկանշական է, որ Սովետական Հայրենիքի համար դժվարագույն այդ տարիներին Վ. Ի. Լենինը երկրի ավերված տնտեսության վերականգնման ծրագիրը սերտորեն կապում էր երկրի էլեկտրիֆիկացիայի զարգացման հետ։ Գ. Օ. Գրաֆտիոն իր հուշերում պատմում է, թե ինչպես Վլադիմիր Իլյիչը դեռևս քաղաքացիական պատերազմի ժամանակ իրեն առաջարկել էր զբաղվել Վոլխովի հիդրոհանգույցի նախագծով։ Գ. Մ. Կրժիժանովսկին մի շարք ցայտուն փաստերի հիման վրա ցույց է տալիս, որ հենց Լենինն է եղել երկրի էլեկտրիֆիկացման, որպես միասնական սոցիալիստական տնտեսական պլանի անքակտելի մասի, մեծ նախաձեռնողն ու ոգեշնչողը։

«Վլադիմիր Իլյիչի բազմակողմանի հանճարեղ մտքի ամենաապշեցուցիչ

հատկություններից մեկն էլ այն էր,— գրում է Ն. Պ. Գորբունովը,— որ նա նույնիսկ իր աշխատասենյակից դուրս չգալով կարողանում էր ուշադիր հետևել կյանքի զարկերակին ոչ միայն Ռուսաստանում, այլև ամբողջ աշխարհում։ Նա կարողանում էր մի ուրիշի աչքերի համար աննկատելի երևույթները ճշտորեն ու անսխալ ընկալել և որոշել դասակարգային ուժերի փոխհարաբերությունների ամենաաննշան փոփոխությունները... Նա դրան հասնում էր ինչպես կազմակերպությունների, այնպես էլ առանձին մարդկանց հետ ունեցած հսկայական կապերի միջոցով։ Հասարակ մի շարք հարցերի օգնությամբ նա կարողանում էր ստուգել իր զրուցակցի տվյալների լրջությունը, դրանք քննադատորեն վերլուծել, արագորեն ըմբռնել գործի էությունը, առանձնացնել հարկավոր փաստեր, որոնք առաջին հայացքից երբեմն թվում էին աննշան և քիչ կարևոր։ Այդ փաստերի հիման վրա նա կառուցում էր իր հանճարեղ հետևություններն ու կանխորոշումները... Նման զրույցների ճանապարհով և ինչ-որ առանձնահատուկ, միայն իրեն հատուկ ինտուիցիայի միջոցով Վլադիմիր Իլյիչը ներծծում էր իր մեջ մասսաների կոլեկտիվ միտքն ու փորձը, իր զարմանալի ուղեղում մշակում էր դրանք և փոխակերպում մեծ լոզունգների, որոնք լույսի ճառագայթների նման լուսավորում էին ռևոլյուցիայի ուղիները» (էջ 57)։

***

Լենինը անդուլ պայքարում էր սովետական պետական ապարատի աշխատանքը բարելավելու, սովետական օրգանների աշխատանքի մեջ գործիմացություն, կազմակերպվածություն և կարգապահություն մտցնելու համար, սովետական մարդկանց մեջ դաստիարակում էր նոր, սոցիալիստական վերաբերմունք դեպի աշխատանքը։

Լենինը ատում էր բյուրոկրատիզմն ու քաշքշուկը։ «Լենինն ասում էր,— պատմում է Լ. Ա. Ֆոտիևան,— որ բյուրոկրատիզմի դեմ լիակատար հաղթանակ տանելու համար անհրաժեշտ է ամբողջ բնակչությունը ներգրավել պետության կառավարման մեջ և բարձրացնել ընդհանուր կուլտուրական մակարդակը» (էջ 207)։

Կլարա Ցետկինն իր հուշերում պատմում է, որ Լենինը, անդրադառնալով պետական ապարատի բարելավման և բյուրոկրատիզմի դեմ պայքարի հարցերին՝ ասել է. «Ես այն (բյուրոկրատիզմը) ամբողջ հոգով ատում եմ, բստ որում ես, իհարկե, նկատի չունեմ այս կամ առանձին բյուրոկրատին։ Վերջինս կարող է բանիմաց մարդ լինել։ Բայց ես ատում եմ սիստեմը։ Այն կաշկանդում, ապականում է ինչպես ներքևում, այնպես էլ վերևում։ Բյուրոկրատիզմը հաղթահարելու և արմատախիլ անելու համար վճռական գործոն է հանդիսանում ժողովրդի ամենալայն կրթությունն ու դաստիարակությունը» (էջ 457)։

Լ. Ա. Ֆոտիևան հիշում է, որ Վլադիմիր Իլյիչ Լենինը բացառիկ նշանակություն էր տալիս Սովետական կառավարության բոլոր օրենքների և կարգադրությունների արագ ու ճշգրիտ կատարմանը։ Լենինը սիստեմատիկ և համառ պայքար էր մղում ռևոլյուցիոն կարգ ու կանոնը և օրինականությունը խստորեն պահպանելու համար։ Նա պահանջում էր մեծ օպերատիվություն աշխատանքում, պահանջում էր արագ և ճշգրտորեն կատարել Սովետական իշխանության բոլոր կարգադրությունները։



Պաշտպանելով ռևոլյուցիոն օրինականությունը՝ Լենինը խստորեն պայքարում էր կաշառակերության դեմ, համարելով այն ցարիզմի անիծյալ ժառանգությունը։ 1918 թվականին Վլադիմիր Իլյիչը Արդարադատության ժողովրդական կոմիսար ընկ. Կուրսկուն գրած իր գրության մեջ առաջարկում էր, անմիջապես, դեմոնստրատիվ արագությամբ օրինագիծ մտցնել, որ կաշառակերության համար պատիժը պետք է լինի տաս տարուց ոչ պակաս բանտարկություն և բացի այդ, տաս տարի հարկադիր աշխատանք։

Քաշքշուկի դեմ պայքարի գործում Լենինը մեծ նշանակություն էր տալիս կատարման ստուգմանը։ Նա բազմիցս նշում էր, որ կատարման ստուգումը և մարդկանց հմուտ ընտրությունը պետական ապարատի աշխատանքի բարելավման կարևորագույն պայմաններն են։ Նա գերատեսչություններից և հիմնարկներից, պարտիական ու սովետական աշխատողներից պահանջում էր փաստական վերահսկողություն սահմանել Սովետական իշխանության որոշումների կատարման նկատմամբ։ Թե Լենինը որքան մեծ նշանակություն էր տալիս կատարման ստուգմանը, այդ երևում է Ն. Ա. Սեմաշկոյի հուշերից։ Լենինի կարծիքով, գրում է նա,— «կատարման ստուգումը ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության առանցքն է»։

Լենինը սովորեցնում էր աշխատել և մարդկանցից պահանջում էր ինքնուրույնություն և նախաձեռնություն հանդես բերել իրենց աշխատանքում։ Նա հիմնարկներից և առանձին աշխատողներից պահանջում էր աշխատանքի պրակտիկայում մտցնել մի շատ կարևոր բան՝ նախաձեռնած գործը հասցնել մինչև վերջ, որոշակի արդյունքի։ «Պետք է կարողանալ,— ասում էր նա,— տասն անգամ ուղղել, տասն անգամ վերափոխել, բայց ինչ գնով էլ լինի հասնել նպատակին։ Սկսեցիք, դեմ առաք փակուղու՝ նորից սկսեք և այդպես այնքան ժամանակ, մինչև որ կհասնեք նպատակին»։

Ն. Պ. Գորբունովը իր հուշերում պատմում է, որ «Վլադիմիր Իլյիչը չափազանց պահանջկոտ էր։ Զարմանալի հաստատակամությամբ ձգտում էր նույնիսկ ամենափոքր գործերը հասցնել մինչև վերջ, տասնյակ անգամ ստուգում էր կատարումը, անձամբ կապվում էր հեռախոսով, որպեսզի ստուգի, օրինակ, իր ուղարկած ծրագրի ստացումը, անխնա հետապնդում էր ամեն մի անճշտապահություն, փնթիություն, մեղավորներին մերկացնում էր, չէր հոգնում հազարավոր անգամ նշելու թափթփվածությունը, անկարգությունը, անկուլտուրականությունը։ Բայց Վլադիմիր Իլյիչը կարողանում էր այդ ամենին այնպիսի ձև տալ, որ ոչ ոք երբեք իրեն վիրավորված չէր զգում, նույնիսկ այն դեպքերում, երբ Վլադիմիր Իլյիչը նրան մի լավ խայտառակում էր ներառյալ մինչև ձերբակալումը» (էջ 58)։

Ինքը, Լենինը, ինչպես նշում են հուշերի հեղինակները, բյուրեղյա ու ազնիվ սրտի տեր մարդ էր, նա խորապես ճշմարտացի էր իր ամբողջ էությամբ, խորապես սկզբունքային և խիստ պահանջկոտ իր նկատմամբ։ Նա նույնիսկ զուտ անձնական հարցերի լուծման դեպքում հարցնում էր ինքն իրեն. «ի՞նչ կասեն բանվորները այդ մասին»։

Աշխատանքում բոլորից պահանջելով հստակություն, կազմակերպվածություն և կարգապահություն՝ Վլադիմիր Իլյիչը ինքն էր ցույց տալիս աշխատանքի բարձր կուլտուրայի լավագույն օրինակներ։ Այդ պատճառով էլ, չնայած աշխատանքի հսկայական մասշտաբին և չափից ավելի բեռնվածությանը, նա երբեք չէր ցուցաբերում ներվային դյուրագրգռություն, շտապողականու-

թյուն, չէր ընկնում իրարանցման մեջ։ Նա աշխատում էր հանգիստ և միշտ հասցնում էր կատարելու այն ամենը, ինչ ծրագրել էր։

Պ. Դ. Մալկովը իր հուշերում ասում է, որ իրեն ապշեցնում էր Լենինի բացառիկ աշխատունակությունը։ Նա ամենուրեք էր։ Ռևոլյուցիայի առաջնորդի այդ անխոնջ աշխատունակությունը վարակում էր բոլոր նրանց, ովքեր շփում էին ունենում նրա հետ։

«Հարց է ծագում,— գրում է իր հուշերում Ա. Ա. Անդրեևը,— թե Լենինը ինչպե՞ս էր հասցնում իրականացնել իր ղեկավարությունը Կենտկոմում, Ժողկոմսովետում, Աշխատանքի և Պաշտպանության խորհրդում, զբաղվել թեորիայի հարցերով, հետևել միջազգային գործերին, աչքաթող չանել, թե ինչ է կատարվում էկոնոմիկայում, գիտության ու տեխնիկայի բնագավառում, և միաժամանակ բավականին հաճախակի հանդես գալ ժողովներում։ Այդ հարցին միայն մի պատասխան կարելի է տալ. բացի այն բանից, որ նա մշտապես այրվում էր աշխատանքում և չէր խնայում իր ուժերն ու առողջությունը, Լենինը շատ կազմակերպված մարդ էր» (էջ 39)։

Լենինը ոչ մի րոպե իզուր չէր կորցնում։ Նա կարողանում էր խնայել ոչ միայն իր, այլև ուրիշի ժամանակը։ Երբեք և ոչ մի տեղ նա չէր ուշանում։ Լ. Ա. Ֆոտիևան պատմում է, որ Լենինը Ժողկոմսովետի, Աշխատանքի և Պաշտպանության Խորհրդի նիստերին գալիս էր ճիշտ ժամանակին կամ մի քանի րոպե առաջ։ Նրա ղեկավարությամբ նիստերը սկսվում էին ուղիղ նշանակված ժամին։ Ժողկոմսովետի, Աշխատանքի և Պաշտպանության Խորհրդի ուշացած անդամների ազգանունները նշվում էին արձանագրության մեջ, շեշտելով, թե ով և քանի րոպե է ուշացել։ Առանց հարգելի պատճառների կրկնակի ուշանալու դեպքում Վլադիմիր Իլյիչը ուշացողին հայտարարում էր նկատողություն, նախազգուշացնելով, որ հետագայում նա կստանա նկատողություն և այն կհրապարակվի մամուլում։

Իր հուշերում Գ. Վ. Չիչերինը, անդրադառնալով Վլադիմիր Իլյիչ Լենինի անձնական հատկություններին և աշխատանքի ոճին, պատմում է.

«Գործնական նկատառումները պետք է տիրապետող լինեն անձնականի նկատմամբ, ամեն մի անձնական շահը պետք է զիջի գործի շահերին — այս սկզբունքով Վլադիմիր Իլյիչը այնքան էր ամբողջովին տոգորված, որ նրա հետ ունեցած խոսակցությունների ժամանակ ուղղակի անհարմար էր մեջբերել որևէ անձնական նկատառում, երբ խոսքը գործի շահերին էր վերաբերում։ Վլադիմիր Իլյիչի զրուցակիցը ակամայից զգում էր, որ երբ խոսում ես գործի մասին, ամոթ է ինչ որ անձնական նկատառումների մասին մտածելը։ Ես Վլադիմիր Իլյիչին երբեք այնքան ավելի նյարդային չեմ տեսել, քան այն պահերին, երբ անձնական գզվռտոցը մտցվում էր գործարար աշխատանքի մեջ, երբ գործարար փաստարկները փոխարինվում էին անձնական հարձակումներով և գզվռտոցով, երբ գործի մասին խոսելու փոխարեն խոսում էին անձնական վիրավորանքների կամ գործի այս կամ այն մասնակիցների անձնական հատկությունների մասին» (էջ 685)։

***

Վլադիմիր Իլյիչ Լենինը անհատի պաշտամունքի անհաշտ հակառակորդն էր։ Նրա զինակիցների ու աշակերտների մի շարք հուշեր անհերքելիորեն վկա-



յում են, որ Լենինը և՛ նիստերում ու ժողովներում, և՛ համագումարներում ու մամուլում կտրականապես արգելում էր ամեն մի գովերգություն իր հասցեին։ Նա թույլ չէր տալիս իր անձի, իր ծառայությունների մեծարում, հանդես էր գալիս մարքսիստների համար այնքան խորթ անհատի պաշտամունքի դեմ։

Ա. Ա. Անդրեևը գրում է, որ Վլադիմիր Իլյիչ Լենինի հետ աշխատող մարդիկ վախենում էին նրա նկատմամբ դրվատանքի որևէ բան թույլ տալ, որովհետև անմիջապես հակահարված կստանային։ Նույնիսկ այն ժամանակ, երբ Լենինին վաղուց ճանաչող նրա ընկերները, բարեկամները միանգամայն ճիշտ կերպով փորձում էին խոսել նրա գործունեության նշանակության մասին, նա զայրանում էր։ Ընդգծելով մեր ռևոլյուցիայի փայլուն հաջողություններն ու հաղթանակները՝ Լենինը միաժամանակ նշում էր գոռոզամտության վտանգի մասին։ «Այդ վտանգը,— ասում էր նա,— պետք է խստորեն հաշվի առնեն բոլոր բոլշևիկները զատ-զատ և բոլշևիկները որպես ամբողջ քաղաքական պարտիա» (էջ 37)։

Մի այլ փաստ։ Դա 1920 թվականին էր, պատմում է Ա. Ա. Անդրեևը, Վ. Ի. Լենինը իմանալով, որ Մ. Գորկին «Կոմունիստական Ինտերնացիոնալ» ամսագրում գովասանական հոդված է գրել իր մասին, կարգադրում է հոդվածը անմիջապես հանել կամ բռնագրավել ամսագիրը։ Դա, իհարկե, չհաջողվեց, որովհետև ամսագրի համարն արդեն ուղարկված էր բաժանորդներին։ Սակայն Լենինի պահանջով, Կենտկոմը խիստ որոշում ընդունեց, որով արգելվում էր նման կարգի հոդվածների տպագրումը ամսագրում։

Կլարա Ցետկինը պատմում է, որ «Լենինը իրեն պահում էր, ինչպես իրեն պահում է հավասարը հավասարների շրջանում, որոնց հետ նա ի սրտե կապված էր։ Նրա մեջ «իշխանության մարդու» հետք անգամ չկար, պարտիայում նրա ունեցած հեղինակությունը հեղինակություն էր իդեալական առաջնորդի և ընկերոջ, որի գերազանցության առջև խոնարհվում ես այն գիտակցությամբ, որ նա միշտ կհասկանա և իր հերթին ցանկանում է հասկանալի լինել» (էջ 453)։

Չափազանց ուշագրավ է և ուսանելի Ա. Ա. Անդրեևի հուշերի «Լենինը նիստերում» հատվածը, որտեղ ասված է.

«Չնայած նիստերում տիրող խստությանն ու կարգ ու կանոնին, պետք է ասել, որ այդ նիստերում ոչ մի լարվածություն չէր զգացվում, միանգամայն ազատ ընկերական իրադրություն էր։ Լենինը պահանջկոտ էր, բայց մարդկանց նկատմամբ նրա հարաբերություններում երբեք դյուրագրգռություն և վիրավորական որևէ բան չկար։ Ամեն մեկը ասում էր այն, ինչ մտածում էր, չվախենալով, որ կարող է կոպտորեն շշպռվել։ Լենինի հետ ամեն մի հարցի շուրջը կարելի էր միանգամայն ազատ վիճաբանել և այդպիսի վեճեր տեղի էին ունենում։ Նա երբեք իր կարծիքը անառարկելի չէր համարում և միշտ ուշադրությամբ լսում էր մյուսների փաստարկները» (էջ 34)։

Ա. Վ. Լունաչարսկին իր հուշերում պատմում է, որ «թեև Ժողկոմսովետում առաջնակարգ լուսավոր շատ գլուխներ կային, բայց Լենինը մյուսներից սովորաբար ավելի արագ էր մշակում բոլոր հարցերը և հանգում ավարտուն լուծման։ Սակայն, դրանում իր առաջնությունը այսպես ասած՝ արհեստականորեն դրսևորելու ոչ մի ձգտում չկար։ Եթե որևէ մեկը տեղին լուծում էր առաջարկում, Լենինը արագորեն ընկալում էր դրա նպատակահարմարությունը և ասում. «Դե՛, թելադրեցեք, ձեզ մոտ այդ լավ ստացվեց» (էջ 296)։

Գ. Վ. Չիչերինը պատմում է, որ Լենինի «բարձրագույն հատկությունն իր գործարար աշխատանքում այն էր, որ նա գիտակցորեն ենթարկվում էր կոլեկտիվին, նույնիսկ այն դեպքերում, երբ կոլեկտիվը իր կարծիքով սխալվում էր։ Իր ունեցած վիթխարի հեղինակությամբ նա մեծ մասամբ համոզում էր սովետական կամ պարտիական կազմակերպությունների իր ընկերներին։ Սակայն եղել են դեպքեր, երբ նրա կարծիքը չէր անցնում և նա մնում էր փոքրամասնության մեջ։ Նա ենթարկվում էր կազմակերպությանը լիովին ու անվերապահորեն։ Նա սոսկ հեղինակությամբ երբեք չէր գործում, այլ միայն փաստարկներով ու համոզումներով, և նա երբեք գործի չէր դնում իր անօրինակ ազդեցության փաստը ուրիշ կերպ մտածողների դիմադրությունը հաղթահարելու համար, այլ միշտ փաստարկում էր, համոզում և մինչև ուրիշներին չէր համոզում, ինքը չէր հանգստանում» (էջ 686)։

Ղեկավարելով Սովետական պետության գործունեությունը՝ Վ. Ի. Լենինը խստորեն կիրառում էր կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը։ Լ. Ա. Ֆոտիևան պատմում է, որ չնայած իր մեծ հեղինակությանը, նա որպես Ժողկոմսովետի նախագահ հարցերը երբեք միանձնյա չէր լուծում։ Միշտ, նախքան վերջնական հետևություններ անելը,— պատմում է Ա. Ա. Անդրեևը,— Լենինը ուշադիր լսում էր մարդկանց։ Առանց Կենտկոմի, առանց Կենտկոմում քննության առնելու նա երբեք կարևոր հարցեր չէր լուծում։ Լենինը խստորեն հետևում էր բոլոր կարևորագույն հարցերի լուծման կոլեկտիվությանը ղեկավարության մեջ, ինչպես Կենտկոմի, այնպես էլ Ժողկոմսովետի աշխատանքում։

***

Հիշողությունների երկրորդ մասում տասնյակ ցայտուն հուշեր վառ կերպով պատկերում են ժողովրդական մասսաների հետ Վլադիմիր Իլյիչ Լենինի ամենասերտ կապերը, նրանց նկատմամբ Լենինի անհուն հավատն ու ջերմ վերաբերմունքը։

Վ. Ի. Լենինը անվերապահորեն հավատում էր ժողովրդական մասսաներին։ Նա զարմանալիորեն կարողանում էր նրանց պայքարի մոբիլիզացնել։ Հիանալի հասկանում էր այն դժվարությունները ու զրկանքները, որ կրում էին աշխատավորները պատերազմի ու ժողովրդական տնտեսության փլուզման տարիներին, խորապես զգում էր այդ մասսաների տառապանքները։ «Լենինը,— ասված է ժողովածուում,— մասսաների հետ սերտ կապի մեջ էր տեսնում Սովետական իշխանության բոլոր հաջողությունների ու հաղթանակների երաշխիքը և մասսաներից երբեք չէր թաքցնում դժվարություններն ու դրության վտանգավորությունը։ Նա նշում էր, որ Սովետական իշխանության բոլոր ուժերը հիմնվում են բանվորների վստահության և գիտակցական վերաբերմունքի վրա... Մասսաների, բանվորների դասակարգային բնազդի նկատմամբ Լենինի ունեցած այդ խոր հավատը Լենինի անառարկելի հեղինակության և դեպի նա ժողովրդի անսահման սիրո աղբյուրն էր» (էջ 213)։

Իրեն ամբողջությամբ նվիրելով աշխատավորների ազատագրման գործին, պարտիայի գործին, ղեկավարելով միլիոնավոր մասսաների գործողությունները,— գրում է Վ. Պ. Անտոնով-Սարատովսկին,— Վլադիմիր Իլյիչը չտեսնված ուշադրությամբ, հիանալի նրբազգացությամբ և խոր հետաքրքրությամբ էր վերաբերվում յուրաքանչյուր աշխատավոր մարդու։ Նրա համար, ըստ երևույթին, այսպես կոչված՝ անհետաքրքիր մարդիկ չկային։



«Վլադիմիր Իլյիչը,— նշում է իր հուշերում Ն. Պ. Գորբունովը,— յուրաքանչյուրից կարողանում էր վերցնել այն արժեքավորը, ինչ իրեն հարկավոր էր։ Իրեն այցելող գյուղացիների և բանվորների հետ ունեցած զրույցներից Իլյիչը որսում էր կյանքի զարկերակը, որոշում էր սովորական աչքի համար աննկատելի փոփոխությունները դասակարգային ուժերի հարաբերակցության մեջ, և իրեն հաղորդված փաստերի հիման վրա կարողանում էր այս կամ այն հարցում և հենց ճիշտ ժամանակին ճիշտ գիծ վերցնել... Ընդունելություններին ունեցած իր զրույցներում Վլադիմիր Իլյիչը մեծ ուշադրությամբ էր վերաբերվում առանձին բանվորների, գյուղացիների և պարտիայի շարքային անդամների նկատմամբ, որոնք գալիս էին նրա մոտ իրենց կարծիքներով, ծրագրերով և հոգսերով... Վլադիմիր Իլյիչի հետ ունեցած զրույցի ժամանակ ամեն ոք հանձին նրա զգում էր ավագ իմաստուն ընկերոջ» (էջ 60)։

Երկրի բոլոր ծայրերից, հիշում է Վ. Ա. Կարպինսկին, ոտքով Մոսկվա Լենինի մոտ էին գալիս գյուղացիական հավաքույթներում ընտրված պատվիրակներ։ Երկար չէին սպասում։ Ահա, օրինակ, մի քանի գյուղացի պատվիրակ մտնում են Լենինի աշխատասենյակը։ «Նա սեղանի մոտից նրանց արդեն ընդառաջ է գալիս, սիրալիր սեղմում է ամեն մեկի ձեռքը, նստեցնում հյուրերին։

— Իսկ դու, պապի, ահա նստիր այստեղ, մոտիկ, բազկաթոռի վրա։

Վլադիմիր Իլյիչը հարցնում է ամեն մեկի ազգանունը, անունը, հայրանունը, որտեղից է եկել և սկսում է պարզ մտերմական զրույց։

Պատվիրակներին զարմացնում էր, որ Վլադիմիր Իլյիչը հիշում էր յուրաքանչյուրին և զրույցի ժամանակ նրան անուն հայրանունով էր անվանում։ Նրանց ավելի էր զարմացնում, որ Վլադիմիր Իլյիչը շատ լավ տեղյակ էր իրենց գյուղերի կարիքներին, գիտեր, թե ինչպիսի հողեր ունեն նրանք, իսկ երբեմն էլ նույնիսկ տալիս էր իրենց շահագործող կալվածատիրոջ ազգանունը։ Գյուղացիները, իհարկե, ամենևին չգիտեին, որ Լենինը հիանալի ուսումնասիրել էր երկրի յուրաքանչյուր շրջանի էկոնոմիկան» (էջ 700)։

«Լինելով Սովետական կառավարության ղեկավարը,— ավելացնում է Կարպինսկին,— Վլադիմիր Իլյիչը սիրով զրուցում էր բանվորների և գյուղացիների հետ։ Նրա համար բանվորի և գյուղացու կարծիքը, տրամադրությունն իմանալը պակաս կարևոր չէր, քան պարտիայի Կենտկոմի և Ժողովրդական Կոմիսարների Սովետի անդամների կարծիքն իմանալը» (էջ 699)։

Վլադիմիր Իլյիչը անսահման հետաքրքրություն էր ցուցաբերում դեպի աշխատավորների նամակներն ու բողոքները։ Լ. Ա. Ֆոտիևան գրում է, որ Իլյիչը քարտուղարության աշխատողներին պարտավորեցնում էր բոլոր նամակները կարդալ և իրեն զեկուցել ստացվող բոլոր բողոքները։ Ժողկոմսովետի գործերի վարիչին ուղղված 1919 թվականի հունվարի 18-ի հատուկ կարգադրության մեջ Վլադիմիր Իլյիչը պարտավորեցնում է ստացվող բոլոր գրավոր բողոքների մասին իրեն զեկուցել քսանչորս ժամվա ընթացքում, իսկ բանավոր բողոքների մասին՝ քառասուն ութ ժամում։ Նա նաև պահանջում էր ուշի ուշով վերահսկել այդ բողոքների կապակցությամբ իր մակագրությունների կատարմանը։

1921 թվականի դեկտեմբերին Վլադիմիր Իլյիչին հայտնի դարձավ, որ Ժողկոմսովետի ընդունարանից սովետական կենտրոնական հիմնարկների ղեկավարներին ըստ էության լուծելու համար ուղարկվող աշխատավորների բո-

ղոքներն ու նամակները համատարած կերպով մնում էին անպատասխան ու անկատար։ Գործի նկատմամբ նման անպատասխանատու վերաբերմունքից զայրացած՝ Վլադիմիր Իլյիչը կենտրոնական հիմնարկների ղեկավարներին ուղղված իր նամակում գրում է. «Առաջարկում եմ անհապաղ ձեզ կարգի հրավիրել։ Սովետական ադմինիստրացիայի մեքենան պետք է աշխատի կանոնավոր, ազնվորեն ու արագ։ Նրա թափթփվածությունից ոչ միայն տուժում են մասնավոր մարդկանց շահերը, այլև կառավարման ամբողջ գործը ընդունում է կեղծ, խաբուսիկ բնույթ»։

Լենինը պահանջում էր ընդունարանի ուղարկած գործերի և պահանջների առթիվ ամենարագ և սպառիչ պատասխաններ տալ, «Ժողկոմսովետի ընդունարանին իրավունք է տրված մեղավորներին, անկախ նրանց «աստիճանից», պատասխանատվության ենթարկել» (էջ 212)։

Գյուղացիների նամակները Վ. Ի. Լենինի համար չափազանց մեծարժեք փաստաթղթեր էին։

— Չէ՞ որ դրանք մարդկային իսկական փաստաթղթեր են,— բացականչում էր նա,— չէ՞ որ այդ մասին չեմ լսի ոչ մի զեկուցման մեջ,— դիմում էր նա «Բեդնոտա» թերթի խմբագրին, երբ վերջինս ստացված նամակները բերում էր նրա մոտ։

Մեծ էր Վլադիմիր Իլյիչ Լենինի սերն ու հոգատարությունը աշխատողների նկատմամբ։ Այդ հոգատարությունը նուրբ էր, քնքուշ և անչափ ուշադիր։

Հիշողությունների ժողովածուի երկրորդ մասում զետեղված են բազմականաչափ հուշեր, որոնք վառ կերպով պատկերում են Վլադիմիր Իլյիչ Լենինին ոչ միայն որպես հանճարեղ առաջնորդի, այլև որպես իսկական մարդու՝ իր ջերմ ու զգայուն վերաբերմունքով, որպես իմաստուն ուսուցչի, որի համար շատ նվիրական են սովետական աշխատողների կոմունիստական դաստիարակության շահերը։

«Պատահում էր,— ասում է Լ. Ա. Ֆոտիևան,— որ երբեմն նրա մոտ գալիս էին այնպիսի ընկերներ, որոնք դադարում էին հավատալ իրենց, իրենց ուժերին, թևաթափ լինելով աշխատանքի անասելի ծանրության առջև, նյարդայնացած, հոգնած, երբեմն էլ նրանց մեջ գզվռտոց էր լինում, բայց հենց որ մտնում էին Լենինի աշխատասենյակը, գզվռտոցը ասես թե միայն Վլադիմիր Իլյիչի ներկայությունից գոլորշիանում էր։ Եվ մարդիկ, որոնք նրա մոտ էին գալիս ճնշված, իրենց հավատը կորցրած, նրա մոտից թևավորված էին գնում։ Վլադիմիր Իլյիչը յուրաքանչյուրի մոտ կարողանում էր գտնել լավը, ցույց տալ այդ լավը և կարողանում էր այնպիսի տրամադրություն ստեղծել, որ մարդու առջև բացվում էին ինչ-որ նոր հեռանկարներ, նա ստանում էր նոր ուժեր» (էջ 212)։

«Շատ ընկերներ—ինչ մեղքներս թաքցնենք,— գրում է իր հուշերում Ն. Ա. Միլյուտինը,— գտնում են, որ սխալների համար ինչքան իրենք ավելի կտրուկ, ավելի բարձրաձայն (իսկ երբեմն էլ ավելի վիրավորական) հայհոյեն իրենց ստորադրյալներին, այնքան դա ավելի ուժեղ և շուտ կներգործի նրանց վրա։ Իհարկե, ծույլ ձիուն չի կարելի չքշել։ Բայց այդ մեթոդը, որպես ներգործման մշտական միջոց, բանի պետք չէ։

Վլադիմիր Իլյիչը դաստիարակում էր մարդկանց։ Դա նրա հիմնական մեթոդն էր։ Ռեպրեսիան նրա համար լոկ օրինակ էր, դեմոնստրացիա, դաս։ Ինձ



հայտնի չէ մի այնպիսի դեպք, երբ փոքր սխալները նրա մոտ ջղայնություն առաջացնեին» (էջ 408)։

... Մի անգամ գիշերը, գրում է Պ. Դ. Մալկովը, Կրեմլ ժամանեց մի պարտիական աշխատող։ Լենինը կանչեց ինձ և ասաց, որ ընկերը պետք է հանգստանա։ Ազատ բնակարան չկար։ Ընկերոջը հրավիրեցի ինձ մոտ։ Եվ ահա գիշերվա ժամը երկուսին Իլյիչը եկավ ինձ մոտ՝ տուն, որպեսզի համոզվի, թե արդյոք ընկերը ինչպես է տեղավորված և արդյոք նեղություն չի տալիս ընտանիքիս։

... Ես այդ օրը ուժեղ անգինա ունեի,— գրում է Ա. Ֆ. Մյասնիկյանը,— և կոկորդս կապված էր։ Ընկեր Լենինը ինձ միշտ համոզում էր տուն վերադառնալ, որ չհիվանդանամ, հարցնում էր՝ արդյոք կոկորդս ուժեղ չի՞ ցավում, ապա չնայած իմ բոլոր առարկումներին, նա առաջարկեց մեքենան քշել բնակարանիս կողմը, ինձ տեղ հասցրեց և չհանգստացավ ու չմեկնեց, մինչև որ չիջեցրեց ինձ։

Վլադիմիր Իլյիչը պարտիական ընկեր էր բառիս լավագույն իմաստով և այդ տեսակետից իրեն հավասարը չուներ,— գրում է Գ. Մ. Կրժիժանովսկին,— նրա կենդանության ժամանակ մենք բոլորս զգում էինք, որ նրա բարեկամական սրատես աչքը անդուլ կերպով հետևում է մեզ, և մեծ նրբազգացությամբ ու պատրաստակամությամբ նա շտապում էր ընդառաջ, եթե միայն համոզվում էր, որ ընկերները դժվարին դրության մեջ են։ Բարեկամական սերտ շրջանում Վլադիմիր Իլյիչն անմիջապես ամբողջ հասարակության հոգին էր դառնում։ Հենց նրա մոտ էին լսվում ամենակրքոտ ճառերն ու առավել ուրախ ծիծաղը։ Նա շատ լավ իրազեկ էր յուրաքանչյուր ընկերոջ անձնական առանձնահատկություններին և զարմանալիորեն կարողանում էր մոտենալ մարդուն հենց նրա առանձնահատկություններին համապատասխան։ Վլադիմիր Իլյիչը միայն մի բան չէր հանդուրժում, ինչպես չէր հանդուրժում նաև Մարքսը՝ կեղծիքը, կեցվածքամոլությունը, դատարկաբանությունը։ Քծնությունը, ստորաքարշությունը, քսվողությունը անհնարին էին Լենինի շրջապատում։

Վլադիմիր Իլյիչի հմայիչ պարզության ու համեստության մասին շատ է գրվել։ Հիշողությունների ժողովածուի այս գրքում ևս նրա զինակիցներն ու աշխատակիցները մեծ ջերմությամբ են խոսում Իլյիչի բնավորության այդ հիանալի առանձնահատկության մասին։ Եվ իրոք, դառնալով Ժողկոմսովետի նախագահ,— գրում է Լ. Ա. Ֆոտիևան,— Լենինը մնաց նույնքան պարզ ու համեստ, ինչպես տարագրության մեջ ապրելու ժամանակ էր։ Նույնքան համեստ էր նրա կենցաղը։ Երբեք կոնֆլիկտ չէր ստեղծվում Լենինի անձնական կյանքի և այն գաղափարների միջև, որոնք նա քարոզում էր։ Անձնականն ու հասարակականը ներդաշնակորեն զուգակցվում էին նրա մեջ։

Լենինի մոտ համեստությունը միանում էր սեփական արժանապատվության հսկայական զգացմունքի և սովետական ժողովրդի առջև ունեցած խոր պատասխանատվության հետ այն ամենի համար, ինչ կատարվում էր երկրում։ Այդ էր պատճառը, որ նա այնքան խոր կերպով էր զգում ժողովրդական մասսաների տառապանքները և այնքան ջերմորեն էր ուրախանում ամեն մի հաջողության համար։ Եվ իզուր չէ, գրում է Ն. Ի. Ալտմանը, որ բանվորներից մեկը Լենինից ստացած իր տպավորությունը ձևակերպել է հետևյալ բառերով. «Պարզ է, ինչպես ինքը՝ ճշմարտությունը»։

*Ժողովածուն մի շարք հուշեր է պարունակում, որտեղ հեղինակները ցցուն փաստերի հիման վրա ցույց են տալիս ազգային հարցի նկատմամբ Վ. Ի. Լենինի վերաբերմունքը։*

*Ե՛վ Ն. Նարիմանովը, և՛ Ա. Ֆ. Մյասնիկյանը իրենց հուշերում հատկապես կանգ են առնում այն բանի վրա, որ Վլադիմիր Իլյիչ Լենինը անչափ զգույշ ու խորամիտ վերաբերմունք ուներ դեպի ռուսական նախկին կայսրության սահմաններում ապրող մեծ ու փոքր ազգությունները, իսկ հետագայում՝ դեպի սովետական ազգային ռեսպուբլիկաները։ Թուրքեստանը և Ադրբեջանը նա համարում էր Արևելքի նախադուռը։ Նա գտնում էր, որ հարևան պետություններում արձագանք կգտնի այն ամենը, ինչ կատարվում է սովետական այդ ռեսպուբլիկաներում։ Անդրկովկաս աշխատանքի մեկնող Ա. Ֆ. Մյասնիկյանին Իլյիչը խորհուրդ էր տալիս Կովկասում վարել զգույշ և ճկուն քաղաքականություն, հաշվի առնելով ռուսական ռևոլյուցիայի փորձը։ Կովկասյան ընկերներին ուղղված այն հայտնի նամակը, որտեղ Լենինը համառոտակի շարադրել է իր այդ մտքերը, հրապարակվել է մեր մամուլում։*

*Ժողովածուում հրապարակված մի շարք հուշեր, այդ թվում նաև Գ. Վ. Չիչերինի հուշերը, պատմում են, որ Վլադիմիր Իլյիչ Լենինը Սովետական պետության արտաքին քաղաքականության ոգեշնչողն ու ղեկավարն էր։ Լենինը համառորեն պայքարում էր խաղաղության համար, երկու սիստեմների խաղաղ գոյակցության համար։ Լենինյան արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքներն էին նաև գործարար կապերի հաստատումն ու ամրապնդումը այլ պետությունների հետ, բարեկամական կապերի հաստատումը հարևան արևելյան երկրների՝ Իրանի, Աֆղանստանի, Թուրքիայի հետ։*

*Չափազանց մեծ հետաքրքրություն են ներկայացնում ժողովածուում հրապարակված միջազգային բանվորական և կոմունիստական շարժման գործիչների բազմաթիվ հիշողությունները, որոնցում Լենինը դրվատված է որպես հետևողական ինտերնացիոնալիստ, որպես միջազգային պրոլետարիատի ճանաչված առաջնորդ։*

*Մեր երջանկությունն է, որ ապրել ենք Լենինի հետ միասին,— գրում է իր հուշերում Ն. Պ. Գորբունովը,— մենք չենք գերագնահատում անհատի դերը, բայց Վլադիմիր Իլյիչի հանճարը բանվոր դասակարգի հանճարի մարմնացումն էր։ Լենինը անմահ է ոչ նրա համար, որ նա մեծ մարդ էր։ Նա անմահ է, որովհետև բարձրացող բանվոր դասակարգի սիրտն էր, միտքը և հանճարը։ Նա զգում էր, ինչպես ոչ-ոք, կոլեկտիվ սրտի բաբախյունը և մասսաների կամքը, նա մարդկության ճակատագրերի իմաստուն կանխատեսողն էր, նա պողպատի նման ամուր էր և հոր նման սիրալիր, նա լուծում էր համաշխարհային ամենաբարդ պրոբլեմները և հասարակ էր ու հասկանալի նույնիսկ երեխաներին։*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Մ. ԿԱՍՅԱՆ**

*Մեր երկրի ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսը խարսխված է արդի տեխնոլոգիայի հիման վրա ստեղծվող և կիրառվող առավել կատարելագործված մեքենաների արտադրության վրա։*

*Լենինի պատգամն առաջավոր տեխնիկայի զարգացման և արմատավորման վերաբերյալ միշտ էլ հանդիսացել է ղեկավար սկզբունք ՍՄԿՊ-ի համար, որը բացառիկ ուշադրություն է հատկացրել ծանր արդյունաբերության և նրա սիրտը հանդիսացող մեքենաշինության աճին։ Սրանով պետք է բացատրել այն վիթխարի նվաճումները, որ ձեռք են բերվել մեր երկրում մեքենաշինության ասպարեզում։*

*Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձի նախօրյակին մեր երկրի ժողովրդական տնտեսությունն աննախընթաց վերելք է ապրում. այդ է մեքենաշինության ինտենսիվ զարգացման մեծ արժանիքը։ Եվ, իրոք, եթե 1950 թվականին սովետական մեքենաշինարարները ստեղծել են 650 նոր տիպի մեքենաներ, ապա 1955 թվականին ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են 1056 նոր տիպի մեքենաներ։ Դա արտակարգ նշանակալից է ժողովրդական տնտեսության նոր ճյուղերի մեքենայացման տեսակետից։*

*Մեքենաշինության մեջ հիմնական նյութ հանդիսանում է մետաղը։ ՍՍՌՄ-ում սև մետաղների արտադրությունն անընդհատ բարձրանում է. չուգունի աճը 1923 թվականի 3,3 միլիոն տոննայից 1955 թվականին հասել է մինչև 33,3 տոննայի, պողպատինը՝ 4,3 միլիոնից մինչև 45,3 տոննայի, գլանվածքինը՝ 3,4 միլիոնից մինչև 35,3 տոննայի։ 1960 թվականին կարտադրվի 53 միլիոն տոննա չուգուն, 68,3 միլիոն տոննա պողպատ և 52,7 միլիոն տոննա գլանվածք։ ՍՍՌՄ-ը բացառիկ հարուստ է երկաթի հանքանյութի պաշարներով։ Լավ են շահագործվում մեր դոմնային և մարտենյան վառարանները։*

*1956 թվականի կեսին դոմնային վառարանների օգտակար ծավալի օգտագործման գործակիցը կազմել է 0,63, մինչդեռ ԱՄՆ-ում այդ գործակիցը ետ է մնում և շարունակում է մնալ 1,09 մակարդակի վրա։ Պողպատի միջին օրական արտադրությունը մարտենյան վառարանների հատակի մեկ քառակուսի մետրից 1928 թվականի 2,09 տ/մ²-ից զգալիորեն ավելացել է մինչև 1955 թվականի 6,55 տ/մ²։*

*Ագլոմերատի պարունակության ավելացումը բովախառնուրդում, ֆլյուսացված ագլոմերատի աճող դերը, երբ աղացված կիր ավելացնելու շնորհիվ կրի տարրալուծման պրոցեսը տեղի է ունենում դոմնային վառարանից դուրս*

և այդ իջեցնում է կոքսի ծախսը, մեծացնում է վառարանի ծավալը և բարելավում շահագործման հատկությունները, ապահովում է կոլոշնիկի (վառարանի վերևի մասի) տակ անցումը գազի բարձր ճնշման, հաստատուն և բարձր խոնավության օդաշափման օգտագործմանը, թթվածնով հարստացված օդի կիրառմանը — այս բոլոր միջոցառումներն ավելացրին չուգունի թողարկումը։ Ճիշտ նույնպես բովախառնուրդի ստանդարտացումը, պողպատաձուլական վառարանների ծավալի մեծացումը, թթվածնային օդաշափման օգտագործումը, քրոմ-մագնեզիումային կամարների և բարձր կայունության հրահեստ նյութերի կառուցվածքը, մի շարք տեղերում վակուումային մշակման արմատավորումը խիստ ավելացրին ձուլված պողպատի քանակությունը և բարելավեցին նրա որակը։

Վեցերորդ հնգամյակում շարք կմտնեն 1510 ու 2280 $մ^3$ ծավալ ունեցող դոմնային վառարանները և կզարգանա 500 տոննա տարողությամբ մարտենյան վառարանների շինարարությունը։

Կոնվերտորային պրոցեսի կատարելագործման հնարավորությունները, որոնք կապված են թթվածնի կիրառման հետ, վերջին ժամանակաշրջանում հանգեցրին այն բանին, որ պողպատի արտադրության այդ տեսակը ստանում է ավելի մեծ զարգացում։ Հատկապես բարենպաստ հանդիսացավ անցումը պողպատի անընդհատ թափման, պակասեցնելով մետալուրգիական վերակտրման արժեքը, խիստ կրճատելով մետաղի մնացուկները։

Ավելացնելով գլանման արագությունը և պատրաստուքների կշիռը, կիրառելով պլանետարային հաստոցներ, որոնք թույլ են տալիս մեկ անցման ընթացքում իրագործել շերտի մինչև 90 տոկոսի հասնող սեղմում, հնարավոր դարձավ խիստ մեծացնել գլանվածքը և բարելավել նրա որակը։

Այդ ամենը բարձրացրեց ժամանակակից մեքենաշինության մեջ մեծ դեր խաղացող լեգիրացված և հատուկ պողպատի բաժինը։ Եվ այդ հասկանալի է, քանի որ լեգիրացված պողպատից և ձևափոխված չուգունից պատրաստած մեքենաների դետալներում մեծացան թույլատրելի լարումները, իսկ այդ, իր հերթին, նպաստում է մեքենաների կշռի իջեցմանը։

Միայն հետպատերազմյան ժամանակաշրջանում Սովետական Միության սև մետալուրգիան յուրացրել է մոտ 400 նոր մարկայի պողպատ և գլանվածքի 240 պրոֆիլներ, շատ ավելի մոտեցնելով պատրաստուքի պրոֆիլը դետալների վերջնական չափերին՝ մնացուկների մեծագույն կրճատման նպատակով։ Այդ նվաճումները, գլանվածքի պարբերական պրոֆիլների արտադրության զարգացման հետ միասին, խիստ կբարձրացնեն մետաղի օգտագործման գործակիցը դետալների կոնստրուկցիաներում և ամբողջ մեքենայում։

Ապագա մեքենաշինության մեջ հատուկ դեր պետք է հատկացվի տիտանին և նրա համաձուլվածքներին, հաշվի առնելով դիմացկունության բարձր ցուցանիշները փոքր տեսակարար կշռի դեպքում։

Սովետական Միության ժամանակակից մեքենաշինության մեջ, ՍՄԿՊ XX համագումարի որոշումների համաձայն, հզոր զարգացում են ստացել պատրաստուքների արտադրության ցեխերը։ Չուգունե և պողպատե շտամպված դետալների արտադրության տեխնոլոգիայի բարելավման հարցերը եղել են և մնում են մեքենաշինարարների ուշադրության կենտրոնում։

Առավելագույն զարգացում են ստանում այն տեխնոլոգիական պրոցեսները, որոնք թույլ են տալիս կիրառել ավտոմատացումն ու լայն մեքենայացումը։



Ժամանակակից մեքենաների կոնստրուկցիաներում չուգունը գերակշռում է իր համեմատաբար բարձր ձուլման հատկություններով, ցածր արժեքով և մեքենաների շահագործման ժամանակ ծագող թրթռումները կլանելու ունակությամբ։ Այդ պատճառով էլ ձուլման արտադրության գլխավոր ուղղությունները հանդիսանում են բարձր դիմացկունության համաձուլվածքների մշակումն ու կիրառումը, ձուլվածքների ճշտության բարձրացումը, մակերևույթի որակի բարելավումը, արտադրողականության բարձրացումը ցածր արժեքի և ձուլողների աշխատանքի պայմանների խիստ բարելավման դեպքում։

Հսկայական նվաճումներ կան ձուլման արտադրության առաջին էտապում՝ չուգունի ձուլման գործում։ Ներկայումս մեքենաշինական գործարաններում սպառվող չուգունի 97—98 տոկոսը ձուլվում է վագրանկաներում, նկատի ունենալով, որ չուգունի էլեկտրահալումը, չնայած նրա բոլոր առավելություններին, դեռ թանկ է նստում։ Բովախառնուրդի և վագրանկային գազերի հանդիպական շարժումը, վագրանկայի աշխատանքի անընդհատությունը և օգտակար գործողության համեմատաբար բարձր գործակիցը (35—40%) հիմք են ծառայել վագրանկաներն ամենուրեք տարածելու համար։ Սակայն անընդհատ զարգացող տեխնիկան հալման պրոցեսին թելադրում է շարունակ աճող պահանջներ, մասնավորապես հեղուկ չուգունի ջերմաստիճանի բարձրացման տեսակետից։ Վագրանկաների օգտակար գործողության գործակիցը բարձրացնելու և դրված խնդիրը բավարարելու համար կիրառվում են հատուկ ռեկուպերատորներ, որոնք օգտագործում են վագրանկայից հեռացող գազերի ջերմությունը։ Հիմնական երեսապատման զուգակցումը տաք օդաշափման հետ բարձր ճնշման դեպքում (մինչև ջրային սյունի 1000 միլիմետրը) նպաստում է ծծմբազուրկ չուգունի ստացմանը հատկապես վագրանկայի ավտոմատիկ կարգավորման պայմաններում։

Չուգունե ձուլվածքների արտադրության երկրորդ էտապը՝ կաղապարների պատրաստումը հանդիսանում է ամենից ավելի աշխատատար պրոցեսը և դրա համար էլ նրա վրա հատուկ ուշադրություն է դարձվել։ Այստեղ գլխավոր խնդիրը ձուլվածքների ճշտության բարձրացումն է աշխատատար պրոցեսը պակասեցնելու դեպքում։ Կաղապարման համար լայն տարածում են ստացել կաղապարման մեքենաները։ Ստալինգրադի տրակտորային գործարանի փորձի համաձայն ձուլվածքների ճշտությունը կարող է դեռ ավելի բարձրացվել, եթե ամբողջ կաղապարը կամ նրա մասերը պատրաստվելու լինեն չոր ձողերից։ Զարգացում է ստացել այն կաղապարների պատրաստման մեթոդը, որոնք մամլվում են մեծ ճնշման տակ։ Լենինգրադի կարբյուրատորային գործարանն իրագործում է փոքր չափերի և բարձր ճշտության ձուլվածքների ստացումը՝ կերամիկական կաղապարների մեջ հեղուկ մետաղը թափելու միջոցով։

Հատկապես հեռանկարային բնույթ է ստանում ճնշման տակ մոդելներով կատարվող ձուլման զարգացումը։ Այդ երկու մեթոդն էլ մեծ տարածում են ստանում։

Կեղևային կաղապարներում կատարվող ձուլումը մի քանի անգամ կրճատում է մեխանիկական մշակման համար նախատեսված թողուկները՝ հողում կիրառվող կաղապարման սովորական մեթոդների համեմատությամբ։ Չուգունե

ձուլվածքի կառուցվածքը ստացվում է մանրահատիկ, մակերևույթը լինում է մաքուր, առանց ճեղքերի և փչուկների, ուրվագծերը՝ պարզորոշ։ Կեղևային կաղապարների դիմացկունությունը հասնում է մոտ 25 կգ/սմ² և նրանց պատրաստման համար կիրառվում են բարձր արտադրողականության բազմադիրք կիսաավտոմատներ, որոնք տալիս են ավելի քան 500 կաղապար մեկ ժամում։ Միաժամանակ հողի պահանջը իջնում է 10 անգամ, իսկ պրոցեսի արտադրողականությունը մեծանում է 15 անգամ։

Ճնշման տակ կիրառվող ձուլումը (գլխավորապես գունավոր համաձուլվածքների համար, որոնք ունեն մինչև 1000°C հալման ջերմաստիճան) ապահովում է ճիշտ չափերի ստացումը, ընդ որում հետագա մեխանիկական մշակման ծավալը կրճատվում է 80—85 տոկոսով։

Դժբախտաբար, չուգունե խոշոր ձուլվածքները, որոնք ունեն 100 կգ-ից ավելի կշիռ, շարունակում են կաղապարել հողում։ Այս դեպքում կարևոր նշանակություն են ձեռք բերում կաղապարման նյութերը, որոնց պահանջը կազմում է մոտ 10 տոննա՝ մեկ տոննա ձուլվածքի համար և որոնց որակից է կախված ձուլվածքների որակը։ Սովորաբար մեքենայացված ձուլման ցեխերի պայմաններում կիրառվում են կաղապարման սինթետիկ խառնուրդներ, որոնք կազմվել են կվարցային ավազների ու կավային խառնուրդների, ինչպես նաև ածխածին պարունակող բաղադրիչ մասերի մեծ ցրում ունեցող հավելումների հիման վրա։ Ավազների պաշարների կրճատման համար մշակված խառնուրդները վերականգնվում են։ ՍՍՌՄ ժամանակակից մեքենաշինական գործարանների չուգունաձուլական ցեխերի մեծ մասում իրագործվում է խառնիչ սարքերի ավտոմատացումը։

Պողպատե դետալների ազատ կռումից նրանց շտամպման և մամլման անցնելը բնորոշվում է ոչ միայն նրանով, որ կրճատվում են աշխատատար պրոցեսներն ու հետագա մեխանիկական մշակման թողուկները, այլև նրա կարևոր առանձնահատկությունը հանդիսանում է այն, որ այդ ժամանակակից մեթոդների դեպքում ստեղծվում է պրոցեսների ավտոմատացման հնարավորություն։ Այժմ արդեն գոյություն ունեն ավտոմատիկ գծեր շտամպվող իրերի — պատրաստուքների ստացման համար, որ խիստ պակասեցնում է հաստոցային սարքավորման աշխատանքի ծավալը և թեթևացնում դարբին-շտամպողների աշխատանքի պայմանները։ Այսպիսով, մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձին, պատրաստուքների ստացման բոլոր հիմնական էտապները գտնվում են հետագա զարգացման ուղիղ ճանապարհի վրա բոլոր տեսակետներից և հատկապես բարձր արտադրողականության, ինքնարժեքի իջեցման և նրանց որակի բարելավման տեսակետից։ Սակայն նույնիսկ կոնստրուկցիոն պողպատի պահանջվող մարկաների ստացման լայն հնարավորությունների դեպքում անհրաժեշտություն է ծագել, մետաղի կառուցվածքի վրա ներգործելու միջոցով, նրա հատկությունները ենթարկել կոնստրուկտորների ներկայացրած պահանջներին։

Պողպատի ջերմային և ջերմաքիմիական մշակման ժամանակակից մեթոդները, որոնք լայնորեն արմատավորվել են մեր մեքենաշինական գործարաններում, թույլ են տալիս ստեղծել արագընթաց մեքենաներ, որոնց դետալները լավ են ենթարկվում մշակման կայունության, հարվածային ներգործությունների և բարձր ջերմաստիճանների կայունության պահանջներին։

Նյութերի այդպիսի բարձր ապահովվածությունը մեքենաշինության զար-



գացման համար, հոսքային արտադրության սկզբունքով կազմակերպված բազմաթիվ մեքնաշինական գործարանների շահագործումը, զուգակցված լինելով բազմաթիվ գիտա-հետազոտական ինստիտուտների և մասնագիտացված կոնստրուկտորական բյուրոների հետ, բացառիկ բարենպաստ պայմաններ են ստեղծել ժողովրդական տնտեսության համար ամենաբազմազան մեքենաներ ստեղծելու, սկսած մի քանի գրամ կշռող նրբագույն գործիքներից մինչև երկու հարյուր հազար կիլովատ կարողությամբ հսկայական տուրբինները։ Իսկ մեր երկրում, որտեղ հաջողությամբ վճռվում է աշխատանքի արտադրողականությունն ամեն կերպ բարձրացնելու խնդիրը, նրա կատարումը և աշխատավորների բարեկեցության ընդհանուր բարձրացումն ապահովելու համար մեքենաների պահանջն անընդհատ աճում է։ Եվ մեր երկրի մեքենաշինարարները շատ էներգիա են թափել, որպեսզի ըստ հնարավորին բավարարեն այդ ժողովրդական պահանջը։

Մեքենաշինության և նրա բոլոր բազաների զարգացման զուգընթաց բոլոր ճյուղերում ծագեց մեքենաների հորինման և պատրաստման նոր ուղիներ որոնելու անհրաժեշտությունը, քանի որ սովորական մեթոդները չէին կարող բավարարել սոցիալիստական տնտեսության ներկայացրած պահանջները։ Այդ նոր մեթոդների հիմքում դրվել են մեքենայի կոնստրուկցիայի ամենատնտեսողական տեխնոլոգիան, նրա մասնագիտացումը, արտադրության մասնագիտացումը և կոոպերացումը, որոնք հնարավորություն են տալիս հարանոս արտադրությունն ավելի էֆեկտիվ կազմակերպելու համար։

Զարգացման առաջին էտապում, մի շարք դեպքերում, այդ առաջ բերեց մեքենաշինական գործարանի ընդհանուր հասկացողության վերացման անհրաժեշտությունը։

Այդպիսի ունիվերսալ գործարանի փոխարեն սկսվեց գործարաններին համապատասխան պրոֆիլ հատկացնելու պրոցեսը, իսկ կառուցվող բազմաթիվ գործարանները նախատեսվեցին մեքենաշինության կոնկրետ ճյուղերի համար։ Մասնագիտացված գործարանների բազայի վրա սկսեցին զարգանալ արդյունաբերության հետևյալ ճյուղերը՝ հաստոցաշինությունը, ավտոտրակտորաշինությունը, լոկոմոտիվաշինությունը, ինքնաթիռաշինությունը, էլեկտրամեքենաշինությունը և այլն։ Մեքենաշինության ճյուղերի ներսում զարգացավ գործարանների մասնագիտացումը։ Այսպես, օրինակ, հաստոցաշինական արդյունաբերությունն ստեղծեց Գորկիի ֆրեզման հաստոցների գործարանը, Խարկովի հղկման հաստոցների գործարանը, Կիևի հաստոց-ավտոմատների գործարանը, Ռյազանի ծանր հաստոցների գործարանը և այլն։ Մասնագիտացումն ավելի առաջ էր գնում և, օրինակ, Մոսկվայում խոշորագույն «Կրասնի պրոլետարի» գործարանը արտադրում է մեկ տիպի խառատային հաստոցներ։ Նույնպիսի դրության մեջ են գտնվում միջինվոլգյան հաստոցագործարանը, Երևանի հաստոցագործարանը և այլն։ Սկսեցին զարգանալ գործարաններ, որոնք արտադրում են անհրաժեշտ տիպացված հանգույցներ հարյուրավոր տիպի հաստոցների համար, դրանք են «Ստանկոպատրոն», «Գիդրոպրիվոդ» և այլն գործարանները։ Դրա շնորհիվ հաստոցի հիմնական գործարան-պատրաստողին գործարան-հարևանները մատուցում են էլեկտրասարքավորում, կոթառ, սահմանած ձևի դետալներ, ամրացման փայտեղեն, առանցքակալներ և այլն։

Գորկիի մարդատար և բեռնատար ավտոների գործարանը ստանում է

350 գործարան-հարևանների արտադրանքը։ Բայց այդ գործարաններն իրենց արտադրանքը հանձնում են նաև մյուս ավտոձեռնարկություններին։

Գործարանի այդպիսի մասնագիտացումը նպաստում է արտադրության հարահոս մեթոդների կիրառմանը, որովհետև շինվածքներն ու նրա հանգույցները տիպացված են, իսկ կոնստրուկցիան առավելագույն չափով ենթարկված է արտադրողական տեխնոլոգիային։

Մեքենաշինության մեջ մեքենայի դետալների պատրաստման աշխատատար պրոցեսի զգալի մասը վիճակված է մեխանիկական մշակման։ Եվ այդ հասկանալի է, որովհետև ժամանակակից արագընթաց մեքենաների դետալների ծառայության ժամկետի երկարացումը պահանջում է միացվող դետալների մակերևույթի բարձր ճշտություն և կոկություն։

Դետալների բարձր արտադրողական մշակումը մետաղահատ հաստոցների վրա պահանջում է կիրառել բարձր կայունության կտրող գործիքներ, մեծ կարողության հաղորդակով արագընթաց հաստոցներ։ Սովետական իշխանության տարիներին մեքենաշինական արդյունաբերությունը կտրող գործիքի համար պահանջվող ածխածնավոր, ինքնակոփված և արագակտրիչ պողպատի կիրառումից անցել է ավելի բարձր կայունության պինդ համաձուլվածքներին՝ կամ վոլֆրամի կարբիդների կամ տիտանի ու վոլֆրամի կարբիդների բաղայի վրա։

Վերջին ժամանակաշրջանում արդյունաբերությունը ուժեղ կերպով արմատավորում է միներալա-կերամիկական թիթեղներ գործիքի ամրապնդման համար։ Ավելի կայուն գործիքի օգտագործումը թույլ տվեց հաստոցների վրա կատարել մեքենաների դետալների մշակումը կտրման հսկայական արագություններով և խոշոր մատուցումներով։ Բարձր ռեժիմների կիրառումը արժեքավոր է ոչ միայն նրա համար, որ այդ դեպքում խիստ բարձրանում է հաստոցավարի աշխատանքի արտադրողականությունն ըստ մեքենայի ժամանակի, այլև նրա համար, որ խիստ բարձրանում է դետալների մակերևույթների որակը, մակերևույթային շերտի կոկության և դեֆորմացիայի ենթարկվելու տեսակետից։ Մեքենաշինության նորարարներ Գ. Բորտկևիչը, Պ. Բիկովը, Վ. Կոլեսովը և նրանց մյուս բազմաթիվ հետևորդները շատ արժեքավոր բաներ մտցրին բարձր ռեժիմներով հաստոցների վրա ամենուրեք աշխատելու համար։ Միայն վերջին 10 տարիների ընթացքում կտրման ռեժիմները միջին հաշվով բարձրացան ավելի քան 2 անգամ։

Աշխատանքի արտադրողականության է՛լ ավելի ինտենսիվ բարձրացման և հնգամյա պլաններով նախատեսվող առաջադրանքների կատարման համար անհրաժեշտ էր մշակել և արմատավորել միջոցառումների մի ամբողջ սիստեմ, որ թույլ է տալիս կրճատել զանազան օժանդակ օպերացիաների ժամանակը։ Եվ այդ շատ կարևոր էր, քանի որ մեր մեքենաշինական արդյունաբերության մեջ գտնվող մեկ միլիոնից ավելի մետաղահատ հաստոցների վրա զգալի քանակությամբ ժամանակ էր կորչում ձեռքով օժանդակ օպերացիաներ կատարելու համար։ Եվ ահա, քսան տարվա ընթացքում սիստեմատիկ աշխատանք է տարվում հաստոցի կառավարումը պարզացնելու, մշակվող դետալների ավտոմատիկ չափումը արմատավորելու, հաստոցի վրա դետալի տեղադրումը արագացնող աշխատանքային հարմարանքներ կիրառելու համար, բարձրացնելով հաստոցի, դետալի և գործիքի զուգակցված շարժումների ճշտությունը և այլն։



Դրա հետ միասին, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման համար հնարավոր դարձավ մեկ դետալը միաժամանակ մշակել մի քանի միատիպ կամ տարատիպ կտրող գործիքներով։ Դա առաջ էր բերում յուրաքանչյուր գործիքին ընկնող աշխատանքի ծավալի և մեքենայական ժամանակի կրճատումը։ Այդ գաղափարներն էլ ավելի մեծ զարգացում ստացան այն իմաստով, որ մշակվեցին բազմաիլիկ հաստոցների կոնստրուկցիաներ, որոնք թույլ են տալիս միաժամանակ մշակել մի քանի դետալ, ընդ որում յուրաքանչյուր դետալը մի քանի գործիքով։ Հետագայում Ստալինգրադի տրակտորային գործարանի նախաձեռնությամբ հաջողվեց մի քանի հաստոցներ, որոնք տեղադրված են տեխնոլոգիական գծում տվյալ դետալի հաջորդական մշակման համար, միմյանց հետ այնպես կապակցել, որպեսզի տվյալ հաստոցի վրա մշակված դետալը ավտոմատիկ կերպով փոխանցվի հետևյալ հաստոցի վրա։

Այդպես մեզ մոտ ծագեցին ավտոմատիկ հաստոցային գծեր, որոնց քանակությունը պետք է խիստ ավելանա վեցերորդ հնգամյակի ընթացքում։ Դրա հետ միասին ավտոմատիկ հաստոցային գծերը զարգանալով փոխվեցին ավտոմատիկ գործարանների, որոնք աշխատում են մեծ էֆեկտիվությամբ։ Նման ավտոմատիկ հաստոցային գծերը հաջողությամբ մշակում են տրակտորային և ավտոմոբիլային շարժիչների բլոկներն ու բլոկների կափարիչները, ինչպես նաև ուրիշ համեմատաբար մեծ գաբարիտի դետալներ, որոնք պահանջում են մեծ թվով օպերացիաների իրագործում, կոնստրուկտիվ ձևերի բարդության պատճառով։ Միևնույն ժամանակ հայրենական հաստոցաշինությունը հաջողությամբ զարգացնում է մի այլ, չափազանց հեռանկարային գաղափար։ Նրա էությունն այն է, որ ստեղծվում են բարձր արտադրողականության բազմագործիք և բազմադիրք ավտոմատներ, որոնք կառուցվել են օպերացիաների բարձր համակենտրոնացման սկզբունքով և թույլ են տալիս մի հաստոցում համատեղել մշակման զանազան տեսակները։ Մի այդպիսի հաստոց կարող է փոխարինել ընդհանուր նշանակման մինչև 12 զանազան հաստոցներ։

Այդ ուղղություններով ձեռք բերած փորձը և նշված սկզբունքների ամեն տեսակ զարգացումը առաջ բերին երևելի պրոգրես դետալների մեխանիկական մշակման գործում։ Նրա էությունը հետևյալն է. եթե անցյալում մենք նախագծում էինք տեխնոլոգիական պրոցեսը, հենվելով մեր հաստոցաշինական արդյունաբերության թողարկած, ընդհանուր և հատուկ նշանակման հաստոցների վրա, ապա հիմա մենք ունենք բոլոր հնարավորությունները, տվյալ դետալի մշակման նախագծված ռացիոնալ տեխնոլոգիայի համաձայն, կառուցել ստանդարտ հանգույցներից կազմված ավտոմատը։

Այսպիսով, հետպատերազմյան ժամանակաշրջանում մետաղահատ հաստոցները ստացել են բացառիկ զարգացում ինչպես ընդհանուր և հատուկ նշանակման հաստոցների արտադրության, այնպես էլ բազմադիրք ավտոմատների և ավտոմատիկ հաստոցային գծերի ուղղությամբ։

Բայց ինժեներական հասարակայնությունը չի հաշտվում այն մտքի հետ, որ մեքենաշինության մեջ առաջատար դերը պատկանում է կտրման միջոցով ստացվող ձևերի գոյացմանը, որովհետև այդ պրոցեսը կապված է շատ դժվարությունների հետ։ Այդ պատճառով էլ ավելի մեծ զարգացում են ստանում էլեկտրաէրոզիական, ուլտրաձայնական և էլեկտրահիդրավլիկական

մշակման մեթոդները, որոնք առանձին, դեռևս նեղ տեղամասերում հաջողությամբ մրցակցում են կտրման սկզբունքների հետ։

Մեքենաշինության մեջ շատ մեծ աշխատանք է տարվել հավաքման պրոցեսների մեքենայացման և, մասամբ ավտոմատացման համար մասսայական արտադրության պայմաններում (գնդիկավոր և գլանիկավոր առանցքակալներ, էլեկտրասարքավորում և այլն), քանի որ հավաքման օպերացիաներն էլ նույնպես աշխատատար են։

Սովետական Միության ժողովուրդների համերաշխ ընտանիքում Սովետական Հայաստանի մեքենաշինարարները նույնպես իրենց լուման են մտցրել մեքենաշինության զարգացման գործում։ Եվ եթե անցյալում ռեսպուբլիկան մեքենաշինություն չի ունեցել, ապա Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձին Հայկական ՍՍՌ մեքենաշինարարները կըթողարկեն տասնյակ հազարավոր գեներատորներ, տրանսֆորմատորներ, մետաղահատ հաստոցներ, կոմպրեսորներ, պոմպեր, էլեկտրաշարժիչներ, էլեկտրական ճշգրիտ չափիչ գործիքներ և այլն, պատրաստելով այդ ամենը ժամանակակից տեխնոլոգիայի բազայի վրա։

---



# ԱԿԱՆԱՎՈՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆԵՐԻ ԿՅԱՆՔԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Հայաստանի պետական հրատարակչությունը լույս է ընծայել Վ. Ավետիսյանի աշխատությունը՝ նվիրված Սուրեն Սպանդարյանի կյանքին ու ռևոլյուցիոն գործունեությանը [1]։

Սուրեն Սպանդարյանը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան հնագույն գվարդիայի փայլուն ներկայացուցիչներից էր, Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտներից ու զինակիցներից մեկը։ Նա իր գիտակից կյանքը ամբողջովին նվիրաբերեց բանվոր դասակարգի ու աշխատավորության ազատագրման, կոմունիզմի հաղթանակի մեծ գործին։ Պատանի հասակից ծանոթանալով մարքսիզմին, նա հետագայում դարձավ նրա անձնվեր պրոպագանդիստներից ու ռևոլյուցիայի տաղանդավոր կազմակերպիչներից մեկը. մինչև իր կարճատև, բայց գեղեցիկ կյանքի վախճանը նա հավատարիմ մնաց լենինիզմի դրոշին։Ականավոր ռևոլյուցիոն գործչի կյանքի հերոսական ուղին կոմունիզմի գործին անձնվեր ծառայելու մի պայծառ օրինակ է. նա նոր սխրանքների է ոգեշնչում աշխատավորներին, մեր պանծալի երիտասարդությանը, սովորեցնում է նրանց ապրել ու պայքարել այնպես, ինչպես ռևոլյուցիայի հաղթանակի համար պայքարել է Սուրեն Սպանդարյանը։

Ս. Սպանդարյանի կյանքի ու գործունեության վերաբերյալ անցյալում լույս են տեսել մի շարք ուսումնասիրություններ, գրքույկներ, ինչպես նաև պարբերական մամուլում տպագրվել են բազմաթիվ հոդվածներ։ Դեռևս 1927 թվականին հրատարակվել է հին բոլշևիկների հոդվածների և հիշողությունների ժողովածուն՝ «Սուրեն Սպանդարյան» խորագրով։ 1939 թվականին ՀԿՊ Կենտկոմին կից Պարտիայի պատմության ինստիտուտը հրատարակեց Սպանդարյանի հոդվածների, նամակների և փաստաթղթերի ժողովածուի մեկ հատորյակը, որը 1940 թվականին վերահրատարակվեց ռուսերեն։ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի ինստիտուտի Հայկական ֆիլիալի հրատարակությամբ 1949 թվականին լույս տեսավ գրականության, արվեստի, կուլտուրայի և կրթության հարցերի մասին Սպանդարյանի հոդվածների ժողովածուն։

Ուշադրության արժանի են Վ. Ավետիսյանի ուսումնասիրությունները։ Դեռևս 1945 թվականին Հայպետհրատը ռուսերեն լեզվով լույս ընծայեց հեղինակի «Սուրեն Սպանդարյան» աշխատությունը, իսկ 1951 թվականին այն լրացումներով վերահրատարակվեց հայերեն։ Ներկայումս հրապարակի վրա է հեղինակի այդ աշխատության երկրորդ վերամշակված հրատարակությունը։

Գրախոսվող աշխատությունը գրված է փաստական հարուստ նյութի հիման վրա, օգտագործված են պարտիական բազմաթիվ փաստաթղթեր, տարբեր արխիվներում պահպանվող վավերագրեր, ժամանակի մամուլը, գրականությունը, հին բոլշևիկների և հարազատների հիշողությունները և այլն։ Համեմատած նախորդ հրատարակությունների հետ՝ հեղինակն այստեղ ավելի շատ է դիմել հին բոլշևիկների հուշերին, որոնք ջերմորեն ու մեծ սիրով են պատմում Սպանդարյանի մասին։ Նոր հրատարակության ակնհայտ առավելությունը նաև այն է, որ աշխատությունը զերծ է անհատի պաշտամունքի ազդեցությունից, այստեղ օբյեկտիվ ու հստակ են գնահատված քաղաքական գործիչները, պատմական իրադարձությունները, պահպանված է ընդհանուր և կոնկրետ նյութի շարադրանքի համամասնությունը։ Հեղինակին հաջողվել է համապարտիական ու ընդհանուր քաղաքական ֆոնի վրա տալ Սպանդարյանի կյանքի ու ռևոլյուցիոն գործունեության ուշագրավ դրվագները, գծել ռևոլյուցիոն գործչի վառ կերպարը։ Հաջող են կազմված ծանոթագրությունները։ Աշխատությունը գրված է ջերմությամբ, գաղափարական պատշաճ մակարդակով։ Այն բաղկացած է փոքրիկ ներածականից, յոթ գլուխներից, անվանացանկից և Սպանդարյանի կյանքի ու գործունեության համառոտ ժամանակագրությունից։

Աշխատության սկզբում հեղինակը համա-

---

[1] Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ—«Սուրեն Սպանդարյան», Հայպետհրատ, Երևան, 1957 թ., 334 էջ։

ռոտակի պատմում է Սուրեն Սպանդարյանի կյանքի պատանեկան տարիների մասին։ Ընթերցողի առաջ պատկերվում են Սուրեն Սպանդարյանի հոր՝ «Նոր-Դար» լրագրի խմբագիր-հրատարակիչ, հայ ազգային պահպանողական հոսանքի պարագլուխ Սպանդար Սպանդարյանի ընտանիքը, այդ լրագրի թղթակից-աշխատակիցներ Պ. Պռոշյանը, Նար-Դոսը, Մուրացանը, Ծատուրյանը, Ագայանը և ուրիշներ, այնտեղ երևում է նրանց թողած ազդեցությունը պատանի Սուրենի վրա։ Դեռ վաղ հասակից Թիֆլիսի արական գիմնազիայում սովորելիս Սուրեն Սպանդարյանը մեծ սեր ու հակում ցուցաբերելով դեպի հասարակական գիտությունները, հատկապես դեպի Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժումների պատմությունը, բուռն կերպով հետաքրքրվում է հասարակական-քաղաքական հարցերով։ Թուրքական կեղեքիչների ծանր հալածանքները արևմտահայերի, անգլիական իմպերիալիստների վայրագությունները Հարավ-Աֆրիկյան ժողովուրդների նկատմամբ, խորապես վրդովում են Սուրենին և նա տարվում է ազատագրական գաղափարներով։ Սպանդարյանը տեսնում էր գոյություն ունեցող հասարակական կարգերի անարդարությունը, աշխատավորների չարքաշ կյանքը, շահագործող դասակարգերի ու շահագործվողների շահերի հակադրությունը և իր հոգու ամբողջ ուժով ատում կապիտալիստներին, կալվածատերերին, ցարական կարգերը։ Բայց նա սկըզբում չէր հասկանում սոցիալական անարդարությունների պատճառները, չգիտեր աշխատավորության ցարիզմի ու կապիտալիզմի լծից ազատագրելու ելքը։ Այդ նա իմացավ, երբ ծանոթացավ մարքսիզմին, շփվեց ռևոլյուցիոն մարքսիստների հետ և երբ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների գործունեության ազդեցության տակ ձևավորվեց նրա մարքսիստական աշխարհայացքը։

Այդ 19-րդ դարի վերջերն էր, երբ կապիտալիզմը թևակոխել էր իր զարգացման իմպերիալիստական ստադիան, երբ ռևոլյուցիոն շարժման կենտրոնը Արևմուտքից փոխադրվում էր Ռուսաստան, երբ հասունացել էր նոր տիպի, իսկական մարքսիստական բանվորական պարտիայի ստեղծման անհրաժեշտությունը։ Գրախոսվող աշխատության հեղինակը պատմում է, թե ինչպես էր այդ շրջանում մարքսիզմը տարածվում ու հաղթանակ տանում Ռուսաստանում, այդ թվում նաև Անդրկովկասում։ Նա ընդգծում է Վ. Ի. Լենինի կողմից ստեղծված «Պետերբուրգի բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միության» դերը Անդրկովկասում՝ սոցիալ-դեմոկրատական շարժման առաջացման ու ձևավորման գործում, Ռուսաստանից Կովկաս աքսորված ռևոլյուցիոն մարքսիստների, ինչպես նաև Մ. Ցխակայայի, Ա. Ծուլուկիձեի, Վ. Կեցխովելու, Ի. Ստալինի, Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և ուրիշների դերը մարքսիստական գաղափարների պրոպագանդման գործում։ Տալով Անդրկովկասում բանվորական ու ռևոլյուցիոն շարժումների սեղմ ուրվագիծը՝ հեղինակը նշում է, որ Սուրեն Սպանդարյանը գիմնազիայի վերջին դասարանում արդեն մասնակցում էր մարքսիստական ընդհատակյա խմբակին, կարդում էր ռևոլյուցիոն դեմոկրատների ու մարքսիզմի կլասիկների երկերը և դարձել էր Թիֆլիսի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ակտիվ անդամներից մեկը։ Ապա նա ճիշտ կերպով նկատում է, որ ինչպես Ստ. Շահումյանը և Բ. Կնունյանցը, այնպես էլ Ս. Սպանդարյանը, առաջիններից էին հայ իրականության մեջ, որոնք բարձրացրին ռևոլյուցիոն մարքսիզմի անաղարտ դրոշը, անհաշտ կռիվ հայտարարեցին նացիոնալիզմին, աշխատավորներին համախմբելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։

Գրքի հաջորդ էջերը նվիրված են արդեն մարքսիստ, ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատ Սպանդարյանի գործունեության լուսաբանմանը։

1902 թվականին, ավարտելով գիմնազիան, Սուրեն Սպանդարյանն ընդունվում է իր սիրած ու երազած Մոսկվայի համալսարանը, որը, ինչպես ինքն է ասում՝ Ռուսաստանին տվել էր «փայլուն գիտնականների, գրողների, ճշմարտությունն անխոնջ կերպով որոնողների, կյանքն ու բնությունը հարցասեր հետազոտողների մի ամբողջ պլեադա»։ Չնայած իր նյութական ծանր դրությանը, Սուրեն Սպանդարյանն իր ռուս ընկերների օգնությամբ շարունակում է ուսումը նախ պատմա-ֆիլոլոգիական, ապա իրավաբանական ֆակուլտետներում։ Միաժամանակ նա խորապես ուսումնասիրում է մարքսիզմը, կապվում տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպության հետ և ՌՍԴԲՊ Մոսկվայի Կոմիտեի հանձնարարությամբ ընդհատակյա աշխատանք է կատարում Պրեսնիայի բանվորական շրջանում։ Պարտիայի երկրորդ համագումարից հետո Սպանդարյանն անվերապահորեն կանգնում է Վ. Ի. Լենինի կողմը և անհաշտ պայքար է մղում մենշևիզմի և օպորտունիստական այլ հոսանքների դեմ։ Շուտով նա դառնում է պարտիայի Մոսկվայի կազմակերպության աչքի ընկնող գործիչներից մեկը։ Կապված լինելով Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության հետ՝ Սպանդարյանը մասնակցում էր նաև Անդրկովկասի պարտիական կազմակերպությունների աշխատանքին։

Հեղինակն առանձին գլուխ է հատկացրել



1905—07 թթ. ռևոլյուցիայի շրջանում Ս. Սպանդարյանի գործունեության լուսաբանությանը։ Սպանդարյանը Մոսկվայում է, նա ակտիվ մասնակցում է ծավալվող ռևոլյուցիոն շարժումներին։ 1905 թ. ապրիլին Մոսկվայի Կոմիտեի գիտությամբ նա կարճ ժամանակով մեկնում է Գերմանիա և հունիսի սկզբներին վերադառնում Թիֆլիս, ամբողջովին նվիրվում ռևոլյուցիոն-պարտիական աշխատանքի։ 1905 թվականի աշնանը նա նորից մեկնում է Մոսկվա և մասնակցում Դեկտեմբերյան զինված ապստամբության նախապատրաստմանն ու անցկացմանը։ Սպանդարյանը զենքը ձեռքին կռվում էր Կրասնայա Պրեսնիայի բարիկադների վրա։ 1906 թվականի սկզբներին նա, որպես զինված ապստամբության մասնակցի, հեռացվում է համալսարանից և վերադառնում Թիֆլիս։ Սկսվում է պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների ծանր ու զրկանքներով լի ուղին։ Այստեղ լիովին դրսևորվում են Սպանդարյանի տեսական-հրապարակախոսական-կազմակերպական ընդունակություններն ու կարողությունները։

Կովկասյան բոլշևիկյան կենտրոնի հանձնարարությամբ նա բազմակողմանի գործունեություն է ծավալում Անդրկովկասի բանվորական, աշխատավորական լայն մասսաների, հատկապես հայաբնակ շրջանների աշխատավորության մեջ։ Սուրեն Սպանդարյանը 1906 թվականին Ստ. Շահումյանի և Սարգիս Կասյանի հետ խմբագրում էր «Կայծ», իսկ հետո «Նոր խոսք» հայատառ բոլշևիկյան թերթերը, որոնք ինչպես ճիշտ կերպով նկատում է հեղինակը, «խոշոր դեր խաղացին հայ իրականության մեջ մարքսիզմ-լենինիզմի իդեաների տարածման, մենշևիկների ու բուրժուական նացիոնալիստների ջախջախման, հայ աշխատավորության ռևոլյուցիոն պայքարի կազմակերպման գործում»։ Այդ առումով էլ աշխատության հեղինակը վերլուծում է «Կայծ»-ում և այլ թերթերում լույս տեսած Սպանդարյանի այն հոդվածները, որոնք վերաբերում են պարտիայի թեորիական, իդեոլոգիական, տակտիկական ու կազմակերպական լենինյան սկզբունքների պաշտպանությանը։ Մասնավորապես նա կանգ է առնում «Ռևոլյուցիայի ալիքը բարձրանում է», «Սահմանադրական իլյուզիաների մասին», «Տակտիկական հարցերից», «Դումայի շուրջը» և այլ հոդվածների վրա, որոնցում Սպանդարյանը պաշտպանում ու պրոպագանդում էր ռևոլյուցիայի բնույթի, շարժիչ ուժերի և հեռանկարների պարտիայի լենինյան տակտիկան։ Սուրեն Սպանդարյանն ընդգծում էր, որ տվյալ ռևոլյուցիան բուրժուա-դեմոկրատական է, նրա հեգեմոնը պրոլետարիատն է, որը բոլշևիկների ղեկավարությամբ ամբողջ գյուղացիության հետ դաշինքի և բուրժուազիային չեզոքացնելու գիծ է տանում, և խնդիր ունի զինված ապստամբության ճանապարհով տապալելու ինքնակալությունը, հաստատելու ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարություն։ «Այս կռվում,— գրում էր Սպանդարյանը,— բանվոր դասակարգը և գյուղացիությունը ձեռք-ձեռքի տված, միացյալ ուժերով պիտի առաջ գնան» («Խորհրդավոր լռություն», «Կայծ» № 37, 1906 թ.)։

Մերկացնելով մենշևիկների տակտիկական օպորտունիզմը, որոնք գերագնահատում էին Դումայի նշանակությունը և կոնստիտուցիոն իլյուզիաներով մթագնում աշխատավորության դասակարգային գիտակցությունը, Սպանդարյանը հետևելով Լենինին, հայտարարում էր, թե ժողովրդի ազատագրության հարցը կլուծվի ոչ թե Դումայում, ներդումայական պայքարում, այլ փողոցում՝ ժողովրդական զինված ապստամբության միջոցով։ Նա կծու սարկազմով ծաղրում էր մենշևիկների ու կադետների շաղակրատությունը խաղաղ ռևոլյուցիայի կարելիության մասին, ասելով, որ ժողովրդի ու ցարի, շահագործվողների ու կեղեքիչների միջև չի կարող դասակարգային հաշտություն լինել։

Սպանդարյանը մերկացնում է Դանի, Պլեխանովի, Տրոցկու և ուրիշների մենշևիկյան հայացքները և պաշտպանում բոլշևիկյան-լենինյան տակտիկան ու ստրատեգիան ռևոլյուցիայի հարցերում։ Ուշագրավ է նրա «Բանվորական պրոֆեսիոնալ միությունների մասին» հոդվածը, որտեղ լենինյան դիրքերից բացահայտված է մենշևիզմի ու միջազգային օպորտունիզմի հակամարքսիստական բնույթը։

Իր գրքում Վ. Ավետիսյանը ցույց է տալիս, որ Սուրեն Սպանդարյանը իբրև հմուտ հրապարակախոս արձագանքում էր ժամանակի հասարակական-քաղաքական բոլոր կարևոր իրադարձություններին։ Նա իր հոդվածներում կրքոտությամբ էր պայքարում բուրժուական նացիոնալիզմի ու նրա տարատեսակությունների դեմ։ Նա իրավացի կերպով հայ բուրժուազիայի շահերի և նացիոնալիստական ձգտումների բացարձակ արտահայտիչների շարքին էր դասում հայ կադետներին ու «դաշնակցություն» պարտիան և պնդում է, որ «Հնչակյան» պարտիան ու «Հայկական սոցիալ-դեմոկրատական բանվորական կազմակերպությունը» («սպեցիֆիկները») իրենց բնույթով մանր-բուրժուական էին ու կանգնած էին նացիոնալիստական դիրքերի վրա։

Մերկացնելով դաշնակցության բուրժուա-նացիոնալիստական էությունը, Սպանդարյանը գտնում էր, որ դաշնակները «Հայ բանվոր դասակարգի գիտակցությունը բթացնողներ» են, «հայ կյանքի ցեցեր», «հայ գյուղացիության

ամենաանամոթ կերպով հարստահարողներ և կեղեքողներ»։

Վերլուծելով «Պրոֆեսիոնալ միությունները և Հ. Հ. դաշնակցությունը», «Սոցիալիստ դաշնակցությունը և Թուրք բանվորները», «Երկու խոսք», «Հեղափոխություն մի թաս ջրում» հոդվածները, գրքի հեղինակը ցույց է տալիս, որ Սպանդարյանը մերկացնում էր դաշնակներին, որոնք սոցիալիստի դիմակ հագած ամեն կերպ ջանում էին ազգամիջյան կռիվների, տարբեր ազգերի պրոլետարներին նացիոնալիզմով թունավորելու և այլ ճանապարհով թուլացնելու ռևոլյուցիայի թափը։ Պայքարելով դաշնակցության ու մյուս նացիոնալիստական պարտիաների ու խմբակների դեմ՝ նա միաժամանակ պրոպագանդում էր բոլշևիկյան այն տեսակետը, ըստ որի Ռուսաստանի բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի ազգային-սոցիալական ազատագրման շահերը պահանջում են ոչ թե ռուսական բանվոր դասակարգից անջատվելու նացիոնալիստական դիրքորոշում, այլ նրա հետ ավելի մերձենալու և ինտերնացիոնալիզմի դրոշով, միացյալ ուժերով ցարիզմի ու կապիտալիզմի դեմ գրոհելու դիրքորոշում։ Հեղինակը լուսաբանել է նաև Սպանդարյանի պարտիական-կազմակերպական գործունեությունն այդ շրջանում։ Մասնավորապես նա ցույց է տվել, թե Սպանդարյանը ինչպիսի աշխատանք է տարել Լոռվա գյուղերում ու Ալավերդու բանվորների մեջ։ Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին Բորչալվի գավառում կար ուժեղ բոլշևիկյան կազմակերպություն, որի աչքի ընկնող ղեկավար գործիչներից էին Աստուր Կախոյանը, Սիմոն Էվոյանը, Սերգո Փիրումյանը և ուրիշներ։ Կազմակերպությունը հաջողությամբ ղեկավարում և ուղղություն էր տալիս գավառի ռևոլյուցիոն շարժումներին և սիստեմատիկաբար օգնություն էր ստանում ՌՍԴԲՊ Թիֆլիսի Կոմիտեից։

Հաճախ Բորչալու էին գալիս Ստ. Շահումյանը, Մ. Ցխակայան, Ս. Սպանդարյանը և ուրիշներ։ Եվ ահա, երբ 1906 թվականի օգոստոսին տեղի է ունենում Ալավերդու չորս ու կես հազարանոց հայ, ռուս, ադրբեջանցի, պարսիկ և հույն բանվորների մոտ մեկ ամիս տևող գործադուլը, ՌՍԴԲՊ Թիֆլիսի Կոմիտեի հանձնարարությամբ Ս. Սպանդարյանը Ստ. Շահումյանի հետ միասին ղեկավար մասնակցություն է ունենում գործադուլին։

Հետագայում մենք տեսնում ենք Սպանդարյանին Թիֆլիսում, ուր նա ղեկավար մասնակցություն ուներ բոլշևիկների դումայական նախընտրական պայքարին, ապա Գանձակում (Կիրովաբադ), ուր նա ընտրական կամպանիայի օրերին գլխավորում էր տեղի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը։ 1907 թվականի հունվարին բոլշևիկյան կենտրոնի որոշմամբ Սպանդարյանը փոխադրվում է Բաքու։ Գրքում մեծ տեղ է հատկացված Սպանդարյանի ռևոլյուցիոն գործունեության Բաքվի շրջանին։ Նշելով Բաքվի պրոլետարիատի առաջատար դերը և բոլշևիկյան ուժեղ կազմակերպության առկայության փաստը, հեղինակն ավելացնում է, թե Բաքու գալուց հետո Ա. Ջափարիձեի, Ս. Օրջոնիկիձեի, Ի. Ֆիոլետովի, Ա. Ենուկիձեի, Խանլարի, Վլ. Գասպարյանի («Սլավա»), Մ. Մելիքյանի («Դեդուշկա») և ուրիշների հետ գլխավորեց Բաքվի կազմակերպության գործունեությունը, ռևոլյուցիոն շարժումները։ Սպանդարյանը Սև քաղաքի պարտիական կազմակերպիչն էր։

Ընթերցողը տեսնում է, թե ռևոլյուցիոն պայքարի հորձանուտում ինչպես էր կոփվում ու աճում Ս. Սպանդարյանը, աստիճանաբար դառնում համապարտիական մասշտաբի գործիչ։ Նա արդեն տարիների փորձ ունեցող կրթված մարքսիստ-լենինյան է, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ։ Պարտիայի Լոնդոնի համագումարից հետո Բաքու աշխատանքի փոխադրված ականավոր բոլշևիկներ Ստալինի, Շահումյանի և ուրիշների հետ ջախջախիչ հարվածներ է հասցնում մենշևիկներին, մերկացնում նրանց լիկվիդատորական վարքագիծը, համախմբում Անդրկովկասի բոլշևիկների շարքերը։ «Ընկ. Տիմոֆեյը,— գրում է հին բոլշևիկ Ռ. Օկինշևիչը,— Բաքվա կազմակերպության և Բաքվա բանվորների մեջ համարվում էր մարքսիստական մտքի ամենաուժեղ և անփոխարինելի ղեկավարներից մեկը։ ...Նրան «խայթող» կոչումն էին տվել, և իրոք նա այդպիսին էր մենշևիկների և տատանվողների հանդեպ... Ոչ մի բանակռիվ առանց նրան չէր անցնում և նա, իբրև հմուտ դիալեկտիկ, բոլոր բանակռիվներից ելնում էր հաղթանակով» («Սուրեն Սպանդարյան» հոդվածների ժողովածու, էջ 215, 1927 թ.)։

Գրքում պատշաճ տեղ է հատկացված «Բակինսկի պրոլետարի», «Գուդոկ», «Բակինսկի ռաբոչի» և բոլշևիկյան այլ թերթերում նրա մասնակցության, ինչպես նաև Բաքվի բանվորների և նավթարդյունաբերողների միջև 1907—1908 թթ. տեղի ունեցած բանակցություններին նրա կատարած դերի և առհասարակ նրա պրոպագանդիստական, կուլտուր-լուսավորչական-կազմակերպական աշխատանքների լուսաբանությանը։

Գրքում հանգամանորեն վեր է հանված Սպանդարյանի կատարած աշխատանքը մարքս-լենինյան գրաքննադատության բնագավառում։ Նա լավ էր իմանում համաշխարհային, ռուսական ու հայ գրականությունը, կատարելապես



տիրապետում մարքսիստական գրաքննադատության արվեստին։ Քաջ գիտակցելով գրականության, արվեստի ու կուլտուրայի դերը մասսաների ռևոլյուցիոն դաստիարակության գործում, Սպանդարյանն իր սուր գրչով կատաղի պայքար էր մղում խավարամոլների դեմ, որոնք փորձում էին ոչնչացնել ռուս ռևոլյուցիոն-դեմոկրատների ու պրոգրեսիվ գործիչների տրադիցիաները և արմատավորել սևհարյուրակային գրականությունն ու արվեստը։ Ուշադրության արժանի են նրա «Ազնիվ զայրույթ», «Մեծարո՞ւմ, թե ռեկլամ», «Իվանով» և այլ հոդվածները, ուր լենինյան դիրքերից գնահատելով Լ. Տոլստոյի, Մ. Գորկու, Ա. Չեխովի և այլ գրողների ու արվեստագետների գործերը, մերկացնում էր ցարական գրչակների կողմից նրանց արվեստը նսեմացնելու փորձերը։

Սպանդարյանը շատ է անդրադարձել նաև հայ գրականության ու արվեստի հարցերին և Ստ. Շահումյանի հետ դրել հայ մարքս-լենինյան գրականագիտության հիմքերը։ Նա գտնում էր, որ գրականությունն ու արվեստը պետք է լինեն իրապես ժողովրդական, այն պետք է ճշմարտացիորեն արտացոլի իրականությունը, կապված լինի ժողովրդի հետ և արտահայտի նրա իղձերն ու կենսական շահերը։ Իր հոդվածներում բանաստեղծ Հակոբ Հակոբյանին պաշտպանելով բուրժուական «էսթետների» հարձակումներից, որոնք ձգտում էին արժեքազրկել նրա պոեզիան, Սպանդարյանը բարձր էր գնահատում նրա ստեղծագործությունները, մասնավորապես նրա «Նոր առավոտ» պոեմը։ Հակոբյանին նա համարում էր պրոլետարական պոեզիայի ռահվիրաներից մեկը հայ գրականության մեջ, առաջինը, որ «խոսեց բանվոր դասակարգի տառապանքների ու ձգտումների մասին»։

Մեծ հետաքրքրությամբ են կարդացվում համապարտիական վեցերորդ կոնֆերանսի նախապատրաստմանն ու կոնֆերանսի աշխատանքներին Սպանդարյանի մասնակցությանը վերաբերող էջերը։ Երկրում բանվորական շարժման սկսված վերելքի պայմաններում անհրաժեշտություն էր դարձել կազմակերպորեն է՛լ ավելի ամրապնդել պարտիան, համախմբել, կազմակերպել ու նոր գրոհի տանել ժողովրդական մասսաներին՝ ընդդեմ ցարի, կալվածատերերի ու կապիտալիստների։

Համապարտիական VI (Պրագայի) կոնֆերանսը կարևոր դեր խաղաց այդ խնդիրների լուծման ճանապարհին։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ստեղծվում է կոնֆերանսի հրավիրման Ռուսաստանյան կազմակերպական հանձնաժողով (ՌԿՀ), որը փայլուն կերպով իրականացնում է իր խնդիրը։ Այդ հանձնաժողովի ստեղծմանը Լենինի հանձնարարությամբ Օրջոնիկիձեից, Ստ. Շահումյանից ու Շվարցից բացի, մասնակցում էր նաև Սուրեն Սպանդարյանը, որի աշխատանքի մասին արդեն գիտեր Իլյիչը։ Սպանդարյանն ակտիվ մասնակցում է կոնֆերանսի բոլոր հարցերի քննարկմանը, իսկ նրա նիստերից մեկում հանդես է գալիս Բաքվի, Թիֆլիսի, Սուխումի, Բաթումի, Փոթիի, Գորիի և Քութայիսի պարտիական աշխատանքի վիճակի մասին զեկուցումով։ Ս. Սպանդարյանը կոնֆերանսում ընտրվում է Կենտկոմի, ինչպես նաև Կենտկոմի Ռուսական բյուրոյի կազմում։ Կոնֆերանսից հետո նա Լենինի և Ն. Պոլետաևի հետ միասին մեկնեց Բեռլին և ապա վերադարձավ Ռուսաստան ու ամբողջովին նվիրվեց Պրագայի կոնֆերանսի որոշումների կենսագործմանը։ Բայց Կենտկոմում երկար չշարունակվեց նրա գործունեությունը. պրովոկատորի (Մալինովսկի) մատնությամբ 1912 թ. մարտի 18-ին, Բալախանիում Պրագայի կոնֆերանսի արդյունքների մասին զեկուցելիս նա ձերբակալվեց։ Մեկ տարի հետո ցարական դատարանը դատապարտեց նրան աքսորի։ 1913 թվականի սեպտեմբերին նա շղթայակապ աքսորվեց Սիբիր, սկզբում Կրասնոյարսկ, ապա Տուրուխանյան երկրամասի Մոնաստիրսկոյե գյուղը։

Հեղինակին հաջողվել է ցույց տալ Սպանդարյանի բոլշևիկյան անսասան կամքը, օպտիմիզմը, աքսորում նրա կատարած պարտիական աշխատանքի պատկերը, Վ. Ի. Լենինի ու Ն. Կ. Կրուպսկայայի հետ նրա մշտական նամակագրական կապը, Լենինի հոգատարությունը և սերը դեպի Սպանդարյանը։ Ուշադրությունից չի վրիպել նաև Սպանդարյանի՝ իբրև ջերմ սիրող ամուսնու և հոր բնութագիրը։

Գրքի վերջին էջերը նվիրված են Սպանդարյանի կարճատև կյանքի վերջին օրերին։ Բանտն ու աքսորը վերջնականապես քայքայեցին Սպանդարյանի օրգանիզմը։ 1915—1916 թվականի ձմեռը նա ծանր հիվանդացավ։ Չնայած ընկերների հոգատարությանը, որոնք հերթով խնամում էին հիվանդին, դրությունը գնալով լրջանում էր։ Երկար ժամանակ ցարական կառավարությունը թույլ չէր տալիս Սպանդարյանին հիվանդանոց տեղափոխել. երբ արդեն պարզվեց, որ նրա դրությունն անհուսալի է, ոչ միայն թույլ տրվեց, այլև, ինչպես հեղինակն է ասում, «մարդասիրական» ժեստ արվեց ազատելու նրան հետագա աքսորից։ Չնայած նա մահամերձ էր, բայց չէր կորցնում կոմունիզմի հաղթանակի համար պայքարի իր հավատը։ «Շատ չի անցնի երևի, ընկեր,— գրում էր նա Ստ. Շահումյանին,— մենք նորից կհանդիպենք միմյանց և կողք-կողքի կշարունակենք պայ-

քարել մեր սիրած գործի համար» (Ստ. Շահումյան, «Ընտիր երկեր», էջ 425)։

1916 թ. սեպտեմբերի 11 (24)-ին դադարեց բաբախելուց Սուրեն Սպանդարյանի բոցավառ սիրտը։ Նրա մահը մեծ կորուստ էր պարտիայի ու Ռուսաստանի բանվոր դասակարգի և աշխատավորության համար։

Վ. Ի. Լենինը պարտիայի կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ» թերթում հատուկ մահախոսական գրեց Սպանդարյանի մասին։ «...Հանգուցյալը 15 տարուց ավելի է,— գրում էր թերթը,— ինչ ՌՍԴԲՊ անդամ էր։

...Կոնտրռևոլյուցիայի ու պարտիական կյանքի քայքայման տարիներին ընկ. Տիմոֆեյն իր առույգությունը չկորցրեց։

Նա մնաց կանգնած իր դիրքերում և միայն ուժեղացրեց իր աշխատանքը։ Նա եռանդուն մասնակցություն ունեցավ ինչպես 1912 թ. համապարտիական կոնֆերանսի նախապատրաստական աշխատանքներին, այնպես էլ բուն կոնֆերանսին։ Ընտրվելով նոր Կենտկոմի անդամ՝ Սպանդարյանը Ռուսաստանում կատարած իր աշխատանքով հսկայական ծառայություն մատուցեց այդ հիմնարկությանը։ Նա մասնակցում էր Կենտկոմի ռուսական տպարանի կազմակերպման գործին, ընտրական պլատֆորմի և Կենտկոմի մի շարք կոչերի հրատարակությանը։

...Արդեն պատերազմի ժամանակ մենք նամակներ ստացանք ընկեր Տիմոֆեյից, որոնցից պարզ էր արդեն, որ նա հավատարիմ է մնացել ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի լավագույն տրադիցիաներին, ոչ մի րոպե չտատանվելով ինտերնացիոնալիզմի դիրքերից» (Վ. Ավետիսյան, «Սուրեն Սպանդարյան», էջ 299—300)։

Գրքում բերված է բոլշևիկյան «Պայքար» թերթում Սպանդարյանի մահվան առթիվ Ստ. Շահումյանի գրած նեկրոլոգը, Բաքվի մի խումբ բանվորների ցավակցական նամակը և այլն։ Աշխատությունը վերջանում է Սուրեն Սպանդարյանին բնութագրող ջերմ ու սրտառուչ խոսքերով։ «Սուրեն Սպանդարյանը մեռավ 34 տարեկան հասակում, իր բազմակողմանի ընդունակությունների և փայլուն տաղանդի բուռն ծաղկման շրջանում,— գրում է հեղինակը,— Սակայն այն, ինչ կատարեց ռևոլյուցիայի համար Տիմոֆեյը, վառ գույներով ապրում է սովետական ժողովրդի սրտում, ոգեշնչում նրան նոր սխրագործությունների կոմունիստական շինարարության մեծ ճակատամասում»։

Աշխատությունը զերծ չէ առանձին թերություններից։ Այսպես, ճիշտ մատնանշելով Վ. Ի. Լենինի «Պետերբուրգի բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միության» դերը Անդրկովկասում մարքսիզմի տարածման և սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջացման գործում, հեղինակը չի հիշատակում այդ կազմակերպություններից ու խմբակներից և ոչ մեկի անունը։ Կամ, ընդգծելով Սպանդարյանի դերը պարտիայի թեորիական, իդեոլոգիական, տակտիկական ու կազմակերպական լենինյան դրույթների պաշտպանության ու իրականացման գործում, ծանրանում է գերազանցապես տակտիկական ու կազմակերպական հարցերի լուսաբանման վրա և համեմատաբար քիչ օրինակներ է բերում Սպանդարյանի գործունեության մյուս բնագավառներից։ Բացի այդ, տեղ-տեղ ուղղակի մեջբերումներ անելով, հեղինակը չի նշում նրանց աղբյուրները (տե՛ս էջ 18, 59, 65, 95, 97, 98 և այլն)։

Չնայած այս և մի քանի այլ մասնակի թերություններին, Վ. Ավետիսյանի «Սուրեն Սպանդարյան» աշխատությունը շնորհակալ, հաջողված գործ է, և անկասկած իր դրական դերը կխաղա մեր աշխատավորության, մեր երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում։

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

---



## ՄԵՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ԹՎԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Քաղաքական գրականության պետական հրատարակչությունը լույս է ընծայել «Советский Союз» («Սովետական Միություն») գիրքը, որի մեջ ընթերցողը հարուստ տեղեկություններ կգտնի մեր լայնածավալ Հայրենիքի բնական հարստությունների, ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բուռն զարգացման, սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացման մասին։

Գիրքը բաղկացած է վեց գլխից՝ «Աշխարհի մեկ վեցերորդ մասը», «ՍՍՌՄ-ն աշխատավորների պետություն է», «Արդյունաբերություն», «Գյուղատնտեսություն», «Ժողովրդի կյանքի պայմանները», «Սովետական կուլտուրան»։

Առաջին գլուխը նվիրված է Սովետական Միության անծայրածիր տարածությունների, նրա սահմանների, հարթավայրերի, հովիտների, լեռների, ծովերի, լճերի, գետերի, կլիմայի, բնական հարստությունների նկարագրությանը։ Իր տերիտորիայով Սովետական Միությունն աշխարհի ամենամեծ պետությունն է։ Ամերիկայի Միացյալ Նահանգներն իրենց տերիտորիայով գրեթե 3 անգամ փոքր են մեր երկրից։ Մեր Հայրենիքի սահմանները ձգվում են 60 հազար կիլոմետր։ Այդ տարածությունը մարդատար ինքնաթիռով կարելի է անցնել միայն 5 օրում, եթե նա ժամում թռչի 500 կիլոմետր։

Իր ընդերքի հարստություններով ՍՍՌՄ-ն չի զիջում աշխարհի և ոչ մի պետության։ Երկաթահանքի, նավթի պաշարով և անտառային հարստությունով նա աշխարհում գրավում է առաջին տեղը։ ՍՍՌՄ-ում է գտնվում աշխարհի տորֆի պաշարի երկու երրորդ մասը։

Մեր երկրի աշխատավորները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեծ ջանքեր են գործադրել՝ բնական այդ հարստությունները արդյունավետ ու ինտենսիվ օգտագործելու ուղղությամբ, որի շնորհիվ էլ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անցած քառասուն տարվա ընթացքում խոշոր հաջողությունների են հասել երկրի ինդուստրացման գործում, որին նվիրված է գրքի «Արդյունաբերություն» բաժինը։ Ահա փաստերը։ ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր տարի ստեղծվում են 700—900 նոր տեսակի և մարկաների մեքենաներ ու մեխանիզմներ։ Մեր երկրի գործարաններում այժմ արտադրվում են ամենափոքր և ճշգրիտ մեխանիզմներից մինչև հսկա էքսկավատորները։ Ուրալի մեքենաշինական գործարանի թողարկած քայլող էքսկավատորը քանդված վիճակում փոխադրելու համար պահանջվում է երկաթուղային 100 բաց վագոն։ Նա կարող է փորել և առանց տրանսպորտի դուրս թափել տարեկան 5 միլիոն խորանարդ մետր հող։ Եթե ընդհանուր առմամբ 1913 թվականից մինչև 1940 թվականը խոշոր արդյունաբերության արտադրանքն աճել է 12 անգամ, ապա նույն ժամանակաշրջանում մեքենաշինության արտադրանքն աճել է 50 անգամ։ Մեր արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ 1955 թվականին աճել է 320 տոկոսով։ 1956 թվականին յուրաքանչյուր ժամում մեր երկրում ձուլվել է 4 հազար տոննա չուգուն, 5,5 հազար տոննա պողպատ, արտադրվել է մոտ 48 հազար տոննա քարածուխ, թողարկվել է 628 հազար մետր բամբակյա գործվածք։

Բնակչության յուրաքանչյուր շնչի հաշվով արդյունաբերական արտադրանքի աճման տեմպը Սովետական Միությունում շատ անգամ ավելի բարձր է, քան կապիտալիստական ամենազարգացած երկրներում։ Այսպես, 1913-ից 1955 թվականներն ընկած ժամանակամիջոցում ամբողջ արդյունաբերության արտադրանքը յուրաքանչյուր շնչի հաշվով աճել է ՍՍՌՄ-ում՝ 19,4 անգամ, ԱՄՆ-ում՝ 2,3 անգամ, Անգլիայում՝ 1,6 անգամ, Ֆրանսիայում՝ 1,8 անգամ։ 1913 թվականի համեմատությամբ 1955 թվականին յուրաքանչյուր շնչի հաշվով ավելի պողպատ է ձուլված ՍՍՌՄ-ում՝ 7,5 անգամ, ԱՄՆ-ում՝ 2 անգամ, Անգլիայում՝ 2,3 անգամ, Ֆրանսիայում՝ 1,7 անգամ, Արևմտյան Գերմանիայում՝ 1,9 անգամ։

«Գյուղատնտեսություն» բաժնում ընթերցողի ուշադրությունն են գրավում այն խոշոր միջոցառումները, որ գործադրված են Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարու-

թյան կողմից գյուղի սոցիալիստական վերակառուցման, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը բարձրացնելու ուղղությամբ։ 1918 թվականին երկրում եղել է ընդամենը 1600 գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվ, 1928 թվականին այդ թիվը հասել է ավելի քան 33 հազարի։ 1937 թվականին Սովետական Միությունում գրեթե ավարտվեց գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացումը։ Այդ թվականին կոլտնտեսությունները, առանց սովետական տնտեսությունների, Հայրենիքին տվել են 1.700 միլիոն փութ հացահատիկ։ Միայն 1932 թվականից 1937 թվականը կոլտնտեսությունների համախառն արտադրանքը 13 միլիարդից բարձրացել է մինչև 20 միլիարդ ռուբլու։ Գյուղացիների ռեալ եկամուտը 1940 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, աճել է 3,5 անգամ։ Այժմ սովետական գյուղացիությունը հաջողությամբ լուծում է պարտիայի կողմից առաջադրված՝ գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու խնդիրները։

Գրքում լայն տեղ է հատկացված մեր երկրի կուլտուրական շինարարության և աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման հարցերին։

Սովետական իշխանության տարիներին երկրում բանվորների և ծառայողների թիվն աճել է 4 անգամ՝ 1913 թվականի 12,9 միլիոնից 1956 թվականին հասնելով 50 միլիոն մարդու։ Բանվորների ռեալ աշխատավարձը, եթե 1950 թվականինն ընդունենք 100, ապա 1955 թվականին կազմում էր 139 տոկոս, գյուղացիների եկամուտը նույն ժամանակամիջոցում 100-ից բարձրացել է 150 տոկոսի։ Գրքում հետաքրքրական տվյալներ են բերված այն մասին, թե ինչպես նույն գումարի դրամով եթե 1947 թվականին կարելի էր գնել 1 կիլոգրամ հաց, 1 կիլոգրամ միս, 1 կիլոգրամ կարագ և 1 կիլոգրամ շաքար, ապա 1956 թվականին կարելի է գնել 2,8 կիլոգրամ հաց, 2,8 կիլոգրամ միս, 3 կիլոգրամ կարագ, 2,3 կիլոգրամ շաքար։

Մեծ են սովետական մարդկանց նվաճումները առողջապահության, գիտության, գրականության ու արվեստի զարգացման բնագավառում, որոնց գրքում ընդարձակ տեղ է հատկացված։

«Սովետական Միությունը» լավագույն աղբյուրներից մեկն է ագիտատորների ու պրոպագանդիստների համար՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի շուրջը աշխատավորների հետ զրույցներ անցկացնելիս։

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԳ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԲԱԲԱՅԱՆ Լ. Հ., ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ՀՈՎՀ. Մ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ ԱՐ. Ն., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Վ. Ս., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.:

ՎԹ 08941 Պատվեր 2287 Տիրաժ 6000
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 20/IX 1957 թ.։
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

# ՇԱՀՈՂ ԱՎԱՆԴՆԵՐՈՎ ԿԱՐԵԼԻ Է ՇԱՀԵԼ ՄԻՆՉԵՎ 20.000 ՌՈՒԲԼԻ

ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԴՐԱՄԱՐԿՂՆԵՐԸ ԸՆԴՈՒՆՈՒՄ ԵՆ ՇԱՀՈՂ ԱՎԱՆԴՆԵՐ, ՈՐԻ ԵԿԱՄՈՒՏԸ ԱՎԱՆԴԱՏՈՒՆԵՐԻՆ ՎՃԱՐՎՈՒՄ Է ՇԱՀՈՒՄՆԵՐԻ ՁԵՎՈՎ:

ՇԱՀՈՂ ԱՎԱՆԴՆԵՐԸ ԽԱՂԱՐԿՎՈՒՄ ԵՆ ՏԱՐԵԿԱՆ ԵՐԿՈՒ ԱՆԳԱՄ՝ **ԱՊՐԻԼԻՆ ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻՆ:**

ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԽԱՂԱՐԿՈՒԹՅՈՒՆՈՒՄ 1000 ՀԱՇԻՎՆԵՐԻ ՀԱՄԱՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԱՆՑԱԾ ԿԻՍԱՄՅԱԿԻ ԱՎԱՆԴԻ ՄԻՋԻՆ ՄՆԱՑՈՐԴԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԽԱՂԱՐԿՎՈՒՄ Է 25 ՇԱՀՈՒՄ, ԱՅԴ ԹՎՈՒՄ՝

1 ՇԱՀՈՒՄ 200%-Ի ՉԱՓՈՎ,
2 ՇԱՀՈՒՄ 100%-Ի ՉԱՓՈՎ,
2 ՇԱՀՈՒՄ 50%-Ի ՉԱՓՈՎ,
20 ՇԱՀՈՒՄ 25%-Ի ՉԱՓՈՎ:

ՇԱՀՈՂ ԱՎԱՆԴՆԵՐԻ ՀԵՐԹԱԿԱՆ ԽԱՂԱՐԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՅԱՆԱԼՈՒ Է Ս/Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 6-ԻՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՔԱՂԱՔՈՒՄ

**ՇԱՀՈՂ ԱՎԱՆԴՆԵՐ ՊԱՀԵՑԵ՛Ք ԽՆԱՅՈՂԱԿԱՆ ԴՐԱՄԱՐԿՂՆԵՐՈՒՄ**

*ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱՇԽՆԱՅԴՐԱՄԱՐԿՂՆԵՐԻ ԵՎ ՊԵՏՎԱՐԿԻ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ*